ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 4
ԱՊՐԻԼ
1957 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIV
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ



### ՔՆՆԱՐԿՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՎԻՃԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ



ОБЯЗАТЕ[ЛЬНЫЙ]
ЭКЗЕМПЛ[ЯР]

digitised by A.R.A.R.@

Государственная
БИБЛИОТЕКА
СССР
им. В. И. Ленина

2641
п-58
10385

## СОДЕРЖАНИЕ



---

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

*Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի չորրորդ պլենումը ամփոփեց անցած գյուղատնտեսական տարվա արդյունքները և կոնկրետ միջոցառումներ մշակեց 1957 թվականին գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու ուղղությամբ։ Պլենումի որոշումը կարևոր նշանակություն ունի ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների համար, եթե հատկապես նկատի առնենք, որ խոսքը վերաբերում է վեցերորդ հնգամյակի երկրորդ տարվան, այն տարվանը, որ պետք է վճռական լինի ՍՄԿՊ XX համագումարի դիրեկտիվների իրականացման գործում։*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը վերջին տարիներս մի շարք միջոցներ ձեռնարկեցին, որոնց նպատակն է բարձրացնել կոլտնտեսությունների ու կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ընդլայնելու գործում։ Պարտիայի և կառավարության այդ միջոցառումների իրագործման շնորհիվ զգալիորեն բարձրացել է հանրային տնտեսության եկամտաբերությունը, կոլտնտեսականների արտադրական ու քաղաքական ակտիվությունը։*

*Գյուղատնտեսության շեշտակի վերելքի համար սովետական ժողովրդի մղած պայքարում իրենց ավանդն են մտցնում նաև Սովետական Հայաստանի գյուղատնտեսության աշխատավորները։ ՀԿՊ Կենտկոմի պլենումում համոզիչ կերպով նշվեցին ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսությունների հաջողությունները գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու գործում։ Սովետական Հայաստանի կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները 1955 թվականի համեմատությամբ 1956 թվականին պետությանն ավելի են հանձնել խաղող՝ 1,8 անգամ, պտուղներ՝ 1,7 անգամ, բանջարեղեն՝ 30 տոկոսով, միս (կենդանի քաշով)՝ 2088 տոննա, բուրդ՝ 205 տոննա։*

*Բայց Կենտկոմի պլենումում գլխավորապես խոսքը վերաբերում էր ոչ թե նվաճումներին, որոնք անվիճելիորեն կան, այլ այն թերություններին, որոնք խանգարում են գյուղատնտեսության շեշտակի վերելքին։ Ինչպես զեկուցման մեջ, այնպես էլ ելույթներում խիստ քննադատության ենթարկվեցին Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունը, պարտիայի շատ շրջկոմներ, շրջսովետների գործկոմներ, ՄՏԿ-ների ղեկավարներ, որոնք չեն ապահովել կոլտնտեսությունների ընդունած արտադրական պլանների կատարումը, որի հետևանքով էլ վեցերորդ հնգամյակի առաջին տարում գյուղատնտեսական մթերքների արտադրության աճման տեմպերը ավելի ցածր էին, քան նախատեսված էին պարտիայի XX համագումարի դիրեկտիվներում։ Այդ երևույթի հիմնական պատճառն այն է, որ Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունը, պարտիական կազմակերպությունները, ՄՏԿ-ների ղեկավարները դեռևս լիովին չեն կատարելագործել գյուղատնտեսության ղեկա-*

digitised by A.R.A.R.@

վարման մեթոդները։ Նրանք օպերատիվ չեն աշխատում, կոլտնտեսություններին ու սովետական տնտեսություններին քիչ օգնություն են ցույց տալիս գյուղատնտեսության մթերքների արտադրությունն ավելացնելու համար եղած ռեզերվներն օգտագործելու ուղղությամբ։

Հայտնի է, որ մեր ռեսպուբլիկան չունի խոպան հողերի զանգվածներ, ի հաշիվ որոնց կարելի լիներ ավելացնել գյուղատնտեսական կուլտուրաների արտադրությունը։ Այն նոր հողերը, որոնք թանկ նստող ջրատնտեսական կառուցումների շինարարության միջոցով ամեն տարի մտնում են գյուղատնտեսության շրջանառության մեջ, անշուշտ ռեսպուբլիկայի հողային ռեսուրսների որոշ աճ են տալիս։ Բայց եղած հողային ռեսուրսների ճիշտ օգտագործման և բերքատվության բարձրացման խնդիրը գլխավորն է գյուղատնտեսության վերելքի համար մղվող պայքարում։

Հողային ռեսուրսների վատ օգտագործմամբ միայն կարելի է բացատրել այն փաստը, որ Սիսիանի շրջանում 100 հեկտար հողային տարածությունից 1956 թվականին ստացել են 8,7 ցենտներ միս, 58 ցենտներ կաթ, 1,15 ցենտներ բուրդ, 1100 հատ ձու, այն ժամանակ, երբ Շահումյանի շրջանում 100 հեկտար տարածությունից ստանում են դրանից երեք անգամ ավելի միս, վեց անգամ ավելի կաթ և երեք անգամ ավելի բուրդ։

Հողային տարածությունները միանգամայն ոչ ռացիոնալ են օգտագործվում Պարենային ապրանքների արդյունաբերության մինիստրության սովետական տնտեսություններում։ Այդ մինիստրության Հոկտեմբերյանի շրջանում գտնվող սովետական տնտեսությունների հողերի զգալի տարածությունները չեն օգտագործվում։ Մինչդեռ այդ տարածությունների մի մասում կարելի է եգիպտացորեն ցանել և դրա հիման վրա զարգացնել անասնապահությունը։ Ըստ երևույթին այդ տնտեսությունների ղեկավարները գտնում են, որ եթե նրանք պտղաբուծական սովետական տնտեսություններում զարգացնեն անասնապահություն, ապա դուրս կգան գերատեսչական սահմաններից։

Պարտիայի Հոկտեմբերյանի շրջկոմն ու սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է վաղուց կոտրեին այդ գերատեսչական արգելքները և սովետական տնտեսությունների ղեկավարներին բացատրեին, որ պետության շահերը պահանջում են հողային տարածությունները ռացիոնալ օգտագործել։

Հողային տարածությունների ռացիոնալ օգտագործման համար մեծ նշանակություն ունի խոպանների և վաղ ցելերի վրա եգիպտացորենի ցանքի կատարումը։ Մինչդեռ Արարատյան դաշտավայրի կոլտնտեսություններում, ուր կան բոլոր հնարավորությունները, եգիպտացորենի խոզանացանը լայն տարածում չի ստացել, իսկ վաղ ցելերն ամենևին չեն օգտագործվում եգիպտացորեն ցանելու համար։ Դա չի կարելի բացատրել այլ կերպ, քան որպես հողային ռեսուրսների ճիշտ օգտագործման հարցի և անասնապահության զարգացման համար եգիպտացորենի ցանքի նշանակության թերագնահատում։

ՍՄԿՊ XX համագումարի դիրեկտիվներով նախատեսված է 1955 թվականի համեմատությամբ 1960 թվականին Հայաստանում հացահատիկի արտադրությունն ավելացնել 1,5 անգամ, մսինը՝ 2,1 անգամ, կաթինը՝ 2,2 անգամ, ձվինը՝ 2,2 անգամ, բրդինը՝ 1,8 անգամ։ Միանգամայն ակներև է, որ գյուղատնտեսական մթերքների արտադրության այդպիսի զգալի աճն անհնարին է առանց բերքատվության շեշտակի բարձրացման։ Ուստի Կենտկոմի



պլենումը հատուկ ուշադրություն դարձրեց ագրոտեխնիկայի ճիշտ կիրառման, անասունների կերակրումն ու խնամքը բարելավելու վրա։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության շատ առաջավորներ բերքատվության և անասնապահության մթերատվության բարձրացման գործում հիանալի արդյունքների են հասել հենց այն պատճառով, որ ստեղծագործաբար են մոտենում ագրոտեխնիկայի կիրառմանն ու անասունների պահպանմանը։ Ռեսպուբլիկայում քիչ չեն այնպիսի հիանալի նորարարներ, որոնք սիստեմատիկաբար մեծ տարածությունների վրա յուրաքանչյուր հեկտարից ստանում են ավելի քան հարյուր ցենտներ խաղող, աճեցնում են ծխախոտի, բամբակի, շաքարի ճակնդեղի, բանջարեղենի բարձր բերք, իսկ մեկ կովից տարվա մեջ կթում են չորս հազար և ավելի լիտր կաթ։ Մի շարք կոլտնտեսություններում առաջավոր անասնապահները սիլոսը պատրաստում են ամառային արոտավայրերում հունիս և հուլիս ամիսներին, իսկ աշնանը, երբ արոտավայրերում խոտը չորանում է, այդ սիլոսով կերակրում են անասուններին, դրանով իսկ ավելացնում նրանց մթերատվությունը։ Թվում է, թե դրանում ոչ մի բարդ բան չկա։ Սակայն այդ միանգամայն հասարակ և օգտակար գործը ամենուրեք չէ, որ կատարվում է։

Պետք է խոստովանել, որ Գյուղատնտեսության մինիստրությունը, գիտահետազոտական հիմնարկները, շրջանային պարտիական կազմակերպությունները գործնական քիչ բան են անում գյուղատնտեսության առաջավորների փորձը տարածելու ուղղությամբ։ Վերջին ժամանակներս Գյուղատնտեսական ինստիտուտի գիտական աշխատողները մեծ աշխատանք տարան Շահումյանի շրջանի կոլտնտեսություններում և դա քիչ չնպաստեց այդ շրջանի անասնապահության վերելքին։ Բայց այդպիսի օրինակները եզակի են։ Մի՞թե քիչ օգուտ կստանայինք, եթե Անասնաբուծական և անասնաբուժական ինստիտուտի, Խաղողագործության և գինեգործության ինստիտուտի և մյուս գյուղատնտեսական հիմնարկների գիտականներն ու մասնագետները իրենց ժամանակի մեծ մասն անցկացնեին կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում, գործնական օգնություն ցույց տային գյուղատնտեսության աշխատողներին՝ հասնելու հողի բարձր բերքատվության և անասունների բարձր մթերատվության։

Առաջավորների փորձի ամփոփումն ու լայն տարածումը կարևոր միջոց է գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման համար։ Բավական է ասել, որ եթե ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում առաջավորների փորձը տարածելով, կարողանանք մեկ կովից ստանալ 1600, իսկ սովետական տնտեսություններում՝ 3000 լիտր կաթ, և կովերի գլխաքանակը նախիրներում հասցնենք 40 տոկոսի, ապա ռեսպուբլիկայում կաթի արտադրությունը կկրկնապատկվի։

Ով կարծում է, թե կարելի է աշխատել հին ձևով և հասնել գյուղատնտեսական մթերքների արտադրության շեշտակի ավելացման, նա խորապես սխալվում է։ Խոսքն այն մասին է, որ ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվների իրականացման գործում 1957 թվականը դարձնենք վճռական տարի, իսկ դրան հասնել կարելի է միայն այն դեպքում, եթե լայնորեն և ստեղծագործաբար կիրառվեն գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը։

Կոլտնտեսային ղեկավար կադրերը պետք է խոր գիտակցությամբ ու պատասխանատվությամբ տոգորվեն պետության հանդեպ, սովետական ժո-

digitised by A.R.A.R.@

ղովրդի հանդեպ և սովորեն աշխատել այնպես, որ ընդհանուր պետական հանրային շահերը ճիշտ զուգակցվեն կոլտնտեսականների շահերի հետ: Մենք ռեսպուբլիկայում քիչ օրինակներ չունենք, երբ կոլտնտեսությունների ղեկավարները հիանալի արդյունքների են հասնում հենց այդ ճանապարհով, որ ամեն կերպ ձգտում են բազմապատկել կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը և այդ հիման վրա էլ ապահովել կոլտնտեսականների բարձր եկամուտները:

Դրա հետ միասին մեզ մոտ քիչ չեն փաստերը, երբ առանձին կոլտնտեսությունների ղեկավարներ ձգտում են գյուղատնտեսական մթերքների արտադրության բացահայտորեն իջեցված պլանների, որոնք ավելի նվազ ցուցանիշներ են արտահայտում, քան կոլտնտեսությունների ձեռք բերած փաստական ցուցանիշներն են:

Այսպիսի տնտեսվարները դեռ չեն հասկանում, որ ռեալ հնարավորություններից ցածր պլանները՝ արգելակում են գյուղատնտեսության վերելքը:

Նման տրամադրությունները վտանգավոր են և այն պատճառով, որ արձագանք են գտնում ՀՍՍՌ Պետպլանի և Գյուղատնտեսության մինիստրության մի քանի աշխատողների մոտ: Պլենումը միահամուռ դատապարտեց պլանների մշակման այդ արատավոր պրակտիկան:

Մեքենա-տրակտորային կայանները կոչված են վճռական դեր խաղալու գյուղատնտեսական մթերքների արտադրության բարձրացման գործում: Այժմ շատ բան է կախված նրանից, թե մեքենա-տրակտորային կայանների ղեկավարները որքանով են ճիշտ հասկանում պարտիայի քաղաքականությունը, իրենց աշխատանքում որքանով են ելնում ընդհանուր պետական շահերից:

Բայց քիչ չեն այն դեպքերը, երբ մի շարք ՄՏԿ-ների ղեկավարներ, մոռանալով հողի բերքատվության և անասունների մթերատվության բարձրացման համար պայքարելու իրենց հիմնական պարտականությունը, ընկնում են տրակտորային աշխատանքների պլանների ձևական կատարման հետևից, չեն ապահովում գյուղատնտեսական աշխատանքների կարևոր տեսակների կատարումը, կոլտնտեսություններին չեն օգնում անասնապահական աշխատատար պրոցեսների մեքենայացման գործում: Շատ մեքենատրակտորային կայանների կողմից ագրոտեխնիկան անտեսելու բնորոշող օրինակ է հանդիսանում վաղ ցելի անթույլատրելի ձգձգումը: Մեզ մոտ, ռեսպուբլիկայում, կանոն է դարձել վաղ ցելը կատարել մինչև խոր աշունը, թեև բոլորին հայտնի է, որ մեր պայմաններում ծայրահեղ ժամկետը համարվում է հունիսի 10-ը: Ըստ երևույթին ՄՏԿ-ների շատ ղեկավարների քիչ է անհանգստացնում այն, որ դրանով իջեցնում են հողի բերքատվությունը և սիստեմատիկորեն ձախողում աշնանավարի պլանը: Ուստի ոչնչով չի կարելի արդարացնել ռեսպուբլիկայի Գյուղատնտեսության մինիստրության և այն պարտշրջկոմների վարմունքը, որոնք հաշտվել են այդ արատավոր պրակտիկայի հետ, որը բացասաբար է անդրադառնում կոլտնտեսային դաշտերի բերքատվության վրա:

Գյուղատնտեսության վերելքի գործում մեծ դեր ունեն խաղալու պարտշրջկոմների՝ ՄՏԿ-ների գծով հրահանգչական խմբերը: Նրանց պարտականությունն է կոլտնտեսականների, ՄՏԿ-ների աշխատողների ու գյուղատնտեսության մասնագետների ակտիվության ու գիտակցականության բարձրացումը: Աշխատանքը ճիշտ դնելու դեպքում նրանք, չփոխարինելով կոլտնտեսությունների ու ՄՏԿ-ների ղեկավարներին, կարող են այնպես ազդել գործի վրա,



որ բոլոր հարցերը որոշվեն ճիշտ, բարձրանա կոլտնտեսականների ու մեքենա-տրակտորային կայանների աշխատողների քաղաքական ու արտադրական ակտիվությունը:

Շատ բան է կախված այն բանից, թե ինչպես են դասավորված կադրերը, պարտիական կազմակերպությունների ուժերը: Եթե բրիգադան, ֆերման, օղակը գլխավորում են ձեռներեց, գործը գիտեցող, հեղինակություն ունեցող և կոլտնտեսականների հարգանքը վայելող մարդիկ, ապա գործերը հաջող են գնում: Կոմունիստները, որպես կոլտնտեսականների առավել ակտիվ և գիտակից մասը, պետք է միշտ կանգնեն դժվար և վճռական տեղամասերում:

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության վերելքի համար մղվող պայքարում վճռական դեր պետք է խաղա գյուղատնտեսության բնագավառում աշխատողների բազմահազարանոց բանակը: Սովետական իշխանության տարիներին Հայաստանում պատրաստվել են բարձրագույն և միջնակարգ կրթությամբ գյուղատնտեսության մեծ թվով մասնագետներ: Ներկայումս յուրաքանչյուր կոլտնտեսությանը միջին հաշվով ընկնում է չորս, իսկ յուրաքանչյուր սովետական տնտեսությանը՝ 10 մասնագետ: Նրանցից շատերը իրենց անձնուրաց աշխատանքով, խոր գիտելիքներով նվաճել են կոլտնտեսականների հեղինակությունն ու սերը: Բայց ամենուրեք չէ, որ գյուղատնտեսության մասնագետները գրավում են պատշաճ տեղ, իսկ առանձին դեպքերում արհամարհական վերաբերմունք է նկատվում մասնագետների նկատմամբ: Մի շարք կոլտնտեսությունների նախագահներ, անասնապահական ֆերմաների վարիչներ, բրիգադավարներ անտեսում են մասնագետների խորհուրդները: Եվ որքան էլ տարօրինակ է, նման վերաբերմունք նկատվում է կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների այնպիսի ղեկավարների կողմից, որոնք նույնպես մասնագետներ են: Ըստ երևույթին այդ ընկերները գտնում են, որ ղեկավար պաշտոններ գրավելով՝ դադարում են մասնագետներ լինելուց: ՄՏԿ-ների գծով պարտիայի շրջկոմների հրահանգչական խմբերը չեն կարող այդպիսի փաստերի կողքով անցնել: Նրանք պարտավոր են ամեն օր հոգ տանել այն մասին, որ գյուղատնտեսները, զոոտեխնիկները, անասնաբույժները և գյուղատնտեսության մյուս մասնագետները հնարավորություն ունենան գործնական աշխատանքում գործադրելու իրենց գիտելիքները, հանդես բերելու նախաձեռնություն:

Այն հսկայական խնդիրները, որոնք կանգնած են ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առաջ, չի կարելի հաջողությամբ կատարել առանց կոլտնտեսային լայն մասսաների ջանքերի ամենալուրջ լարման, առանց նրանց ստեղծագործական ակտիվության առավելագույն բարձրացման: Գյուղում պարտիական կազմակերպությունների կողմից տարվող ամբողջ քաղաքական աշխատանքն այժմ պետք է ծառայի գլխավոր խնդրին՝ գյուղատնտեսական մթերքների արտադրության բարձրացմանը: Ճիշտ են վարվում այն ագիտատորներն ու պրոպագանդիստները, որոնք, հրաժարվելով վերացական ֆորմուլաներից ու ընդհանուր կոչերից, իրենց կոլտնտեսության, սովետական տնտեսության և ՄՏ կայանի կյանքից վերցրած կոնկրետ օրինակներով ցույց են տալիս առաջավորների նվաճումները, մերկացնում են լոդրերին և դատարկաշրջիկներին, որոնք իրենց հիմնական ուշադրությունը դարձնում են անհատական օժանդակ տնտեսության վրա: Բայց լոկ ագիտատորների ջանքերը բավական չեն դրա համար: Ռեսպուբլիկական կազմակերպությունների, պար-

digitised by A.R.A.R.@

տիայի շրջկոմների, շրջսովետների գործկոմների, ՄՏԿ-ների ու սովետական տնտեսությունների ղեկավար աշխատողներն իրենք պետք է ամեն օր քաղաքական աշխատանք տանեն գյուղատնտեսության աշխատողների մեջ։

Գյուղատնտեսության վերելքի համար մղվող պայքարը համաժողովրդական գործ է։ Այդ մեծ գործից չեն կարող հեռու կանգնել գրողները, նկարիչները, կոմպոզիտորները և ստեղծագործական բնագավառի մյուս աշխատողները։

Ճիշտ է, մեր մամուլը քիչ ուշադրություն չի դարձնում գյուղատնտեսության հարցերին, բայց հաճախ թերթերում ու ժուռնալներում հրապարակվող նյութերը տրաֆարետ են, մակերեսային և միակերպ, նրանց մեջ քիչ են հուզող դրվագները գյուղատնտեսության աշխատողների իսկապես հերոսական աշխատանքային սխրագործությունների մասին։ Այդ ուղղությամբ քիչ բան չէին կարող անել մեր գրողները։ Չէ՞ որ նրանք շատ հետաքրքրական ակտուալ նյութեր կարող են քաղել կոլտնտեսականների, ՄՏԿ-ների և սովետական տնտեսությունների աշխատողների կյանքից ու պայքարից։ Լավ գրված ամեն մի ակնարկ, վիպակ, պատմվածք կարող է հսկայական օգուտ բերել գյուղի աշխատավորների ջանքերը մոբիլիզացնելու գործում, ոգեշնչել նրանց ու մղել դեպի նոր աշխատանքային սխրագործություններ։

Գյուղի աշխատավորների հանդեպ մեծ պարտք ունեն մեր արվեստագետները, մանավորապես պլակատիստները։ Դժբախտաբար դեռ շատ քիչ են մեզ մոտ այնպիսի պլակատներ, որոնք մասսայականացնում են առաջավոր փորձն ու ագրոտեխնիկական կանոնները։ Այդ մասին քիչ է հոգ տանում Գյուղատնտեսության մինիստրությունը։

Այս տարի սովետական ժողովուրդը նշում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասուներորդ տարեդարձը։ Սովետական յուրաքանչյուր կոլեկտիվ պատրաստվում է արժանավայել դիմավորելու այդ նշանավոր տարեթիվը։ Պարտիական կազմակերպությունների պարտքն է՝ գլխավորել կոլտնտեսությունների, ՄՏԿ-ների ու սովետական տնտեսությունների աշխատողների, գյուղատնտեսության մասնագետների խանդավառությունն ու աշխատանքային վերելքը։

Ռեսպուբլիկայում սկսվել է գարնանացանը, որի հաջող կատարումը մեծ չափով կնպաստի ոչ միայն բերքատվության բարձրացմանը, այլև անասնապահության վերելքին։

Պարտիական կազմակերպությունները պետք է բոլոր միջոցները ձեռք առնեն, որպեսզի ժամանակին և անթերի անցկացվի այդ կարևորագույն գյուղատնտեսական կամպանիան։

Գյուղատնտեսության վերելքի խնդիրը համաժողովրդական գործ է։ Ուստի պարտիական, սովետական կազմակերպությունների, հողային օրգանների անհետաձգելի խնդիրն է՝ բոլոր միջոցները գործի դնել և ապահովել գյուղատնտեսության շեշտակի վերելքը։

---

# ԼԵՆԻՆԻԶՄԻ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԸ ԼՈՒՍԱՎՈՐՈՒՄ ԵՆ ՄԵՐ ՈՒՂԻՆ

Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Սովետական ժողովուրդը, սոցիալիզմի լագերի բոլոր ժողովուրդները և ամբողջ առաջադեմ մարդկությունը այս օրերին նշում են աշխարհի աշխատավորության առաջնորդ և ուսուցիչ, Կոմունիստական պարտիայի հիմնադիր, առաջին սոցիալիստական պետության ղեկավար մեծ Լենինի ծննդյան 87-րդ տարելիցը։ Այդ նշանավոր տարեդարձը զուգադիպում է պատմական ապրիլյան թեզիսների 40-ամյակին, թեզիսներ, որոնցում ռևոլյուցիոն մտքի հանճար Լենինը հռչակեց սոցիալիստական ռևոլյուցիային անցնելու անհրաժեշտությունն ու անխուսափելիությունը։

Մեծ և անգնահատելի են Լենինի ծառայությունները։ Լենինի անունը անխզելիորեն կապված է պատմության ամենամեծ սոցիալական հեղաշրջման՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հետ, մարդկության ճակատագրի ամենախոր բեկման հետ։

Լենինը պատմական ասպարեզ իջավ այն ժամանակ, երբ կապիտալիզմը թևակոխել էր իր զարգացման վերջին՝ իմպերիալիստական փուլը։ Պատմական նոր պայմաններում Լենինը զարգացրեց Մարքսի և Էնգելսի ուսմունքը, տվեց իմպերիալիզմի հանճարեղ վերլուծությունը, պատասխանեց այն հրատապ հարցերին, որ դրված էին պատմության օրակարգում։ Իմպերիալիզմի հանճարեղ վերլուծությամբ Լենինը հանգեց կապիտալիստական երկրների տնտեսական և քաղաքական զարգացման անհամաչափության օրենքի հայտնագործմանը, որի հիման վրա նա տվեց մեկ առանձին երկրում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի հնարավորության դրույթը։ Օպորտունիզմի դեմ մղվող դժվարին պայքարում Լենինը ոչ միայն պաշտպանեց ռևոլյուցիոն մարքսիզմը միջազգային ռևիզիոնիզմից, այլև նոր պայմաններին համապատասխան այդ ուսմունքը հարստացրեց իր հանճարեղ դրույթներով։

Լենինը սոցիալիստական ռևոլյուցիայի թեորիան դրեց նոր մակարդակի վրա, բազմակողմանիորեն մշակեց պրոլետարական դիկտատուրայի և նրա պետական ձևերի հարցը։ Լենինը տվեց կոմունիզմի կառուցման մեծ ծրագիրը, մշակեց կոմունիստական շինարարության կարևորագույն տնտեսական պրոբլեմները։

Ճնշված ժողովուրդների մեծագույն բարեկամ Լենինը լուսավորեց նրանց ազգային ազատագրման պայքարի ուղին, ստեղծեց և մշակեց ազգային-գաղութային հարցի տեսությունը։

Լենինը հիմնեց և գլխավորեց Սովետական Միության Կոմունիստական

digitised by A.R.A.R.@

պարտիան՝ բանվոր դասակարգի իսկական ռևոլյուցիոն մարքսիստական պարտիան, նոր տիպի պարտիան:

Լենինը պարտիային և Ռուսաստանի պրոլետարիատին գրոհի առաջնորդեց 1917 թվականի Հոկտեմբերյան օրերին: Նրա ղեկավարությամբ մեր երկրում հաղթանակեց Սոցիալիստական ռևոլյուցիան, ջախջախվեց օտարերկրյա ինտերվենցիան:

Աշխարհի մեկ վեցերորդ մասում սոցիալական կապանքներից ազատագրված, ստեղծագործ աշխատանքի կոչված միլիոնավոր մարդիկ Լենինի ղեկավարությամբ ձեռնամուխ եղան նոր կյանքի, սոցիալիզմի կառուցմանը:

***

Լենինիզմի հայրենիքը Ռուսաստանն է: Ռուսաստանը, ռուս ժողովուրդը և ռուսական պրոլետարիատն են տվել աշխարհին լենինիզմը՝ ռուսական և համաշխարհային ռևոլյուցիոն մտքի մեծագույն նվաճումը:

Ռուսաստանի պրոլետարիատի ավանդարդային դերը համաշխարհային ռևոլյուցիոն շարժման մեջ, Ռուսաստանը լենինիզմի հայրենիք դառնալը պայմանավորված էին նրանով, որ կապիտալիզմի հակասությունները ամենից սուր կերպով դրսևորվեցին Ռուսաստանում, այն բանով, որ 19-րդ դարի վերջում Ռուսաստան էր փոխադրվում համաշխարհային ռևոլյուցիոն շարժման կենտրոնը:

Կանխատեսելով Ռուսաստանի և ռուսական պրոլետարիատի առաջավոր դերը՝ Էնգելսը դեռ 1883 թ. ռուսական սոցիալիստ Լոպատինի հետ ունեցած զրույցում ասում էր. «Ռուսաստանը այժմյան դարի Ֆրանսիան է: Օրինաչափորեն և օրինական կերպով նրան է պատկանում նոր սոցիալիստական վերափոխման ռևոլյուցիոն նախաձեռնությունը»:

Վերլուծելով Ռուսաստանում ստեղծված դրությունը՝ Լենինը 1902 թվականին, ռուսական ռևոլյուցիոն շարժման արշալույսին իր «Ի՞նչ անել» աշխատության մեջ նշում էր, որ պատմությունը ռուսական պրոլետարիատի առաջ դրել է մի խնդիր, որը ամենառևոլյուցիոնն է որևէ այլ երկրի պրոլետարիատի առաջ կանգնած խնդիրներից և որ այդ խնդրի իրագործումը ռուսական պրոլետարիատին կդարձնի միջազգային ռևոլյուցիոն պրոլետարիատի ավանգարդը:

Ռուսաստանի պրոլետարիատը պատվով կատարեց համաշխարհային ռևոլյուցիոն շարժման առաջամարտիկի իր դերը: Պատմության մեջ առաջին անգամ իրականացնելով սոցիալիստական ռևոլյուցիան, ստեղծելով առաջին բանվորա-գյուղացիական պետությունը, որն իր գոյության փաստով իսկ ռևոլյուցիոնականացնում էր աշխարհը, Ռուսաստանի պրոլետարիատը ոչ միայն ապահովեց սոցիալիզմի կառուցումը մեր երկրում, այլև մեր Հայրենիքը դարձրեց համաշխարհային ռևոլյուցիոն շարժման պատվարն ու հենարանը: Ստացվեց այնպես, ինչպես ասում էր Լենինը 1918 թվականին՝ «Սովետների մեր սոցիալիստական ռեսպուբլիկան հաստատուն կերպով կանգնած է մնալու բոլոր աշխատավոր մասսաների առաջ որպես միջազգային սոցիալիզմի ջահ և որպես օրինակ» (Երկեր, հ. 26, էջ 578):

Լենինիզմը միջազգային պրոլետարիատի ռևոլյուցիոն ուսմունքն է: Պատմությունը չգիտե մի այլ ուսմունք, մի այլ պատմական ակտ, որ ավելի մեծ



ազդեցություն գործած լիներ մարդկության զարգացման վրա, քան մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը և Հոկտեմբերյան ռևոլյուցիան:

Ամբողջ աշխարհի ռևոլյուցիոն շարժման պատմությունը, բանվոր դասակարգի և ճնշված ժողովուրդների պայքարի պատմությունը, բոլոր երկրների կոմունիստական պարտիաների փորձը ապացուցում են լենինիզմի միջազգային բնույթը:

Չինական Կոմունիստական պարտիայի համաչինական VIII համագումարին Կենտկոմի տված հաշվետվության մեջ ասված է. «Չնայած այն բանին, որ ռևոլյուցիան մեր երկրում ունի իր բազմաթիվ առանձնահատկությունները, չինական կոմունիստներն իրենց գործը դիտում են որպես Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի շարունակությունը»:

Պատմությունը ցույց է տալիս, որ միայն մարքսիզմ-լենինիզմի անշեղ կիրառումը, միայն Հոկտեմբերյան ռևոլյուցիայի բացած ուղին կարող են բերել կոմունիզմի վերջնական հաղթանակը ամբողջ աշխարհում:

***

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո Լենինը գլխավորեց սովետական ժողովրդի ստեղծագործ աշխատանքը, մշակեց սոցիալիզմի կառուցման տնտեսական պրոբլեմները:

Սոցիալիստական շինարարության լենինյան ծրագիրը իր հիմնական գծերով հանգում էր երկրի սոցիալիստական ինդուստրացմանը, արտադրական կոոպերացիայի հիման վրա գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխմանը, կուլտուրական ռևոլյուցիայի իրականացմանը:

Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ իրականացրեց Լենինի պատգամները, պատմական կարճ ժամանակամիջոցում ապահովեց սոցիալիզմի կառուցումը մեր երկրում:

Հայտնի է, թե ինչ մեծ նշանակություն էր տալիս Լենինը ծանր արդյունաբերությանը, որպես սոցիալիզմի հիմնական նյութական բազայի: «...Սոցիալիզմի միակ հնարավոր տնտեսական հիմքը խոշոր մեքենայական ինդուստրիան է: Նա, ով մոռանում է այդ, նա կոմունիստ չէ»,— գրել է Լենինը (Երկեր, հ. 32, էջ 636):

Լենինյան պատգամների անշեղ իրականացման հետևանքով այժմ մենք ունենք հնգամյակների ընթացքում ստեղծված հզոր սոցիալիստական ինդուստրիա, բազմաճյուղ սոցիալիստական արդյունաբերություն, որի ուժի մասին վկայում են ժամանակակից ամենակատարելագործված մեքենաների ստեղծման, ատոմային էներգիայի յուրացման և այն խաղաղ նպատակներով կիրառելու ասպարեզում Սովետական Միության խոշոր նվաճումները:

1957 թ. մեր երկրի արդյունաբերական արտադրանքի ծավալը համեմատած նախառևոլյուցիոն շրջանի հետ, աճել է 30 անգամ, ընդ որում մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքը 1913 թ. համեմատությամբ աճել է 180 անգամ, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 100 անգամ: 1960 թ. մեր երկիրը 40 անգամ ավելի արդյունաբերական արտադրանք կտա, քան 1913 թվականին:

Այժմ մեր երկրի առաջ կանգնած կարևորագույն խնդիրն է՝ անշեղորեն

digitised by A.R.A.R.@

իրականացնել արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումը կատարելագործելու վերաբերյալ լենինյան սկզբունքները։

Լենինն իր ժամանակին նշում էր, որ մեր խնդիրն է՝ «...սովետական ապարատի սիստեմատիկ փոքրացումն ու էժանացումը՝ նրա կրճատման, ավելի կատարյալ կազմակերպման, քաշքշուկի, բյուրոկրատիզմի վերացման և անարտադրողական ծախսերի պակասեցման միջոցով» (Լենին, Երկեր, հ. 33, էջ 529)։

Վերջին տարիների ընթացքում Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը արդյունաբերության բնագավառում ապարատի ավելորդ օղակների կրճատման և արտադրության էժանացման ուղղությամբ մի շարք կարևորագույն միջոցառումներ իրականացրին։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջիկա սեսիայում ընկեր Խրուշչևի զեկուցման թեզիսները՝ «Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին», որոնք դրվել են համաժողովրդական քննարկման, արմատական միջոցառումներ են նշում այդ ուղղությամբ։ Դրանց իրականացումը լայն պայմաններ կստեղծի մեր երկրի արդյունաբերության հետագա բուռն աճի, մեր Հայրենիքի հզորության ամրապնդման համար։

Սոցիալիստական էկոնոմիկայի ստեղծման կարևորագույն պայմանը գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումն էր, որի ծրագիրը մշակել է Լենինը։ Նա գրում էր. «...հետագա անցումն անխուսափելիորեն այն է, որ ամենաքիչ շահավետ ու ամենաշատ հետամնաց, մանր, առանձնացած գյուղացիական տնտեսությունն աստիճանաբար միավորվելով կազմակերպի հանրային, խոշոր հողագործական տնտեսություն» (Երկեր, հ. 33, էջ 362)։

Հիմնվելով լենինյան կոոպերատիվ պլանի վրա՝ Կոմունիստական պարտիան ապահովեց կոլտնտեսային կարգերի հաղթանակը գյուղում, իրականացրեց մանր գյուղական տնտեսությունների վերակառուցման խոշոր, մեքենայացված կոլեկտիվ տնտեսությունների ստեղծման խնդիրը։

Վերջին տարիների ընթացքում Կոմունիստական պարտիան հսկայական աշխատանք է ծավալել գյուղատնտեսության բնագավառում, կոլտնտեսային շինարարության մեջ անցյալում տեղ գտած թերությունները և գյուղատնտեսության մի շարք ճյուղերի ետ մնալը հաղթահարելու, գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովելու ուղղությամբ։ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը և պարտիայի Կենտկոմի վերջին պլենումների նշած և ձեռնարկած միջոցառումները, մասնավորապես մեր երկրի Արևելքում խամ և խոպան հողերի յուրացումը շրջադարձային նշանակություն ունեցան գյուղատնտեսության հետագա զարգացման համար։

Դեռ 1902 թ. Լենինը նշում էր, որ սոցիալական ռևոլյուցիայի հիմնական խնդիրն է սոցիալիստական հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցության և ազատ զարգացման ապահովումը։

Աշխատավորների նյութական և կուլտուրական բարեկեցության մակարդակի բարձրացման հարցը միշտ էլ եղել է Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ուշադրության կենտրոնում։ Այդ ուղղությամբ Կոմունիստական պարտիան հատկապես մեծ աշխատանք ծավալեց վերջին տարիների ընթացքում։ Բավական է ասել, որ Սովետական Միության ազգային եկամուտը 1955 թ. նախապատերազմյան 1940 թ. համեմատությամբ



աճել է երեք անգամ, իսկ միայն հինգերորդ հնգամյակում սոցիալական-կուլտուրական միջոցառումների վրա կատարված ծախսերը կազմել են 700 միլիարդ ռուբլի։ Պարտիայի և կառավարության կողմից վերջին շրջանում անցկացված մի շարք միջոցառումները՝ 1956 թ. հուլիս ամսին թոշակների մասին ընդունված նոր օրենքը, նախատոնական և նախահանգստյան օրերին երկու ժամով աշխատանքային օրվա կրճատումը, հղիության ժամանակ կանանց արձակուրդի ավելացումը, մանկահասակների համար վեցժամյա աշխատանքային օրվա սահմանումը, ցածր աշխատավարձ ստացող բանվորների և ծառայողների աշխատավարձի բարձրացումը և մի շարք այլ միջոցառումներ վկայում են, որ պարտիան և կառավարությունը անշեղորեն իրականացնում են լենինյան սկզբունքները աշխատավորների բարեկեցության մակարդակի բարձրացման մասին։

Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակից հետո սկսվեց տնտեսական մրցակցություն երկու սիստեմների միջև։ «Այս ասպարեզն է փոխադրվել պայքարը համաշխարհային մասշտաբով։ Կլուծենք այդ խնդիրը և այն ժամանակ մենք կշահենք միջազգային մասշտաբով հաստատապես ու վերջնականապես։ Այդ պատճառով տնտեսական շինարարության հարցերը մեզ համար միանգամայն բացառիկ նշանակություն են ստանում»,— գրում էր Լենինը դեռևս 1921 թ. (Երկեր, հ. 32, էջ 562)։

Անցած տարիները հիմք են տալիս ասելու, որ այդ մրցության մեջ հաղթում է սոցիալիզմը։

Աճի տեմպերը, որոնք վերջին հաշվով բնութագրում են տնտեսական զարգացման տենդենցները, ցույց են տալիս, որ ոչ մի կապիտալիստական երկիր չի կարող ՍՍՌՄ-ի հետ որևէ համեմատության դիմանալ։

Այսպես, օրինակ, Սովետական Միության ազգային եկամուտը 1956 թ., 1913 թ. համեմատությամբ, աճել է 13 անգամ, այնինչ Ամերիկայի Միացյալ Նահանգներում այն աճել է ընդամենը երկու անգամ, իսկ Անգլիայի և Ֆրանսիայի ազգային եկամուտը՝ 1,6 անգամ։ Նույնպիսի պատկեր է ներկայացնում արդյունաբերական արտադրանքի համեմատությունը։ Եթե չվերցնենք նույնիսկ 1913 թ., այլ համեմատության ելակետ ընդունենք 1929 թվականը, ապա 1955 թ., համեմատած 1929 թ. հետ, արդյունաբերական արտադրանքը Սովետական Միությունում աճել է 20 անգամ, իսկ Ամերիկայի Միացյալ Նահանգներում՝ ընդամենը 2 անգամ։

Մեր երկրի տնտեսական և կուլտուրական նվաճումները, սոցիալիզմի հաղթանակը լենինյան հանճարեղ կանխատեսումների իրականացումն են, լենինիզմի հաղթանակը։ Լենինիզմի գաղափարները լուսավորում են մեր ուղին։

***

Սովետական պետությունը ժողովրդական մասսաների ռևոլյուցիոն ստեղծագործության արդյունք է։ Իր էությամբ մեր սոցիալիստական պետությունը ներկայացնում է դեմոկրատիայի բարձրագույն ձևը։

Սովետական սոցիալիստական դեմոկրատիան արմատապես տարբերվում է բուրժուական դեմոկրատիայից։ Լենինը բազմիցս նշել է, որ սովետական իշխանության էությունն այն է, որ նա ներգրավում է ժողովրդական լայն մասսաները պետության ղեկավարման մեջ։

digitised by A.R.A.R.@

Այդպիսի հարցադրումը բխում է այն դերից, որ լենինիզմը հատկացնում է ժողովրդական մասսաներին՝ որպես պատմության իսկական կերտողների։ Լենինը գրել է. «... կենդանի, ստեղծարար սոցիալիզմը հենց ժողովրդական մասսաների ստեղծագործությունն է» (Երկեր, հ. 26, էջ 346)։ Մի այլ տեղ Լենինը նշում է՝ «...տասնյակ միլիոնավոր ստեղծագործողների խելքն ստեղծում է ինչ-որ անչափելիորեն ավելի բարձր բան, քան ամենամեծ ու հանճարեղ նախատեսումը» (Երկեր, հ. 26, էջ 581)։

Լենինը միշտ մեծ նշանակություն էր տալիս սովետական դեմոկրատիայի հետագա զարգացմանը, պետական ապարատի բարելավմանն ու կատարելագործմանը, նրա մոտեցմանը մասսաներին։ Նա միշտ պայքարում էր դեմոկրատական ցենտրալիզմի մարքսիստական սկզբունքը բյուրոկրատական ցենտրալիզմով փոխարինելու դեմ, պահանջում էր բարձրացնել սովետական հիմնարկների և պաշտոնյաների պատասխանատվությունը։

Կոմունիստական պարտիան կյանքում հետևողականորեն կիրառում է լենինյան այդ պահանջները։ ՍՄԿՊ XX համագումարը նշեց սովետական դեմոկրատիզմի հետագա զարգացման ուղիները, սովետական օրգանների աշխատանքի բարելավման, մասսաների հետ նրանց կապն ուժեղացնելու ուղիները։ Կոմունիստական պարտիան միջոցներ ձեռնարկեց պետական ապարատի կատարելագործման և էժանացման, տեղերում նախաձեռնությունը զարգացնելու ուղղությամբ։ Վերջին տարիների ընթացքում պետական ապարատը մեր երկրում կրճատվել է 750.000 միավորով, որը պետությանը տվել է 6 միլիարդ ռուբլու խնայողություն։ Այդ աշխատանքը այժմ էլ շարունակվում է։ Պրակտիկա է դառնում պարտիայի ու կառավարության կողմից նախապատրաստվող կարևոր միջոցառումների և կարևոր օրենքների նախագծերի համաժողովրդական քննարկումը։

Վլադիմիր Իլյիչը տվեց ազգային հարցի սպառիչ տեսական վերլուծությունը և մշակեց պարտիայի ու Սովետական պետության ազգային քաղաքականության սկզբունքները։

Լենինը գտնում էր, որ ազգային հարցի լուծումը հնարավոր է միայն ռևոլյուցիոն ճանապարհով, պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերից, որ այդ հարցի լուծումը պետք է ենթարկված լինի պրոլետարիատի պայքարի շահերին։ Նա առանձնահատուկ ուշադրություն էր դարձնում ազգային փոքրամասնությունների զարգացմանը։ Լենինը Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության ստեղծման և կազմակերպման նախաձեռնողն էր ու ոգեշնչողը, սովետական բազմազգ և իրավահավասար ժողովուրդների պետության ստեղծողը։ Իրականացնելով նրա ավանդները՝ Կոմունիստական պարտիան ցույց տվեց ազգային հարցի լուծման պատմության մեջ չտեսնըված փայլուն օրինակ։ Պարտիայի և Սովետական կառավարության քաղաքականությունն ապահովեց ոչ միայն Սովետական Միության մեջ մտնող բոլոր ազգերի իրավական հավասարությունն ու բարեկամությունը, այլև ազգային ռեսպուբլիկաների փաստական հավասարությունը, նրանց տնտեսական և կուլտուրական զարգացման համար անհրաժեշտ պայմանները ստեղծելով։

Կոմունիստական պարտիան վերջին տարիներին ձեռք է առնում մի շարք նոր կարևորագույն միջոցառումներ, որոնք ուղղված են ազգային հարցում լենինյան սկզբունքների հետագա անշեղ իրականացմանը։ Այդ միջոցառումների թվին են պատկանում՝ միութենական որոշ մինիստրությունների վերա-



կազմումը միութենական ռեսպուբլիկական մինիստրությունների, ռեսպուբլիկական մի շարք նոր մինիստրությունների ստեղծումը և միութենական ենթակայության ձեռնարկությունների հանձնումը նրանց։ Կարևորագույն նշանակություն ունեցավ այդ տեսակետից Սովետական Միության Գերագույն Սովետի 6-րդ սեսիան, որն ընդլայնեց միութենական ռեսպուբլիկաների իրավունքները դատարանների կառուցվածքի և օրենսգրքերի ընդունման, ինչպես նաև ռեսպուբլիկաների վարչա-տերիտորիալ բաժանման հարցերի լուծման բնագավառում։ Ազգությունների Սովետում ստեղծվեց տնտեսական հանձնաժողով, որը նպաստում է միութենական ռեսպուբլիկաների տնտեսական զարգացման հետ կապված հարցերի ավելի էֆեկտիվ լուծմանը։

***

Լենինիզմի գաղափարները հաղթանակում են ամբողջ աշխարհում։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո սոցիալիզմի լագերի ստեղծումը, չին մեծ ժողովրդի պատմական հաղթանակը և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հռչակումը, ժողովրդա-դեմոկրատական կարգերի հաղթանակը Արևելյան Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում և սոցիալիզմի ուղիով այդ երկրների ընթանալը, հուժկու հարված հասցրին կապիտալիզմի ամբողջ սիստեմին։

Սոցիալիզմի լագերի հաջողությունները կատաղեցնում են իմպերիալիստներին։ Կապիտալիզմը այժմ ոչ մի միջոցից չի խորշում առհավետ կորցրած դիրքերը վերականգնելու համար, սոցիալիզմի, դեմոկրատիայի և խաղաղության լագերի դեմ ամենազազրելի դավեր նյութելու համար։ Սակայն կապիտալիզմը ի վիճակի չէ կանգնեցնելու պատմության անիվը։

Կապիտալիզմի թուլության, նրա բոլոր հոգևարքային ջղաձգությունների ձախողման ապացույցը իմպերիալիստական արյունոտ ավանտյուրայի պարտությունն էր Հունգարիայում։

Սակայն հունգարական դեպքերը, այդուհանդերձ, ուսանելի են որոշ տեսակետից։ Նրանք ամենից առաջ նորից ապացուցում են Լենինի այն մտքի ճշտությունը, թե՝ «Այնպիսի ռևոլյուցիաներ, որ նվաճելով, կարելի է գրպանը դնել և դափնիների վրա հանգչել, պատմության մեջ չեն եղել» (Լենին, Երկեր, հ. 29, էջ 63)։

Հունգարական դեպքերը ցույց տվին, թե որքան իրավացի էր Լենինը, երբ 1919 թ. հունգարական բանվորներին ուղղած նամակում գրում էր.

«Դասակարգերի ոչնչացումը երկարատև, դժվար, համառ դ ա ս ա կ ա ր գ ա յ ի ն  պ ա յ ք ա ր ի գործ է, պայքար, որը կապիտալի իշխանությունը տապալելուց հ ե տ ո, բուրժուական պետությունը խորտակելուց հ ե տ ո, պրոլետարիատի դիկտատուրան հաստատելուց հ ե տ ո  չ ի  ա ն հ ե տ ա ն ո ւ մ..., այլ միայն փոխում է իր ձևերը, շատ տեսակետներից էլ ավելի կատաղի դառնալով» (Լենին, Երկեր, հ. 29, էջ 477)։

Հունգարական դեպքերն ամբողջ ուժով նորից ցույց տվին, որ կապիտալիզմի դեմ մղվող պայքարում ամենակարևոր նախապայմանը պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան սկզբունքի վրա հիմնված սոցիալիստական լագերի միասնությունն է, սոցիալիզմի բոլոր ուժերի համերաշխությունը և ճիշտ համագործակցությունը։

digitised by A.R.A.R.@

Սոցիալիզմի լագերի պետությունների հարաբերությունները նոր տիպի միջազգային հարաբերություններ են, իսկ այդ երկրների բարեկամությունը արդյունք է ամենից առաջ այն բանի, որ դրանք միևնույն հասարակական սիստեմին՝ սոցիալիստական սիստեմին պատկանող պետություններ են։ Նրանց փոխհարաբերությունները կառուցված են եղբայրական բարեկամության ու վստահության, իսկական իրավահավասարության, ազգային ինքնուրույնության փոխադարձ հարգանքի և համագործակցության սկզբունքների վրա։ Այդ սկզբունքները մեկ անգամ ևս ընդգծեցին 1956 թ. հոկտեմբերի Սովետական կառավարության դեկլարացիան։

Սոցիալիզմի թշնամիները, լենինիզմի թշնամիները, ապարդյուն ջանքեր են գործ դնում սոցիալիզմի լագերի միասնությունը որևէ ձևով թուլացնելու համար։ Այդպիսի փորձ պետք է համարել «դեստալինիզացիայի» և «ազգային կոմունիզմի» մասին դատարկահնչյուն խոսակցությունները։

«Ազգային կոմունիզմի» ջատագովները սպեկուլյատիվ նպատակներով միակողմանիորեն առաջ են քաշում ազգային սպեցիֆիկ առանձնահատկությունների հարցը, մի հարց, որի նշանակությունը երբեք չի ժխտել լենինիզմը։ Նրանք նենգափոխելով այդ հարցադրումը, այն փաստորեն ուղղում են սոցիալիզմի բուն իսկ էության դեմ։

Լենինիզմը միշտ էլ կարևոր նշանակություն է տվել այս կամ այն երկրում սոցիալիզմի կառուցման գործում ազգային-պատմական առանձնահատկությունները հաշվի առնելուն, միշտ եղել է դոգմատիզմի և սխեմատիզմի թշնամի թե՛ այս, և թե՛ բոլոր հարցերում։ Լենինը համոզված էր, որ «Բոլոր ազգերը կգան դեպի սոցիալիզմ՝ դա անխուսափելի է, բայց բոլորը կգան ոչ բոլորովին միատեսակ, յուրաքանչյուրը յուրահատկություն կմտցնի դեմոկրատիայի այս կամ այն տարատեսակության մեջ, հասարակական կյանքի զանազան կողմերի սոցիալիստական վերափոխումների այս կամ այն տեմպի մեջ» (Երկեր, հ. 23, էջ 81)։

Սոցիալիստական երկրների, նրանց կոմունիստական պարտիաների և, հատկապես, Չինական Կոմունիստական պարտիայի հարուստ փորձը ցույց է տալիս սոցիալիզմի կառուցման ընթացքում մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական կիրառման փայլուն օրինակներ, որոնք բխում են տվյալ երկրների ազգային պատմական առանձնահատկությունների խոր ըմբռնումից։

Ինչի՞ դեմ է, ուրեմն, ուղղված ««ազգային կոմունիզմի» տեսությունը»․ դա ըստ ամենայնի ուղղված է այն ընդհանուր օրինաչափությունների դեմ, որոնք պարտադիր են բոլոր սոցիալիզմ կառուցող երկրների համար, այսինքն՝ վերջին հաշվով սոցիալիզմի բուն էության դեմ։ Ռևիզիոնիստների կողմից «ազգային կոմունիզմի» պրոպագանդան ուղղված է սոցիալիզմի ուժերի մասնատման, կոմունիստական շարժման համախմբվածության թուլացման նպատակին։

Գոյություն ունեն սոցիալիզմի կառուցման հիմնական և բոլորի համար ընդհանուր սկզբունքներ և գծեր։ Առանց այդ սկզբունքներն ընդունելու խոսել սոցիալիզմի մասին, նշանակում է դատարկ շաղակրատանքով զբաղվել, նշանակում է ըստ էության չընդունել սոցիալիզմը։

Լենինը գրում էր, որ սոցիալիզմից կոմունիզմին անցման ձևերը տարբեր են, բայց էությունը մեկն է՝ պրոլետարիատի դիկտատուրա։ «Մեր ռևոլյուցիայի մի քանի հիմնական գծերն ունեն ոչ թե տեղական, ոչ թե ազգային



առանձնահատուկ, ոչ թե միայն ռուսական, այլ միջազգային նշանակություն» (Լենին, Երկեր, հ. 31, էջ 5)։

Որո՞նք են այդ ընդհանուր գծերը. դա բանվոր դասակարգի քաղաքական իշխանության՝ պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումն է. դա նրա մարքս-լենինյան ավանգարդի՝ պարտիայի ղեկավարությունն է. դա բանվոր դասակարգի և գյուղացիության, ինչպես և աշխատավորության մյուս խավերի դաշինքի ամրապնդումն է. դա արդյունաբերական ձեռնարկությունների, բանկերի, տրանսպորտի, կապի մասնավոր կապիտալիստական սեփականության վերացումն է, արտադրության հիմնական միջոցների հանրային սեփականությունն է, տնտեսության պլանային բնույթն է, սոցիալիստական ռևոլյուցիայի նվաճումների պաշտպանությունն է նախկինում իշխող դասակարգերի և միջազգային ռեակցիայի հարձակումներից։

Ահա ինչու, շոշափելով այս հարցը, «Ժենմինժիբաո» թերթը «Դարձյալ պրոլետարիատի դիկտատուրայի պատմական փորձի մասին» հոդվածում գրում է. «Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ուղին արտացոլում է ռևոլյուցիայի և շինարարության ընդհանուր օրենքը մարդկային հասարակության զարգացման մեծ ճանապարհի մի որոշակի էտապում։ Դա ոչ միայն Սովետական Միության պրոլետարիատի մեծ ճանապարհն է, այլև ընդհանուր մեծ ճանապարհ է, որով հաղթանակների հասնելու համար պետք է ընթանան բոլոր երկրների պրոլետարները»։

Այս սկզբունքների ժխտումն ըստ էության մարքսիզմ-լենինիզմի ռևիզիա է նշանակում։ «Գործել այդ ձևով,— ասում է Մորիս Թորեզը,— նշանակում է շարժումը ենթարկել պառակտման վտանգի, պարտիաների միջև և նույնիսկ պարտիայի ներսում տարաձայնությունների ծագման վտանգի, դրանով իսկ սնունդ տալով այն կամպանիային, որ անց են կացնում կոմունիզմի թշնամիները»։

Բանվոր դասակարգի իսկական ռևոլյուցիոն մարքսիստական պարտիաները պայքարել և պայքարում են ռևիզիոնիզմի դեմ, նրա բոլոր այլաձևությունների դեմ, ինչպիսի դիմակի տակ էլ հանդես գալու լինեն դրանք։

Դրա հետ միասին մարքսիստները միշտ էլ պայքար են մղել դոգմատիզմի դեմ, որը լուրջ վնաս կարող է հասցնել բանվորական ռևոլյուցիոն շարժմանը։ Լենինը մեռած սխեմաների, շաբլոնի, աղանդավորականության անհաշտ հակառակորդն էր։ Նա ցույց է տվել ստեղծագործական առումով իսկական օրթոդոքս մարքսիստի փայլուն օրինակ։

* * *

Լենինիզմի գաղափարները լուսավորեցին Արևելքի ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի ուղին։ «Ասիայի ժողովուրդների համար, ինչպես և ամբողջ աշխարհի ժողովուրդների համար,—գրում է Խո Շի-մինը,— որոնք պայքարում են խաղաղության, անկախության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար, լենինյան ուսմունքը նման է կենարար արևի»։

Լենինը հսկայական նշանակություն էր տալիս Արևելքի գաղութային երկրների ազգային-ազատագրական պայքարին, այն համարելով սոցիալիզմի և կապիտալիզմի միջև մղվող պայքարի բաղկացուցիչ մասը։ Նա գրում էր. «Պայքարի ելքը, վերջին հաշվով, կախված է նրանից, որ Ռուսաստանը,



digitised by A.R.A.R.@

Հնդկաստանը, Չինաստանը և այլն կազմում են բնակչության հսկայական մեծամասնությունը։ Իսկ բնակչության հենց այդ մեծամասնությունն է, որ վերջին տարիների ընթացքում արտասովոր արագությամբ ներգրավվում է իր ազատագրման պայքարի մեջ, այնպես որ այդ իմաստով կասկածի նշույլ անգամ չի կարող լինել, թե ինչպիսի վերջնական լուծում կունենա համաշխարհային պայքարը։ Այդ իմաստով սոցիալիզմի վերջնական հաղթանակն ապահովված է միանգամայն և անպայման» (Լենին, Երկեր, հ. 33, էջ 597)։

Աշխարհի հետհոկտեմբերյան ամբողջ պատմությունը ապացուցում է Լենինի կանխատեսումների ճշմարտությունը գաղութային և կախյալ երկրների ազգային-ազատագրական պայքարի ուղիների և ընթացքի մասին, իմպերիալիզմի գաղութային սիստեմի կործանման մասին։

Երիտասարդ Ասիան, որի մասին խոսում էր Լենինը, այժմ արդեն իր ամբողջ հասակով կանգնած է իմպերիալիզմի դեմ մղվող գոտեմարտում։

Եթե նախկինում գաղութային սիստեմը Արևելքում համարյա համապարփակ սիստեմ էր, որն իր մեջ այս կամ այն ձևով ընդգրկում էր բոլոր արևելյան երկրները, ապա այժմ այդ սիստեմն իր խոր ճգնաժամն է ապրում։ Գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի հետհոկտեմբերյան էտապը արմատապես տարբերվում է նախահոկտեմբերյան էտապից նրանով, որ վերջին շրջանում գաղութային և կախյալ մի շարք երկրներում ազատագրական պայքարը գլխավորեց ոչ թե բուրժուազիան, այլ պրոլետարիատը, նրա մարքսիստական-լենինյան պարտիաները, որոնք տարան այդ պայքարը ոչ թե նեղ բուրժուա-ազգայնական ճանապարհով, այլ պրոլետարական ինտերնացիոնալիզմի ճանապարհով։ Դրա փայլուն օրինակը ռևոլյուցիայի հաղթանակն էր Չինաստանում։

Միջազգային կյանքի ամեն մի օր նոր հարվածներ է հասցնում իմպերիալիզմի գաղութային սիստեմին։ Աճում է Արևելքի ճնշված ժողովուրդների քաղաքական ինքնագիտակցությունը և համերաշխությունը, տեղի է ունենում նրանց ուժերի անընդհատ համախմբում։ Արևելքի ազատագրված և ազատության համար պայքարող երկրները մտնում են «խաղաղության գոտու» մեջ, դառնում են սոցիալիզմի ուժերի դաշնակիցը իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում։

Գաղութային սիստեմի փլուզումից սարսափահար եղած իմպերիալիստները փորձում են պահպանել իրենց դիրքերը, դիմում են բացահայտ ագրեսիայի և ավանտյուրաների գաղութային շահագործումը թոթափած ժողովուրդների դեմ։

Իմպերիալիզմի այդպիսի վարքագծի ապացույցը Սուեզի ջրանցքի գոտում, Եգիպտոսի դեմ սանձազերծված ագրեսիան էր։ Արևմտյան իմպերիալիզմի արյունոտ ագրեսիան առաջ բերեց աշխարհի բոլոր խաղաղասեր ուժերի համերաշխ դիմադրությունը, որը հանգեցրեց ավանտյուրայի ձախողմանը։

Ի հակադրություն ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի և մյուս իմպերիալիստական պետությունների քաղաքականության, Սովետական Միությունը ելնելով ազգերի իրավահավասարության, սուվերենության և շահերի փոխադարձ հարգանքի լենինյան սկզբունքներից, անշահախնդիր օգնություն է ցույց տալիս իրենց ազատագրման համար պայքարող բոլոր ժողովուրդներին, ամրապնդում է կապերը նրանց հետ, միջազգային ասպարեզում հետևողականորեն պաշտպանում է նրանց իրավունքները։

Այդ նկատի ուներ Լենինը, երբ ասում էր. «Մենք կգործադրենք բոլոր



ջանքերը, որպեսզի մերձենանք և միաձուլվենք մոնղոլների, պարսիկների, հնդիկների, եգիպտացիների հետ, մենք մեր պարտքը և մ ե ր շ ա հ ն ենք համարում անել այդ, որովհետև այլապես սոցիալիզմը Եվրոպայում ա ն կ ա յ ու ն կլինի։ Մենք կաշխատենք դրանով մեզնից ավելի քան հետամնաց ու ճնշված ժողովուրդներին ցույց տալ «անշահախնդիր կուլտուրական օգնություն»..., այսինքն նրանց օգնել՝ անցնելու մեքենաներ գործադրելուն, աշխատանքը հեշտացնելուն, անցնելու դեմոկրատիային, սոցիալիզմին» (Երկեր, հ. 23, էջ 77)։

***

Վերլուծելով սոցիալիզմի և կապիտալիզմի մրցակցության հարցը, Լենինը հնարավոր էր համարում սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների խաղաղ գոյակցությունը։ Սովետական Միության արտաքին քաղաքականությունը հենվելով լենինյան այս դրույթի վրա, եղել է և մնում է ամբողջ աշխարհում խաղաղությունն ապահովելու քաղաքականություն։

ՍՄԿՊ XX համագումարը ստեղծագործորեն զարգացնելով մարքսիզմը, վերլուծելով միջազգային հարաբերությունների զարգացումը տվյալ էտապում, ընդգծեց ոչ միայն երկու սիստեմների խաղաղ գոյակցության հնարավորությունը, այլև պատերազմները կանխելու հնարավորությունը։

Սովետական Միությունը և սոցիալիզմի լագերի բոլոր պետությունները հետևողականորեն անց են կացնում միջազգային համագործակցության և խաղաղության քաղաքականություն, մերկացնում են պատերազմի հրձիգներին, ընդլայնում են երկրների միջև տնտեսական, կուլտուրական և մյուս կապերը։ Այս քաղաքականությունը համապատասխանում է մարդկության ճնշող մեծամասնության շահերին։

Իմպերիալիզմի լագերը դրան հակառակ անց է կացնում նոր պատերազմ հրահրելու քաղաքականություն։ Այդ մասին են վկայում վերջին տարիների ընթացքում իմպերիալիզմի մի շարք միջազգային ավանտյուրաները։ Ամերիկայի Միացյալ Նահանգները և Անգլիան կանգնել են սպառազինումների մրցավազքի ուղու վրա, իրենց հանցագործ քաղաքականության մեջ ներգրավելով նաև Արևմտյան Գերմանիան։

Երկու սիստեմների խաղաղ գոյակցության և պատերազմների կանխման հնարավորությունը ռեալ իրականություն դառնալու ճանապարհին հանդիպում է իմպերիալիզմի լագերի կատաղի դիմադրությանը։ Ահա թե ինչու Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը նշեց, որ՝

«Այս պայմաններում, իհարկե, ուժի մեջ է մնում լենինյան այն դրույթը, որ, քանի գոյություն ունի իմպերիալիզմը, պահպանվում է նաև պատերազմների ծագման տնտեսական հիմքը։ Ահա թե ինչու մենք պետք է մեծագույն զգոնություն պահպանենք։ Քանի դեռ երկրագնդի վրա մնում է կապիտալիզմը, կապիտալիստական մոնոպոլիստների շահերը ներկայացնող ռեակցիոն ուժերն այսուհետև էլ կձգտեն պատերազմական ավանտյուրաների և ագրեսիայի, կարող են փորձել սանձազերծել պատերազմ»։

Իմպերիալիզմն իրականացնելով ագրեսիվ պատերազմի նախապատրաստման քաղաքականություն, օգտագործում է ոչ միայն նյութական, այլև գաղափարական զենք։

digitised by A.R.A.R.@

Սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների խաղաղ գոյակցության հնարավորությունից ամենևին չի բխում սոցիալիստական և կապիտալիստական իդեոլոգիաների խաղաղ գոյակցության հնարավորությունը, ընդհակառակն, այն ենթադրում է երկու իդեոլոգիաների անհաշտ պայքար, այն պարտավորեցնում է ավելի մարտական, ավելի հարձակողական դարձնել մեր իդեոլոգիական աշխատանքը, լենինիզմի գաղափարների պրոպագանդան։

«Սառը պատերազմի» սրման հետևանքով այժմ ուժեղանում են կոմունիզմին թշնամի ուժերի իդեոլոգիական դիվերսիաները։ Ռևոլյուցիոն մարքսիզմի դեմ արշավանքի են լծվել տարբեր տիպի ռևիզիոնիստները։ Ռեֆորմիզմի դիրքերից մեկնաբանելով դասակարգային պայքարի մարքսիստական տեսությունը, չընդունելով պրոլետարիատի դիկտատուրայի և մարքսիստական բանվորական պարտիայի դերը սոցիալիզմի համար մղվող պայքարում, ժամանակակից ռևիզիոնիստները փորձում են գունազարդել կապիտալիզմը, հնացած հայտարարել մարքս-լենինյան տեսությունը՝ ճգնաժամերի և պրոլետարիատի աղքատացման մասին, օպորտունիստական մտքեր քարոզել կապիտալիզմի պայմաններում դասակարգերի համագործակցության և բարեկամության մասին։

Կապիտալիզմի տեսաբանները այժմ ճիգ ու ջանք չեն խնայում ապացուցելու, որ կապիտալիզմը «կատարելագործվում», «ծաղկում է», որ նա «ապրում է պրոգրեսիվ էվոլյուցիա», իսկ ոմանք խոսում են անգամ «կապիտալիստական ռևոլյուցիայի» մասին, որն իբր թե հիմնովին փոխել է կապիտալիզմի բնույթը։ Բայց դրանք բոլորն էլ կապիտալիզմի տեսական մտքի վերջին ճիչերն են, որոնց նպատակը բոլոր դեպքերում մեկն է՝ հակադրվել իմպերիալիզմի լենինյան հանճարեղ վերլուծությանը, պատմության ընթացքի, ռեալ փաստերի, պատմական զարգացման տենդենցների, կապիտալիզմի այլանդակ իրականության նենգափոխման միջոցով ապացուցելու կապիտալիզմի կենսունակությունը։

Այդ ջանքերը ապարդյուն են։ Իմպերիալիզմի, որպես նեխվող կապիտալիզմի վերջին ստադիայի, լենինյան վերլուծությունը, նրանից բխող կապիտալիզմի անխուսափելի կործանման հեռանկարը օր-օրի վրա ավելի ռեալ փաստ է դառնում։

Օր-օրի իրականանում է մարգարեություն դարձած Լենինի կանխատեսումը, միլիոնների սրտից բխած լենինյան դատավճիռը կապիտալիզմի հանդեպ։ «Կապիտալիստները, բուրժուազիան կարող են իրենց համար «լավագույն» դեպքում սոցիալիզմի հաղթանակը ձգձգել այս կամ այն առանձին երկրում էլի հարյուր-հազարավոր բանվորների և գյուղացիների բնաջնջման գնով։ Բայց նրանք կապիտալիզմը փրկել չեն կարող» (Երկեր, հ. 29, էջ 643)։

Սովետական Միություն, Սոցիալիզմի լագերի երկրների, կոմունիստական բոլոր պարտիաների ուժը լենինիզմի պատգամներին հավատարիմ մնալու մեջ է։

Հավատարիմ մնալով լենինյան պատգամներին, լենինիզմի գաղափարներով զինված, Սովետական Միության Կոմունիստական պարտիան առաջնորդում է սովետական ժողովրդին դեպի կոմունիզմ։

---

# ՊԱՐՏԻԱՆ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՈՒ ԱՐՎԵՍՏԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՐՑԵՐԸ

Սովետական գրականագետներն ու արվեստի գործիչները ամբողջ ժողովրդի հետ միասին պատրաստվում են այս տարի նշելու պատմական մի նշանավոր տարեթիվ՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասնամյակը։ Նոր հասարակարգի զարգացման էտապները նաև նոր սոցիալիստական կուլտուրայի, գրականության և արվեստի ձևավորման և աճման էտապներն են, գեղարվեստական ստեղծագործության մեջ սոցիալիստական ռեալիզմի մեթոդի հաստատման և ուժգին թափանցման էտապները։

Սովետական արվեստի զարգացումը սկսվել է ծանր ու բարդ պայմաններում։ Արևմուտքում բուրժուազիայի գաղափարական զինակիրները ռուս սպիտակգվարդիականների հետ միասին, ձգտելով վախեցնել ինտելիգենցիային, աղաղակում էին, թե ռևոլյուցիան կործանում է բերում արվեստին և ամբողջ կուլտուրային։ Բայց հին արվեստագետ ինտելիգենցիայի լավագույն մասը, որն իրեն ժողովրդից չէր անջատում, Հոկտեմբերի առաջին օրերից կանգնեց ռևոլյուցիայի կողմը, ամբողջ հոգով ընդունեց նրա պաթոսը և երիտասարդ ռևոլյուցիոն արվեստագետների սերնդի հետ միասին սկսեց ծառայել սոցիալիզմի կառուցման մեծ գործին։

Ետ նայելով անցած ուղուն, մեր գրականության և արվեստի գործիչները հպարտությամբ կարող են ասել, որ իրենց ստեղծագործությունն անբաժանելի է նոր կյանք կերտող սովետական ժողովրդի հերոսական ստեղծագործություններից։ Սովետական արվեստագետներն ավելի ու ավելի խորն են մարմնավորում սոցիալիստական արվեստի հիմնական սկզբունքները՝ ճշմարտացիությունը, ժողովրդայնությունը, կոմունիստական գաղափարականությունը և պարտիականությունը։ Այդ սկզբունքները սովորեցրել և սովորեցնում է բուն իսկ իրականությունը՝ դեպի կոմունիզմ տեղի ունեցող իր անընդհատ առաջընթաց շարժման ընթացքում։

Արվեստագետ ինտելիգենցիայի զգայուն բարեկամն ու դաստիարակը, որը միշտ տակտով օգնել է նրան հասկանալու և իմաստավորելու իր դերը նոր կյանքի մեծ շինարարության բնագավառում, եղել է և հանդիսանում է Սովետական Միության Կոմունիստական պարտիան։ Իրականացնելով գրականության և արվեստի բնագավառի ղեկավարությունը, պարտիան ամենից առաջ ձգտում է օգնել արվեստագետներին՝ ճիշտ կերպով իմաստավորելու կյանքի և իդեոլոգիական պայքարի պրոցեսները, միշտ գտնվելու գաղափարական այնպիսի մակարդակի վրա, որպեսզի ետ չմնան ժողովրդից, այլ ընթանան նրա առջևից։ Պարտիայի գաղափարական ազդեցությունը արվեստագետ ինտելիգենցիայի ամենալայն խավերի վրա դարձավ անդիմադրելի և բացառապես բեղմնավոր։ Իրենց բոլոր նվաճումները գրականության և ար-

digitised by A.R.A.R.@

*վեստի աշխատողները կապում են պարտիայի ուղղություն տվող ղեկավարու-
թյան հետ, պարտիա, որը նրանց համար, ինչպես և ամբողջ ժողովրդի հա-
մար, անձնավորում է մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը։*

*Այդ չի կարող դուր գալ և ակնհայտորեն դուր չի գալիս սոցիալիզմի
թշնամիներին, որոնք փորձում են ամեն կերպ սևացնել պարտիային, խախտել
նրա նկատմամբ եղած վստահությունն ու սերը։ Կապիտալիզմի գաղափարա-
խոսներն ու պրոպագանդիստները — խոշոր թեորետիկներից մինչև բուրժուա-
կան բուլվարային մամուլի դարպասապահից ամեն օր վայրահաչող փոքրիկ
շնիկները,— բոլոր եղանակներով գովաբանում են իրենց այսպես կոչված
«զուտ դեմոկրատիան» և պնդում են այն մասին, որ Սովետական Միությու-
նում իբր թե իսկական դեմոկրատիա չկա, այդ թվում չկա նաև գեղարվեստա-
կան ստեղծագործության ազատություն, քանի որ այդ ստեղծագործությունը
գտնվում է պարտիայի ազդեցության ներքո։*

*Բայց ահա թե ինչն է բնորոշ. պատմության կտրուկ շրջադարձերի ժա-
մանակ ամեն անգամ կեղծ «զուտ դեմոկրատիայի» առավել թունդ պաշտ-
պաններն են դառնում ամենառեակցիոն ուժերը։ Այդ վաղուց և չափազանց
պարզորոշ կերպով ցույց են տվել մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները։ «Զուտ
դեմոկրատիան ռևոլյուցիայի մոմենտին կարճ ժամկետով ժամանակավոր
նշանակություն է ձեռք բերում որպես ամենածայրահեղ բուրժուական պար-
տիա», հանդես է գալիս «ամբողջ բուրժուական և նույնիսկ ֆեոդալական
տնտեսության փրկության վերջին խարիսխի դերում...»— նշում էր Էնգելսը
Բեբելին գրած իր 1884 թվականի դեկտեմբերի 11-ի նամակում։ «... Համե-
նայն դեպս,— գրում էր նա,— ճգնաժամի ժամանակ և նրա հաջորդ օրը մեր
միակ հակառակորդը կլինի զուտ դեմոկրատիայի շուրջը համախմբվող ռեակ-
ցիոն մասսան...»։*

*Այդ նույն միտքը բազմիցս ընդգծում էր նաև Լենինը, ցույց տալով, թե
ինչպես մեր թշնամիները Հոկտեմբերյան ռևոլյուցիայի և քաղաքացիական
պատերազմի ընթացքում քողարկվում էին «զուտ դեմոկրատիայի» շիրմայով,
երբ նրանք գրոհում էին ժողովրդի նվաճումների վրա։ Այդ գզգզված շիրման
սոցիալիզմի թշնամիներն օգտագործում են նաև այժմ, մի բան, որը ակնա-
ռու կերպով հաստատեցին Հունգարիայի իրադարձությունները։ Բայց «զուտ
դեմոկրատիայի» վերաբերյալ թունավոր սուտն ընդունակ է խաբելու միայն
նրանց, ովքեր չեն ուզում կամ չեն կարողանում հասկանալ բուրժուական և
սոցիալիստական դեմոկրատիայի բնույթը։*

*Մեր կյանքի բոլոր բնագավառներում, այդ թվում նաև գրականության ու
արվեստի բնագավառում պարտիական ղեկավարության անհրաժեշտությունը
պարզ է յուրաքանչյուրին, ով իրոք հավատարիմ է մարքսիզմ-լենինիզմին։*

*Արվեստն իդեոլոգիայի ամենաբարդ և դրա հետ մեկտեղ ամենահուզա-
կան-ներգործուն ձևերից մեկն է։ Այն չի կարող մի կողմ կանգնել գաղափա-
րական այն լարված պայքարից, որն անընդհատ տեղի է ունենում սոցիա-
լիզմի և կապիտալիզմի միջև։ Սոցիալիստական և բուրժուական գաղափար-
ներն անհաշտելի են, դրանց միջև խաղաղ գոյակցությունն անհնարին է։ Մեր
կողմից գաղափարական ճակատի թուլացումը հակառակորդն անհապաղ կօգ-
տագործի։ Ահա ինչու պարտիան չի կարող անկողմնակալ և անտարբեր մնալ
դեպի գրականության ու արվեստի զարգացումը, չի կարող իր գաղափարական
ազդեցությունը չգործել դրանց վրա։*



*Իհարկե, յուրաքանչյուր գործ ունի իր առանձնահատկությունը, մանա-
վանդ մի այնպիսի բարդ ու նուրբ գործ, ինչպես՝ գրականությունն ու արվես-
տը։ Ուստի և պարտիայի կողմից այստեղ կիրառվող ղեկավարության ձևերը
մշակվում են՝ այդ առանձնահատկությունը հաշվի առնելով։ Մեծ Լենինը
արվեստի ղեկավարության բնագավառում նա մշակել է այն հիմնական
սկզբունքները, որոնք անսասան են մնում առ այսօր։*

*Վլադիմիր Իլյիչը հաշվի էր առնում պրոբլեմի դիալեկտիկական ամբողջ
բարդությունը։ Մի կողմից, նա մատնանշում էր, որ գրական գործի նկատմամբ
անկիրառելի են մեխանիկական հավասարումը, համահարթումը, մեծամաս-
նության տիրապետությունը փոքրամասնության նկատմամբ, որ այստեղ ան-
հրաժեշտ է ապարեզ ապահովել անձնական նախաձեռնությանը, անհատական
հակումներին, ձևին և բովանդակությանը։ «Յուրաքանչյուր արվեստագետ,—
ընդգծում էր Լենինը,— յուրաքանչյուրը, ով իրեն այդպիսին է համարում,
իրավունք ունի ստեղծագործել ազատորեն, համաձայն իր իդեալի, ամեն բա-
նից անկախ»։ Մյուս կողմից, Լենինը պարզորոշ կերպով մատնանշել է, որ
գրականությունը և արվեստը առանձին արվեստագետների մասնավոր գործը
չէ, այլ պարտիական աշխատանքի կարևոր մասը, որ կոմունիստները «չպետք
է կանգնեն ձեռքները ծալած և թույլ տան, որ քաոսն ինչ ուղղությամբ ուզես
զարգանա», այլ «պետք է միանգամայն պլանաչափորեն ղեկավարեն այդ
պրոցեսը և ձևավորեն նրա արդյունքները»։*

*Լենինի այդ հիանալի դրույթների իմաստն այն է, որ սոցիալիստական
հասարակության մեջ արվեստագետը ոչնչով սահմանափակված չէ իր այն
ձգտման մեջ, որպեսզի իր ստեղծագործությամբ ծառայի ժողովրդին, պրոգրե-
սին, մի բան, որին և միայն կարող է ծառայել, որը և միայն իրեն համար
իդեալ կարող է ընտրել իսկական արվեստագետը։ Այդ ազնիվ ուղու վրա
սոցիալիստական հասարակությունը նրան լիակատար ասպարեզ է տալիս՝ իր
անհատական բոլոր անկրկնելի հնարավորությունները ստեղծագործաբար
դրսևորելու համար։ Ժողովուրդը, պարտիան շահագրգռված են գեղարվեստա-
կան բազմազանության մեջ, այն բանում, որ կարելույն չափ շատ լինեն ինք-
նատիպ գեղարվեստական հայտնագործումները, մեր իրականության մեջ եղած
թե՛ դրականի և թե՛ առաջընթաց շարժմանը խանգարող բացասականի յուրա-
հատուկ պատկերավոր արտացոլումները արվեստագետների կողմից։*

*Սովետական գրականության ու արվեստի ամբողջ պատմությունը հաստա-
տում է, թե պարտիան որքան հոգատար և զգայուն է վերաբերվել և
վերաբերվում է յուրաքանչյուր տաղանդավոր արվեստագետի, ստեղծագործա-
կան յուրաքանչյուր անհատականության և ստեղծագործական զանազան հո-
սանքներին։ Վերհիշենք Վ. Ի. Լենինի նամակները Մ. Գորկուն, Ա. Սերաֆի-
մովիչին, վերհիշենք Կենտկոմի 1925 թվականի «Գեղարվեստական գրակա-
նության բնագավառում պարտիայի վարելիք քաղաքականության մասին»
բանաձևը, որտեղ առանձնապես ընդգծվում էր, որ պարտիան կողմնակից է
տարբեր հոսանքների ազատ մրցմանը գեղարվեստական ձևի բնագավառում։
Չի կարելի չվերհիշել նաև այն, թե ինչպես ՌԱՊՊ-ի շրջանում պարտիան խա-
փանում էր որոշ եռանդուն ադմինիստրատորների ցանկությունը՝ գրականու-
թյան բնագավառում մահակ ճոճելու և ջարդելու իրենց համար անհաճո բոլոր
գրողներին։ Պարտիան համբերատար դաստիարակչական աշխատանք էր տա-
նում այն գրողների տաղանդավոր ջոկատի հետ, որոնց այն ժամանակ ան-*

digitised by A.R.A.R.@

վանում էին «ուղեկիցներ»։ Այդ աշխատանքը հիանալի արդյունքներ տվեց։ Ռևոլյուցիայի առաջին տարիներին այս կամ այն չափով տատանվող կամ կատարվող իրադարձությունների իմաստն ու նշանակությունը պարզորոշ չպատկերացնող գրողների հիմնական մասսան հաստատուն կերպով կանգնեց Սովետական իշխանության դիրքերում և իր տաղանդը նվիրեց ժողովրդին անձնվիրաբար ծառայելուն։

Դրա հետ մեկտեղ պարտիան չէր մնում գրականության ու արվեստի բնագավառում եղած այն տարբեր խմբերի և հոսանքների գործունեության պասիվ դիտողը, որոնք կանգնած էին մարքսիզմ-լենինիզմին խորթ էսթետիկական դիրքերում, վճռականորեն մերկացնում էր այդ փտած դիրքավորումները և նույնպիսի քննադատության կոչ էր անում նաև գրողների ամբողջ հասարակայնությանը։

Վերջերս տեղ-տեղ մամուլում ձայներ լսվեցին հօգուտ այն բանի, որ մենք վերանայենք մեր վերաբերմունքը քսանական թվականների այնպիսի խմբերի ու գրական հոսանքների նկատմամբ, ինչպիսիք են Պրոլետկուլտը, «Սերապիոնյան եղբայրները», «Պերեվալը» և այլն։ Որոշ ընկերներ հակված են համարելու, որ այդ և դրանց նման խմբերի ու հոսանքների գործունեությունը գրեթե եղել է այդ տարիների գրականության աշխույժ, բեղմնավոր զարգացման աղբյուրը։ Իհարկե, առանձին խմբերի բնութագրման մեջ գրականության քննադատներն ու պատմագիրները թույլ են տվել որոշ խոտորումներ, մեր գրականության նկատմամբ գիտակցորեն թշնամական գիծ տեսնելու ձգտում։ Մեծ մասամբ դա պետք է վճռականորեն դեն նետել։ Որպես կանոն, այդ խմբերի մեջ մտնող մարդիկ փորձում էին ազնվորեն իրենց հասկացողության չափ, ծառայել նոր, ռևոլյուցիոն գրականության ստեղծման գործին։ Բայց սուբյեկտիվ ձգտումները և օբյեկտիվ արդյունքը բնավ էլ միշտ չէ, որ համընկնում են։ Գիտական անաչառ վերլուծությունը ցույց է տալիս, որ այդ խմբերի էսթետիկական դիրքորոշումներն արգելակում էին նրանց մեջ մտնող և նրանց ազդեցությանը ենթարկված մի շարք գրողների զարգացումը։

Երբեմն ասում են, թե ահա, իբր, քննադատում են այսինչ խմբին, բայց տեսեք, թե դրանից որքան տաղանդավոր գրողներ են դուրս եկել, որոնք դարձել են սովետական գրականության պարծանքը... Ճիշտ է։ Նման օրինակներ կան։ Բայց արդյո՞ք դա տվյալ խմբի էսթետիկական դիրքավորումների ծառայությունն է։ Այդպիսի գրողների ստեղծագործության ուսումնասիրությունը — և այդ հաստատում են սովետական հետազոտողների մենագրական աշխատությունները — բացահայտում է, որ, հենց իրենց խմբերի այդ սխալ դիրքորոշումներից ազատվելով, սովետական հասարակայնության ձայնին ունկնդրելով, այդ տաղանդավոր գրողները դուրս էին գալիս սոցիալիստական ռեալիզմի լայն ճանապարհը, ստեղծում էին լավագույն երկեր։ Եվ այստեղ, անտարակույս, արտահայտվել է պարտիայի ղեկավար, դաստիարակչական դերը, զարգացող սոցիալիստական ամբողջ իրականության ներգործությունը։

Հենց սոցիալիստական գրականության ու արվեստի նորմալ զարգացմանը խանգարող օտար, խորթ երևույթներից ազատվելը, ժողովրդական ու կլասիկ արվեստի առողջ հողի վրա աճող իսկական նորին աջակցելն է եղել և մնում այն հիմնական գիծը, որ պարտիան կիրառել է գեղարվեստական ստեղծագործության բնագավառում։

Թշնամիները զրպարտում են, հավատացնելով, թե Սովետական Միու-



թյունում սահմանված է պարտիայի «խնամակալություն» գրականության և արվեստի նկատմամբ։ Բայց թշնամիները հենց նրա համար էլ թշնամիներ են, որպեսզի մեր դեմ օգտագործեն զենքի բոլոր տեսակները. ինչպես տեսնում ենք, նրանք չեն խորշում նաև կեղտոտ զրպարտությունից։ Իսկ իրականությունն այն է, որ գրականության ու արվեստի բնագավառի ղեկավարման լենինյան սկզբունքները հենց ուղղված են ամեն մի «խնամակալության» դեմ, գեղարվեստական ստեղծագործության պրոցեսին միջամտելու դեմ։

Հասկանալի է, որ անհատի պաշտամունքի հետևանքները չէին կարող չանդրադառնալ գրականության ու արվեստի վրա։ Ի. Վ. Ստալինի անձնավորության պաշտամունքի ժամանակաշրջանում կային թե՛ վարչարարության տարրեր, թե՛ չհիմնավորված խիստ քննադատություն և այլն։ Բայց մի՞թե դա էր հիմնականը, ինչպես ոմանք փորձում են պատկերացնել։ Խոտորումները խոտորումներ էին, սակայն այդ ժամանակաշրջանում էլ գրականության ու արվեստի ղեկավարման մեջ հիմնական ուղղությունը մարքսիստական-լենինյան սկզբունքների իրականացումն էր այդ բնագավառում։ Դա արտահայտված է գրականության ու արվեստի վերաբերյալ պարտիայի Կենտկոմի 1946—1948 թվականների հայտնի որոշումներում։

Որո՞նք էին այն հանգամանքները, որոնք Կենտկոմին կանգնեցրին այդ որոշումներն ընդունելու անհրաժեշտության առջև։ Բանն այն է, որ պատերազմում սովետական հերոս ժողովրդի տարած մեծ հաղթանակի իրադրության մեջ մեր կուլտուրայի գործիչների մի որոշ մասի մեջ երևան եկավ բարեհոգության տրամադրություն։ Պատերազմում մեր դաշնակիցների նկատմամբ եղած բարեկամական վերաբերմունքը սկսեց բթացնել նրանց անհաշտությունը դեպի բուրժուական իդեոլոգիան։ Առանձին դեպքերում դա տանում էր նույնիսկ դեպի ցայտուն արտահայտված ստորաքարշություն՝ բուրժուական բարքերի ու կուլտուրայի առջև։ Դրա հետ մեկտեղ պատերազմում կրած զրկանքների ու կորուստների ազդեցության տակ որոշ տարածում ստացան անկումային տենդենցները։ Այս բոլորն արտացոլվում էր գրականության, արվեստի ու գաղափարական ճակատի մյուս բնագավառներում և էական վնաս էր հասցնում մեր գաղափարախոսությանը։ Պարտիան պետք է լրջորեն ու վճռականորեն ուղղեր դրությունը։

Գրականության և արվեստի վերաբերյալ Կենտկոմի ընդունած որոշումները հսկայական դեր խաղացին սոցիալիստական ռեալիզմի ուղիով գեղարվեստական ստեղծագործության հետագա զարգացման գործում։ Կյանքը ցույց տվեց, որ կուլտուրայի ու գրականության գործիչների հիմնական մասսան ճիշտ և խոր ըմբռնեց այդ որոշումների իմաստն ու բովանդակությունը և իր ստեղծագործական պրակտիկայում ղեկավարվում է դրանցով։ Կենտկոմի որոշումների դեմ մեզ թշնամի լագերից կատարվող գրոհները, մեր որոշ ընկերների հակումը՝ այդ որոշումները ներկայացնելու որպես հնացած, նոր ժամանակաշրջանի պահանջներին չհամապատասխանող որոշումներ — այս ամենը հօդս է ցնդում անաչառ և օբյեկտիվ վերլուծության դեպքում։

Հիշեցնենք, թե որն է գլխավորն այդ որոշումների բովանդակության մեջ։

Ահա դրանցից առաջինը՝ ««Զվեզդա» և «Լենինգրադ» ամսագրերի մասին»։ Այդ որոշման մեջ ինչի՞ վրա էր ուշադրություն դարձվում։ Ամենից առաջ այդ գրական-գեղարվեստական ամսագրերն անբավարար վարելու վրա։ Որոշման մեջ մատնանշվում է, որ նշանակալից և հաջող երկերի հետ մեկտեղ ամսա-

digitised by A.R.A.R.@

գրերում տպագրվել են մի շարք գաղափարազուրկ և նույնիսկ գաղափարապես վնասակար երկեր։ Որոշումը ամսագրերի աշխատողներից պահանջում է բարձրացնել իրենց պատասխանատվությունը ժողովրդի առջև, պայքարել հրապարակվող նյութի գաղափարական անաղարտության և բարձր գեղարվեստականության համար։

Կենսագործելով ժողովրդի ավանգարդի այդ օրինական պահանջները, մեր գրական ամսագրերը քիչ հաջողություններ ձեռք չեն բերել։ Չէ՞ որ փաստ է, որ նկատելիորեն բարձրացել է նրանց մարտական ոգին, որ նրանք ձեռք են բերել գաղափարական ավելի մեծ խորություն ու նպատակասլացություն։ Հրապարակվել են բազմաթիվ երկեր, որոնք գոհունակությամբ են ընդունվել ընթերցողների լայն խավերի կողմից։ Առանձնապես բեղմնավոր աշխուժացում է սկսվել ամենավերջին տարիներս. սկսել են լույս տեսնել գրական-գեղարվեստական նոր սովար ամսագրեր, որոնք հաջողությամբ մրցում են հների հետ, դրանով իսկ նրանց ևս ստիպելով բարելավել աշխատանքը։ Ավելի ու ավելի բազմազան ու հարուստ են դառնում թեմատիկան ու ժանրերը, ավելի լայն է դառնում հեղինակների շրջանը։ Այժմ ընթերցողն ընտրելու բան ունի…

Այս ամենը ավելի մեծ պատասխանատվություն է դնում ամսագրերի խմբագրական կոլեգիաների ու խմբագրական ապարատի վրա, պահանջում է նրանցից բարձրացնել ոչ միայն նախաձեռնությունը, այլև սկզբունքայնությունը։ Սակայն կարելի՞ է արդյոք ասել, որ գաղափարապես կասկածելի երկերի հրապարակումը, որը տեղի է ունեցել 1946 թվականին, այժմ չի կրկնվում։ Ցավոք սրտի, այդ չի կարելի ասել։ Փաստերը ցույց են տալիս, որ պատասխանատվությունն ու սկզբունքայնությունը երբեմն պակասում է։ Առանձնապես այդ վերաբերում է «Նովի միր» ամսագրին։ Մեր հասարակայնությունը դեռևս սովետական գրողների Համամիութենական II համագումարից առաջ քննադատում էր «Նովի միր»-ին լուրջ սխալների համար։ Խմբագրությունն ի՞նչ հետևություններ է արել այդ քննադատությունից։ Մեծ թվով հետաքրքիր, խնկապես ճշմարտացի և սուր գրվածքների հետ մեկտեղ, ինչպիսիք են Օվեչկինի և Տրոեպոլսկու ակնարկները, Տենդրյակովի վիպակները և այլն, «Նովի միր»-ը տպագրել է նաև այնպիսի գրվածքներ, որոնք ճիշտ չեն արտացոլում մեր կյանքը, օրինակ՝ Դուդինցևի «Не хлебом единим» վեպը, Գրանինի «Собственное мнение» պատմվածքը, Կիրսանովի «Семь дней недели» պոեման։ Այս բոլոր երկերը իրավացիորեն քննադատվեցին գրողների ժողովներում և մամուլում։

Ամսագրի խմբագրությունը չօգնեց երիտասարդ գրող Վ. Դուդինցևին գիտակցելու իր գրվածքի սխալ տենդենցները և շտապեց հրապարակել կեղծ ընդհանրացումներ պարունակող, սովետական իրականության մասին խեղաթյուրված պատկերացում տվող վեպը։ Հիմքեր չկան տարակուսելու, որ վեպի հեղինակը մեկնել է ազնիվ մղումներից, ձգտելով նշավակել մեր պետական ապարատում եղած բյուրոկրատիզմն ու նրա կրողներին։ Բայց նա, տարվելով մերկացման պաթոսով, կորցրել է հեռանկարը, ընկել է խուճապի մեջ, չափազանցրել է վտանգը, մեր պայմաններում բյուրոկրատիզմը պատկերացնելով ըստ էության որպես մի անանցանելի պատնեշ, իսկ ապարատի, նաև գիտության աշխատողներին գրեթե ամբողջապես ցույց է տվել որպես վերասերվածներ։ Պարտիայի ղեկավարությամբ բյուրոկրատիզմը խարանող սովետական մարդկանց կենդանի և հզոր ուժի փոխարեն, վեպում բյուրոկրատիզմին



հակադրված են միայն ազնիվ միայնակները, որոնք իրենց ազնվության համար անվերջ զրկանքներ ու տառապանքներ են կրում։ Վեպը կոչ չի անում լենինաբար պայքարել չարիքի դեմ, այլ սերմանում է վհատություն, առաջ է բերում անարխիստական վերաբերմունք դեպի պետական ապարատը։

Այդ կապակցությամբ չի կարելի չվերհիշել Վ. Ի. Լենինի արած հիանալի պարզաբանումը։ Հայտնի է, թե ինչպես անողոք էր Վլադիմիր Իլյիչը բյուրոկրատիզմի բոլոր տեսակի արտահայտությունների նկատմամբ։ Բայց նա խստորեն հանդես էր գալիս նաև անարխիստական այն հարձակումների դեմ, որ բյուրոկրատիզմի դեմ պայքարելու դրոշի ներքո կատարվում էին ապարատի վրա։ Մ. Սոկոլովին ուղղված Վ. Ի. Լենինի նամակում ասված է. «Դուք գրում եք. «Մասսաների ինքնագործունեությունը հնարավոր է միայն այն ժամանակ, երբ մենք երկրի երեսից կջնջենք այն թարախապալարը, որը կոչվում է բյուրոկրատական գլավկներ և կենտրոններ»։ Եվ այնուհետև Լենինը մատնանշում է. «Դեն գցել» այդ կարգի թարախապալարը չի կարելի։ Այն կարելի է միայն բուժել։ Վիրահատությունն այս դեպքում աբսուրդ է, անհնարինություն. միայն դանդաղ բուժում — մնացած բոլորը շառլատանություն է կամ միամտություն… «Գլավկները» «դե՞ն գցել»։ Դատարկ բաներ են։ Ի՞նչ կդնեք դուք նրանց տեղը։ Դուք այդ չգիտեք։ Ոչ թե դեն գցել, այլ զտել, բուժել, բուժել և զտել տասը և հարյուր անգամ։ Եվ չընկճվել հոգով» (Երկեր, հատոր 35, էջ 530—531)։

Եթե Դուդինցևն ու «Նովի միր»-ի խմբագրությունն այդպիսի տեսանկյունով մոտենային վեպում դրված պրոբլեմին, նրանք կարող էին օգտակար գործ կատարել։ Բայց այժմ հեղինակն ու ամսագիրն առաջ են բերել սուր և արդարացի քննադատություն իրենց հասցեին։

Խոր ափսոսանքի է արժանի նաև Գրանինի պատմվածքի հրապարակումը «Նովի միր»-ում։ Երիտասարդ գրող Գրանինը լայն հռչակ և սովետական ընթերցողի համակրանքն է նվաճել իր «Искатели» տաղանդավոր վեպով։ Ամսագրի խմբագրությունը պետք է խնայեր գրողի բարի համբավը և նրա ուշադրությունը սրեր այն կեղծ տենդենցի դեմ, որը պարզ կերպով զգացվում է «Собственное мнение» պատմվածքում, այն է՝ հարմարվողականության զզվելի փիլիսոփայությունը ներկայացնել որպես մեր կյանքի պայմանների ծնունդ։ Մինաևի — պատմվածքի գործող անձի — տիպի հարմարվողներն իրականության մեջ քիչ չեն։ Անհրաժեշտ է նրանց մերկացնել։ Բայց հարկավոր է ճիշտ բացատրել այդ տիպի ծագումը։

«Նովի միր»-ի օրինակը ցույց է տալիս, որ Կենտկոմի՝ ««Զվեզդա» և «Լենինգրադ» ամսագրերի մասին» որոշումն իր այն մասում, որն ուղղված է գաղափարապես սնանկ, վնասակար գրվածքների հրապարակման դեմ, դեռևս թույլ է կատարվում, և ոչ բոլոր ամսագրերի կողմից։

Վերցնենք Կենտկոմի «Դրամատիկական թատրոնների ռեպերտուարի և նրա բարելավման միջոցառումների մասին» որոշումը։ Ինչպիսի՞ երևույթների ու փաստերի դեմ է ուղղված այդ որոշումը։ Որոշման մեջ արձանագրվում է դրամատիկական թատրոնների ռեպերտուարի անբավարար վիճակն այն ժամանակաշրջանում (1946 թ.), դատապարտվում է այն բացահայտորեն աննորմալ դրությունը, երբ ժամանակակից թեմաներով գրված սովետական հեղինակների պիեսները դուրս էին մղվում երկրի խոշորագույն դրամատիկական թատրոնների ռեպերտուարից։ Այդ հաստատելու համար բերվում են համո-

digitised by A.R.A.R.@

*ղեցուցիչ թվեր։ Այդ գլխավոր թերությունը, ընդգծում է որոշումը, խորանում է նրանով, որ «անգամ թատրոնների բեմադրած ժամանակակից թեմաներով պիեսների մեջ կան թույլ, գաղափարազուրկ պիեսներ»։ Այնուհետև նշված է, որ թատրոնների ռեպերտուարում լայն տարածում են գտել արտասահմանյան ցածրորակ ու գռեհիկ, բացահայտորեն բուրժուական հայացքներ ու բարոյականություն քարոզող դրամատուրգիայի նմուշներ։*

*Փոխվե՞լ է արդյոք դրությունը այդ ժամանակից ի վեր։ Այո՛, և շատ է փոխվել։ Թատրոնները հսկայական բեղմնավոր աշխատանք են կատարել Կենտկոմի որոշումների պարունակած ցուցումների լույսի տակ։ Առանձնապես ուրախություն է պատճառում այն, որ ռեպերտուարում զգալիորեն շատացել են սովետական հեղինակների պիեսները։ ՌՍՖՍՌ 102 դրամատիկական թատրոններում անցյալ տարի խաղացվել են 502 պիեսներ, դրանցից 243-ը սովետական հեղինակների պիեսներ են։ Այդ թատրոնների տված 40 հազար ներկայացումից ավելի քան կեսը կազմում են սովետական հեղինակների պիեսների բեմադրությունները։ Վերջին տարիների թատերական կյանքում նկատելի երևույթ էր քսան-երեսունական թվականների մի շարք պիեսների երկրորդ ծնունդը, որոնք դարձել են սովետական դրամատուրգիական կլասիկ երկեր (Տրենևի «Լյուբով Յարովայա»-ն, Բիլլ-Բելոցերկովսկու «Փոթորիկ»-ը, Լավրենևի «Բեկում»-ը, Մայակովսկու «Փայտոջիլ»-ը և «Բաղնիք»-ը, Վիշնևսկու «Օպտիմիստական տրագեդիա»-ն և այլն)։ Աշխուժացման նշաններն արտահայտվում են նաև նրանով, որ թատրոնների ռեպերտուարը ավելի ու ավելի բազմազան է դառնում։ Վերջին ժամանակներս թատրոնների աշխատանքի վրա դրական ազդեցություն է գործում նրանց նկատմամբ Կուլտուրայի մինիստրության օրգանների խնամակալության վերացումը, թատրոնների ղեկավարների իրավունքների ընդլայնումը, գեղարվեստական խորհուրդների ընտրովիությունը և ստեղծագործական կոլեկտիվների նախաձեռնությունը զարգացնելու նպատակին ուղղված մյուս միջոցառումները։ Ինքնուրույնությունը բարձրացնում է նաև պատասխանատվության զգացմունքը։ Այս պայմաններում դրամատիկական թատրոնների ռեպերտուարի վերաբերյալ Կենտկոմի որոշումը ավելի մեծ նշանակություն է ձեռք բերում։ Պատահական չէ, որ այժմ թե՛ թատրոնի գործիչները և թե՛ թատերական քննադատությունն ավելի ու ավելի հաճախ են դիմում նրան։*

*Բայց արդյո՞ք թատրոններն ամբողջովին հաղթահարել են այն թերությունները, որոնք նշված են Կենտկոմի որոշման մեջ։ Հայտնի է, որ թատրոններում ռեպերտուարի տեսակետից դրությունը մինչև վերջերս մնում էր դժվարին, քանի որ լուրջ խառնաշփոթություն էր թույլ տրվել թատերական գործի թեորիայում և պրակտիկայում։ Անկոնֆլիկտայնության թեորիան և նրա ուղեկիցը՝ գունազարդումը մեծ վնաս հասցրին սովետական դրամատուրգիային։ Թատրոնների մի մասը, որն զբաղվում էր թեթև, գունազարդված պիեսների բեմադրությամբ, սկսեց կորցնել հանդիսականներին. նրանց շարքերը մի ժամանակ սկսեցին նկատելիորեն նոսրանալ...*

*Հաճախ, սենսացիոն հետևությունների որոշ սիրահարներ փորձում են դա հայտարարել ոչ ավելի ոչ պակաս, քան այն պայքարի հետևանք, որ թատրոնները մղում են... ռեպերտուարի գաղափարականության համար։ Նույնքան տարօրինակ, որքան և սնանկ մի հետևություն, որը հիմնված է փաստերի խեղաթյուրման վրա։ Ճիշտ է, այդ հետևությունն ինքնատիպու-*



*թյամբ չի փայլում։ Մեր հակառակորդները սոցիալիստական ռեալիզմի դեմ մղած իրենց գրոհներում այդ ռեալիզմի «ապարդյունությունը» ապացուցելու համար սովորաբար վերցնում են սովետական գրողների, արվեստագետների ամենաթույլ, մակերեսային, գունազարդված երկերը և դրանցով աչքակապություն անում։ Բայց դա չի համոզում այն մարդկանց, ովքեր ծանոթ են սոցիալիստական ռեալիզմի իսկական նվաճումներին։ Ճիշտ այդպես էլ սակավարժեք, գունազարդված պիեսների հեղեղը «գաղափարականության համար պայքարելու», և ոչ թե կոնյուկտուրային հարմարվողականության արդյունք հայտարարելու փորձը կարող է շատ քչերին համոզել։*

*Արվեստի կոմունիստական բարձր գաղափարականությունը, դեպի որը կոչ է անում պարտիան, ոչ մի ընդհանուր բան չունի անկոնֆլիկտայնության և գունազարդման հետ, այլ, ընդհակառակը, ենթադրում է իրականության խորապես ճշմարտացի արտացոլում, առանց մեր շինարարության դժվարությունները սվաղելու, բայց և առանց այդ դժվարությունների հանդեպ խուճապի ենթարկվելու։ Եվ մի՞թե այդպիսի իսկական գաղափարականությունը հատուկ չէ սովետական գրականության, թատերական արվեստի, նկարչության, երաժշտության լավագույն ստեղծագործություններին, որոնք վայելում են սովետական մարդկանց մշտական սերը։ Բավական է վերհիշել Գորկու պիեսների, Տրենևի, Վիշնևսկու, Պոգոդինի և շատ ուրիշների լավագույն պիեսների հսկայական հաջողությունը։ Հետևապես, հանդիսականի հետ մի շարք թատրոնների կապերի թուլացումը բացատրվում է ոչ թե գաղափարականության համար նրանց մղած պայքարով, այլ ավելի շուտ բառի բուն նշանակությամբ այդ պայքարի բացակայությամբ։ Փորձը ցույց է տալիս, որ այն թատրոնները, որոնք ուժեղացնում են կապը դրամատուրգների հետ, ձգտում են ժամանակակից թեմաների լուծմանը հասնել գաղափարական-գեղարվեստական բարձր մակարդակի վրա, ունեն օրինական հաջողություններ։*

*Իսկ այն դեպքերում, երբ պատասխանատվության զգացմունքը կորչում է, վերակենդանանում են այն ծանոթ տենդենցները, որոնք հայտնի են դրամատիկական թատրոնների ռեպերտուարի վերաբերյալ Կենտկոմի որոշումից։ Այդ կարգի օրինակներ մեր մամուլը շատ է բերել։*

*Բարձր գաղափարական ռեպերտուարի համար պայքարելու փոխարեն, սովետական և արտասահմանյան պրոգրեսիվ դրամատուրգների լավագույն պիեսները պրոպագանդելու փոխարեն թատրոնների որոշ գործիչներ ձգտում են հանդիսականների ուշադրությունը գրավել բուրժուական հեղինակների անամեջ, ցածրորակ պիեսներով, չտեսնելով այն, որ նրանք, ըստ էության, պրոպագանդում են բուրժուական բարոյականությունն ու իդեոլոգիան։ Սովետական բեմում այսպես երևան եկան Բարրիի* «То, что знает каждая женщина», *Նոտտի* «Телефонный звонок», *Քրիստիի* «Свидетель обвинения» *և ուրիշները։*

*Ինչպես տեսնում ենք, այն վտանգը, որի դեմ ուղղված է դրամատիկական թատրոնների ռեպերտուարի վերաբերյալ որոշումը, այսօր էլ չի անհետացել։ Չի վերացված նաև որոշման մեջ նշված մի այնպիսի լուրջ թերություն, ինչպես ժամանակակից թեմայով սովետական հեղինակների գրած պիեսներից շատերի գաղափարական թուլությունը, թեմաների և պրոբլեմների աննշանությունը։ Այդ մասին ակնառու կերպով վկայում են, մասնավորապես, հեղինակային իրավունքների պաշտպանության Համամիութենական վարչու-*

digitised by A.R.A.R.@

*թյան Դրամատիկական երկերի տարածման բաժնի «Ինֆորմացիոն ցուցակները», որոնք լի են դրամա հիշեցնող չնչին գործերով:*

*Քննադատությունը նշել է, որ ցուցակներում չկան ծավալուն պիես-էպոպեաներ, այլ գերակշռում են ընտանեկան փոխհարաբերությունների, սիրո և ամուսնության վերաբերյալ պիեսները: Բայց դժբախտությունն այդ չէ: Բացի դրանից, ծավալը բնավ չի բացառում, այլ ավելի շուտ ենթադրում է նաև այդ հարցերի լուծումը: Մեզ հարկավոր են նաև պիեսներ ընտանեկան հարաբերությունների, սիրո և ամուսնության մասին. սովետական հանդիսականները միանգամայն օրինական ջերմ հետաքրքրություն են ցուցաբերում այդ պրոբլեմների նկատմամբ, մի հետաքրքրություն, որը, ըստ էության, դեռ չի բավարարված: Ամբողջ բանն այն է, թե ինչպես են լուծվում այդ պրոբլեմները, գաղափարական-գեղարվեստական ի՞նչ մակարդակի վրա: Համաշխարհային և մանավանդ ռուսական կլասիկան այդ տեսակետից քիչ փայլուն օրինակներ չի տվել: Չխոսելով արդեն մի այնպիսի «ընտանեկան» վեպի մասին, ինչպիսին Լ. Տոլստոյի «Աննա Կարենինա»-ն է, բավական է վերհիշել, որ Ա. Օստրովսկու պիեսների մեծ մասը նվիրված է ընտանեկան փոխհարաբերություններին, սիրո և ամուսնության պրոբլեմներին: Բայց այդ նյութի հիման վրա որքա՜ն խոր է բացահայտված այդ դարաշրջանի սոցիալական փոխհարաբերությունների էությունը: Այլ կերպ էլ չպետք է լինի, որովհետև ընտանեկան փոխհարաբերությունները միևնույն ժամանակ նաև սոցիալական փոխհարաբերություններ են, անխզելիորեն կապված են դրանց հետ: Ահա այդ կապի խոր ըմբռնումն ու արտացոլումն էլ չկա հեղինակային իրավունքների պաշտպանության Համամիութենական վարչության Դրամատիկական երկերի տարածման բաժնի առաջարկած պիեսներում: Կենսական իրադրությունների բարդությունն ու հակասականությունը նրանց մեջ ամենից հաճախ հանգում են թեթև, պիեսից-պիես չվող շտամպի: Ամենատարածվածներից մեկն այս է. արդեն կազմավորված ընտանիքի համար սպառնալիք է ծագում «չար» կնոջ կողմից, բայց պիեսի վերջում ամեն ինչ «կարգավորվում» է, արատը անարգվում է, առաքինությունը հաղթանակում է: Նման խղճուկ պիեսները, որոնցում կենսական լուրջ պրոբլեմների դրումը նենգափոխվում է արհեստավորական չնչին բարոյախոսությամբ, արվեստի դաստիարակչական ֆունկցիան չեն իրականացնում, այլ միայն գռեհկացնում են այն: Պետք է վճռականորեն պայքարել այդ արտադրանքի դեմ, ինչպես և բուրժուական բարոյականություն քարոզող թարգմանական պիեսների դեմ:*

*«Մեծ կյանք» կինոֆիլմի և Վ. Մուրադելու «Մեծ բարեկամություն» օպերայի վերաբերյալ Կենտկոմի որոշումները քննադատում են կինոյի և օպերային արվեստի բնագավառում եղած առանձին անհաջող ստեղծագործությունները: Բայց այդ առանձին ստեղծագործությունների օրինակով բացահայտված են, ինչպես և առաջին երկու որոշումներում, այնպիսի տենդենցներ, որոնք հատուկ էին մի ամբողջ շարք երկերի, հասցնում էին և այժմ էլ կարող են որոշ վնաս հասցնել մեր արվեստին, եթե դադարեցնենք դրանց դեմ մղվող պայքարը:*

*Առանձնապես կարևոր է Կենտկոմի 1946—1948 թվականների որոշումների ոչ այնքան կոնկրետ, որքան ընդհանուր ծրագրային նշանակությունը: Դրանք խիստ նշանակալից ավանդ են մարքսիստական-լենինյան էսթետիկայի բնագավառում, զարգացնում են նրա հիմնական դրույթները: Կանգ առնենք այդ դրույթներից մի քանիսի վրա:*



*Կենտկոմի հետպատերազմյան որոշումներն ամենից առաջ նոր պայմաններում շարունակում և զարգացնում են լենինյան «Պարտիական կազմակերպությունը և պարտիական գրականությունը» հոդվածը և պարտիայի հաջորդ փաստաթղթերի հիմնական գիծը՝ պայքարը հանուն գրականության ու արվեստի ճշմարտացիության, կոմունիստական բարձր գաղափարականության և ժողովրդայնության: Այդ սկզբունքները սոցիալիստական ռեալիզմի գեղարվեստական մեթոդի համար եղել և անսասան են մնում, անկախ այն բանից, թե դա կարող է որևէ մեկին դուր չգալ: ««Զվեզդա» և «Լենինգրադ» ամսագրերի մասին» որոշման մեջ ասված է՝ սովետական գրականության ուժն այն է, որ նա չունի և չի կարող ունենալ այլ շահեր, բացի ժողովրդի շահերից, պետության շահերից: Այս բառերում `արտահայտված է ոչ միայն գրողների, այլև սովետական բոլոր արվեստագետների ստեղծագործական նպատակադրումների էությունը: Պարտիան գրականության և արվեստի գաղափարական ու գեղարվեստական մակարդակի բարձրացման մեջ է տեսնում ժողովրդի, մանավանդ երիտասարդության վրա դրանց դաստիարակչական ներգործության հիմնական պայմանը:*

*Իր որոշումներում պարտիայի Կենտկոմը գրողներին, դրամատուրգներին և սցենարիստներին, ինչպես և արվեստի բոլոր գործիչներին կոչ արեց սեռուն կերպով ուսումնասիրել կյանքը, ժողովրդի պահանջմունքները, ուսումնասիրել արդիականության արմատական հարցերը: Ընդգծվեց կարևորագույն խնդիրը՝ ստեղծել վառ, գեղարվեստական տեսակետից լիարժեք երկեր սովետական հասարակության կյանքի մասին, պատկերել այդ կյանքը իր անընդհատ առաջընթաց շարժման մեջ, ամեն կերպ նպաստել սովետական մարդու բնավորության լավագույն կողմերի հետագա զարգացմանը:*

*Գրականությանն ու արվեստին կոչ է արվում ակտիվորեն մասնակցել սովետական մարդկանց դաստիարակմանը, բավարարել նրանց օրավուր աճող կուլտուրական բարձր պահանջները: Հատկապես ուշադրություն է դարձված երիտասարդության հարցի վրա, սովետական երիտասարդությանն այնպես դաստիարակելու անհրաժեշտության վրա, որ նա լինի կայտառ, կենսուրախ, Հայրենիքին նվիրված և հավատա մեր գործի հաղթանակին, չվախենա խոչընդոտներից, ընդունակ լինի հաղթահարելու ամեն մի դժվարություն: Հայտնի է, որ մեր երիտասարդության հենց այդ հատկություններն են, որ նրան հնարավորություն են տալիս կատարելու այնպիսի սխրագործություններ, ինչպիսիք են խոպանի հերկումը, Սիբիրի և Հեռավոր Արևելքի շրջանների յուրացումը և շատ ուրիշ գործեր: Կենտկոմի որոշումներում գրականությանն ու արվեստին առաջադրված հարցերն ընդգծվել են նաև պարտիայի հետագա փաստաթղթերում՝ սովետական գրողների Համամիութենական II համագումարին ՍՄԿՊ Կենտկոմի ուղարկած ողջույնում և պարտիայի XX համագումարին ՍՄԿՊ Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ: Հարկավո՞ր է արդյոք ապացուցել, թե որքան անհրաժեշտ են դրանք այժմ գրականության ու արվեստի զարգացման համար:*

*Կենտկոմի որոշումներում դրական ծրագիրը զուգակցվում է այն բանի հետ, որ դրանք անհաշտելիորեն ուղղված են արվեստի ապոլիտիկության, նրա մեջ հոռետեսության և անկումայնության ներթափանցման դեմ, «ար-*

digitised by A.R.A.R.@

*վեստը արվեստի համար» բուրժուական փտած, կեղծ լոզունգի դեմ, սնամեջ, անբովանդակ, գաղափարազուրկ և գռեհիկ գործերը մամուլում հրապարակելու և բեմադրելու դեմ, բուրժուական մոդայի հանդեպ ստորաքարշություն անելու, դեկադենտականության և էսթետայնության դեմ, այն ամենի դեմ, որ հակագեղարվեստական է, պրիմիտիվ, փնթի, անգրագետ։*

*Պետք է նշել, որ նման թերությունները շտկելու, մեր արվեստի գաղափարական-գեղարվեստական մակարդակը բարձրացնելու համար սովետական արվեստագետների մղած պայքարը տվել է իր դրական արդյունքները։ Կարելի է վստահությամբ խոսել գեղարվեստական ստեղծագործության բնագավառում ձեռք բերված նոր հաջողությունների մասին։ Ճիշտ է, մեր գրականության ու արվեստի ընդհանուր մակարդակը դեռևս ետ է մնում ժողովրդի պահանջներից։ XX համագումարում պարտիան ուշադրություն դարձրեց այն բանի վրա, որ արվեստագետ ինտելիգենցիայի կապը կյանքի հետ անբավարար է, կոչ անելով ուժեղացնել այդ կապը, և խնդիր դրեց սովետական գրականությունն ու արվեստը ոչ միայն բովանդակության հարստության, այլև գեղարվեստական ուժի և վարպետության տեսակետից դարձնել աշխարհում ամենաառաջավորը։ Սակայն այդ օրինական պահանջների հետ ոչ մի ընդհանուր բան չունի այն ջղային փնթփնթոցը, որ սովետական արվեստի ու գրականության հասցեին հաճախ լսվում է քաղքենիական, երբեմն էլ նաև թշնամական տարրերից մեր երկրում և նրա սահմաններից դուրս։ Մի՞թե ավելի բազմազան, ավելի սուր, ավելի ցայտուն չի դարձել, օրինակ, մեր պոեզիան։ Գրողների կազմակերպությունների անցկացրած «պոեզիայի օրերն» ակնառու կերպով ցույց տվեցին, թե որքան մասսայական, հետաքրքրվող, բարյացակամ է նրա ընթերցողը, թե այդ ընթերցողը ավագ սերնդի հայտնի բանաստեղծների հետ մեկտեղ որքան ջերմորեն է սիրում նաև շատ երիտասարդ բանաստեղծների, որոնց գործերը վերջերս են սկսել տպագրվել։*

*Այդ կարելի է վերագրել նաև արձակին, որտեղ արդեն բարձր հնչել են շատ նոր, թարմ ձայներ։ Իսկ դրանց հետ միասին հրապարակ են գալիս այնպիսի ցնցող երկեր, ինչպես Մ. Շոլոխովի «Մարդու ճակատագիրը» նոր պատմվածքը, աղբյուրի թարմությամբ բերկրանք են պատճառում Կ. Ֆեդինի նոր վեպի հատվածները։ Հրապարակ են եկել պատմա-ռևոլյուցիոն թեմայով գրված մի շարք հետաքրքրական վիպակներ, որոնք դաստիարակչական մեծ նշանակություն ունեն երիտասարդության համար (Վ. Կոժևնիկովի* «Заре на встречу» *և ուրիշներ)։*

*Այս ամենը հաստատում է, որ մեր գրականության և արվեստի հաջողությունները ձեռք են բերվում հենց այն ուղիով, որ ցույց է տալիս պարտիան, որովհետև դա ժողովրդին ազնվորեն ծառայելու ուղին է։ Միայն աշխարհայացքի խորությունը, գաղափարական հստակությունը, ժողովրդին իր մեծ ստեղծագործության մեջ օգնելու, սրտի ամբողջ հուրը նրան նվիրաբերելու համառ և անձնվեր ձգտումը իսկական տաղանդավոր արվեստագետին հնարավորություն են տալիս առաջ ընթանալ ու բարձրանալ, իսկապես դառնալ իր դարաշրջանի ձայնը։*

*Այդ բանը գնալով ավելի խոր են գիտակցում մեր գրականության և արվեստի գործիչները, որոնք մտքով ու սրտով ընդունում են պարտիայի քաղաքականությունը։*

*Բայց ասել, թե պարտիայի մեթոդոլոգիական կարևորագույն ցուցումները*



*պատշաճ չափով կատարվում են, առայժմ դեռ չի կարելի։ Դրանցից մի քանիսը երբեմն նույնիսկ սխալ են մեկնաբանվում։ Օրինակ, Կենտկոմի որոշումներում դատապարտվում է այն, որ սովետական մարդիկ պատկերվում են այլանդակ ծաղրանկարային ձևով, որպես պրիմիտիվ, նվազ կուլտուրական, քաղքենիական ճաշակներով ու բարքերով, այնտեղ նշված է, որ մի շարք երկերում բացասական հերոսներն ավելի ցայտուն են պատկերված, քան դրական հերոսները, նկարագրվող իրադարձությունները հաճախ մտացածին են, իսկ դա սխալ, աղճատված պատկերացում է ստեղծում սովետական կյանքի մասին։*

*Որոշ ընկերներ հակված են կարծելու, թե այս ամենը իբր թե արվեստագետներին դրդում էր գունազարդելու մեր իրականությունը, արդարացնում էր անկոնֆլիկտայնությունը, պատվիրում էր պատկերել միայն դրականը և այլն։ Հարկավոր է վճռականորեն դեն նետել նման հերյուրանքները։ Որոշումների ուշադիր, լրջմիտ ընթերցումը ցույց է տալիս, որ դրանք գունազարդելու առիթ չեն տվել։ Այլ բան է, թե իրենց ինչպես պահեցին թեթևամիտ և կոնյունկտուրային մարդիկ։ Նրանք իրոք վճռեցին, թե հարկավոր է ամեն ինչ ներկել վարդագույն։ Այդ բանը, ցավոք սրտի, հաճախ խրախուսում էր նաև մեր մամուլը, մեր քննադատությունը, ինչպես և նրանք, որոնց կարելի է անվանել արվեստի չինովնիկներ,— մարդիկ, որոնք խոր չէին ըմբռնել պարտիայի ցուցումները և երբեմն պարտադրում էին դրանց վերաբերյալ իրենց խղճուկ պատկերացումը։ Բայց պարտիան ամենայն խստությամբ հանդես եկավ գունազարդման դեմ։*

*Պարտիան վճռականորեն մատնանշեց մեր կյանքում եղած լուրջ թերությունները, որոնք զգալի չափով ծնունդ են առել անհատի պաշտամունքից, ինչպես և այն բանից, որ մենք առաջինն ենք հարթում կոմունիստական հասարակության կառուցման ուղիները և, բնականաբար, թույլ ենք տալիս որոշ սխալներ։ Իսկ ի՞նչ են անում կոնյունկտուրային մարդիկ։ Նույնիսկ մի քանիսն այն մարդկանցից, ովքեր ամեն ինչ վարդագույն էին նկարագրում, շտապ «վերափոխվեցին», սև ներկեր ձեռք բերեցին և սկսեցին համատարած թերություններ նկարագրել։ Կարելի՞ է արդյոք մի ծայրահեղությունից դեպի մյուսը կատարվող այդպիսի ցատկումը համարել պարտիայի քաղաքականության ճիշտ ըմբռնման հետևանք։*

*Հատկանշական է, որ կյանքը և նրա զարգացման տենդենցները խոր կերպով տեսնող գրողներն այդպիսի ցատկում թույլ չեն տալիս։ Մենք արդեն հիշատակել ենք Վ. Օվեչկինի ակնարկները, Վ. Տենդրյակովի որոշ երկերը, որոնցում դրվում են սուր հարցեր, բայց հեռանկարը չի կորչում։ Այդպիսի երկերը գնալով ավելի շատ են դառնում։ Դրանց շարքը կարելի է դասել, օրինակ, Ա. Չակովսկու* «Год жизни» *վիպակը, Մ. Սվետլովի* «С новим счастьем» *դրամատիկական պոեմը, որոնք հրապարակված են «Օկտյաբր» ամսագրում, և մի շա՛րք այլ երկեր, որտեղ ո՛չ վարդագույն գունազարդում կա, ո՛չ կուպր, այլ այս կամ այն աստիճանի վարպետությամբ արտացոլված է մեր կյանքի ճշմարտությունը։*

*Այդ կապակցությամբ չի կարելի չասել նաև մեր երգիծաբանության խնդիրների ըմբռնման գործում եղած որոշ խառնաշփոթության մասին։ Ոմանք սխալ են մեկնաբանում պարտիայի այն կոչը, թե պետք է մեր երգիծաբանության խարազանող ուժը բարձրացնել գոգոլյան և շչեդրինյան երգիծաբանության*



digitised by A.R.A.R.@

*մակարդակին։ Ընդսմին մոռացվում է, որ Գոգոլի երգիծաբանությունը և մանավանդ Սալտիկով-Շչեդրինի երգիծաբանությունն ուղղված էր այն ժամանակ գոյություն ունեցող կարգի հիմքերը խարխլելու նպատակին։ Բայց այդպիսի մոռացումը հասցնում է ոչ թե այն բանին, որ մեծ երգիծաբաններից սովորում են, այլ այն բանին, որ նրանց ստրկամտորեն պատճենահանում են, նրանց պրիոմները և նույնիսկ սյուժեները մեխանիկորեն տարածում են մեր իրականության վրա, որը դրանով իսկ անխուսափելիորեն աղճատվում է։ Մեր երգիծաբանության նպատակն է՝ անողոքաբար ծաղրել այն ամենը, որ խանգարում է ժողովրդի շարժմանը դեպի կոմունիզմ, այսինքն՝ սովետական կարգն* ամրապնդել *թերությունները քննադատելու միջոցով։ Ահա ինչ է հարկավոր որոշակիորեն պատկերացնել՝ սովորելով անցյալի մեծ երգիծաբաններից։*

*Պետք է կանգ առնել նաև «Վ. Մուրադելու «Մեծ բարեկամություն» օպերայի մասին» որոշման ծրագրային նշանակության վրա։ Ո՞րն է այդ որոշման հիմնական իմաստը։ Ամենից առաջ այն, որ հարկավոր է պայքարել երաժշտության մեջ եղած ֆորմալիզմի դեմ։ Որոշումը դատապարտեց երաժշտության վերածումը աններդաշնակության, հնչյունների քաոսային կուտակման, հանդես եկավ ընդդեմ նորարարության հանուն նորարարության արդի բուրժուական մոդեռնիստական երաժշտության ոգով, այսինքն՝ այն ամենի դեմ, ինչը որ իջեցնում է երաժշտության հասարակական բարձր դերը, նեղացնում է նրա նշանակությունը մինչև էսթետացող անհատապաշտների խեղաթյուրված ճաշակների բավարարումը, դեպի մեկուսացում երաժշտական քաղցրամոլների նեղ շրջանում։ Որոշումը մերժեց անկումային, ֆորմալիստական երաժշտության կողմնակիցների փորձերը՝ այդ ուղղության երկերը ներկայացնել որպես սովետական երաժշտության նոր նվաճումներ, իսկ դրանց նկատմամբ ժողովրդի բացասական արձագանքը բացատրել աղայաբար, թե իբր «ժողովուրդը չի հասունացել», «կհասկանան հարյուրամյակներ հետո»։*

*Որոշման մեջ պարտիան ամենայն վճռականությամբ հանդես եկավ երաժշտության մեջ ռեալիստական* **ուղղության օգտին**, *որի հիմքերն են հանդիսանում կլասիկ ժառանգության, հատկապես ռուսական երաժշտական դպրոցի տրադիցիաների հսկայական պրոգրեսիվ դերի ընդունումը, երաժշտության մեջ բարձր բովանդակության և երաժշտական ձևի գեղարվեստական կատարելության զուգակցումը, ճշմարտացիությունը, խոր, օրգանական կապը ժողովրդի և նրա երաժշտական ստեղծագործության հետ, պրոֆեսիոնալ բարձր վարպետությունը և միաժամանակ երաժշտական երկերի պարզությունն ու մատչելիությունը։*

*Կոմպոզիտորներից որևէ մեկը, եթե նույնիսկ անձամբ վիրավորված է որոշումից, բայց վիրավորանքից կուրացած չէ, հազիվ թե կարող է վիճարկել այդպիսի դրույթների բեղմնավորությունը։ Հետագա տարիները սովետական երաժշտությանը հաջողություններ են բերել հենց այդ ուղու վրա։ Հրապարակ են եկել ժողովրդի կողմից հավանությամբ ընդունված նոր օպերաներ ու սիմֆոնիկ երկեր, թեև այդ բարդ ժանրերը դեռևս ետ են մնում երաժշտության ընդհանուր զարգացումից։ Միաժամանակ չի կարելի աչք փակել և այն բանի հանդեպ, որ երաժշտության մեջ եղած վատառողջ, մեզ խորթ տենդենցները, որոնց դեմ է ուղղված որոշումը, իրենց զգացնել են տալիս նաև այսօր։*

*Այդ կապակցությամբ անհրաժեշտ է կրկին և կրկին անգամ հիշեցնել*



*այն ուղղությունը, որ Կենտկոմի «Վ. Մուրադելու «Մեծ բարեկամություն» օպերայի մասին» որոշման և մյուս որոշումների մեջ տրվել է մեր երաժշտական, թատերական և գրական քննադատությանը։ Նա, այդ քննադատությունը, ամենից առաջ պետք է լինի սկզբունքային, արվեստի և գրականության երևույթները գնահատի պարտիականության դիրքերից, ժողովրդի շահերի տեսակետից, և ոչ թե որևէ այլ, խմբային կամ խնամիական դիրքերից, մի բան, որ դեռ պատահում է պրակտիկայում։*

*Այսպիսով, գրականության և արվեստի վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի* 1946—1948 *թվականների որոշումները իրենց հիմնական բովանդակությամբ այժմ էլ պահպանում են իրենց ակտուալ նշանակությունը։ Բայց մարքսիզմ-լենինիզմը պահանջում է կոնկրետ-պատմական մոտեցում ամեն մի երևույթի, այդ թվում նաև պարտիական զանազան փաստաթղթերի նկատմամբ, որոնք ընդունված են պատմական որոշ իրադրության մեջ։ Ամենակոպիտ դոգմատիզմ, տիրացություն կլիներ այդ որոշումների յուրաքանչյուր տառը կիրառել նոր իրադրության, նոր պայմանների նկատմամբ։*

*Ինչպես և ամեն մի փաստաթուղթ, այդ որոշումներն իրենց վրա կրում են ժամանակի կնիքը։ Նրանց որոշ դրույթներ հնացել են, որոշ դրույթներ կարիք ունեն ճշտման մեր գրականության և արվեստի առջև ծառացած նոր խնդիրների լույսի տակ։*

*Մենք արդեն չենք խոսում այն ժամանակվա համար կոնկրետ բնույթ կրող այնպիսի մանրամասնությունների մասին, ինչպես մի որոշ անձի որոշ պաշտոնի նշանակելն է և այլն։ Խոսքը վերաբերում է ավելի կարևորին։ Օրինակ, ««Մեծ կյանք» կինոֆիլմի մասին» որոշման մեջ անբավարար օբյեկտիվությամբ է բնութագրված Իվան Գրոզնու պատմական դերը, նրա որոշ իդեալականացում է թույլ տրված։ «Վ. Մուրադելու «Մեծ բարեկամություն» օպերայի մասին» որոշման մեջ ճիշտ չեն բնութագրվում ինգուշներն ու չեչենները։ Այս բոլորը կապված էր անհատի պաշտամունքի հայտնի երևույթների հետ։ Հենց դրանով է բացատրվում նաև տոնի որոշ, երբեմն չարդարացված խստությունն այն հատվածներում, որտեղ խոսքը վերաբերում է գրականության և արվեստի առանձին գործիչներին։ Օրինակ, Վ. Մուրադելու օպերայի վերաբերյալ որոշման մեջ սովետական մի շարք ականավոր կոմպոզիտորներ, որոնք թույլ են տվել այս կամ այն սխալները, հիշատակված են մի այնպիսի կոնտեքստում, թե իբր նրանց ստեղծագործության մեջ լիակատար արտահայտություն է գտել ֆորմալիստական ուղղությունը երաժշտության մեջ, որի պատճառով այդ ստեղծագործությունը հակադեմոկրատական և խորթ է սովետական ժողովրդին։ Գնահատականի այդպիսի միակողմանիությունը օգտակար չէր, և, ըստ էության, ազդեցություն չունեցավ այդ կոմպոզիտորների նկատմամբ պարտիայի և ժողովրդի վերաբերմունքի վրա։ Հայտնի է, օրինակ, որ պարտիայի Կենտկոմը խափանել է Դ. Շոստակովիչի երաժշտության կատարումը սահմանափակելու ուղղությամբ կատարված փորձերը. նրա աչքի ընկնող երկերը, ինչպես նաև Ս. Պրոկոֆևի, Ա. Խաչատրյանի, Վ. Շեբալինի և մյուս կոմպոզիտորների երկերը ամենալայն ժողովրդականություն են վայելում։ Ինչ վերաբերում է ««Զվեզդա» և «Լենինգրադ» ամսագրերի մասին» որոշման մեջ արտացոլված այն վարչական միջոցառումներին, ինչպիսին Զոշչենկոյի, Ախմատովայի և «նրանց նմանների» երկերի տպագրումն արգելելն էր, ապա ինքը կյանքը շատ շուտով վերացրեց այդ*

digitised by A.R.A.R.@

*միջոցառումները։ Կյանքը վերացրեց այդ որոշման դարձյալ մի դրույթ, որտեղ ասվում է, թե ամսագրերում անհրաժեշտ է ունենալ գլխավոր խմբագիր «և նրան կից խմբագրական կոլեգիա»։ Իրականում այդ դրույթը չի կիրառվել։ Մեր ամսագրերում խմբագրական կոլեգիաները ոչ թե գլխավոր խմբագրին կից խորհրդակցական կցորդներ են, այլ կոլեգիալ օրգաններ, որոնք որոշումներ են ընդունում և լիակատար պատասխանատվություն են կրում դրանց համար։*

*Ինչպես տեսնում ենք, որոշումներում կան որոշ անճշտություններ կամ այնպիսի դրույթներ, որոնք չեն համապատասխանում այսօրվա խնդիրներին։ Բայց բանը դրանցում չէ և դրանք չեն, որ, ինչպես մենք ցույց ենք տվել, բնութագրում են այդ փաստաթղթերի հիմնական բովանդակությունը, որոնք այժմ էլ հանդիսանում են ծրագրային փաստաթղթեր։*

*Սակայն հենց այս անճշտություններին էլ կառչում են որոշ մարդիկ, որպեսզի դրանց վրա շեշտելով, միաժամանակ սևացնեն այն ամենը, ինչ դրական է, կասկածի տակ առնեն փաստաթղթերը՝ ամբողջությամբ առած։ Եվ բնորոշ է, որ այդպիսի մարդիկ ստիպված են կառչել միայն մասնավորություններին, որովհետև հիմնական սկզբունքների դեմ փաստեր չկան և չեն կարող լինել։ Կամա թե ակամա նրանք սկսում են ձայնակցել բուրժուական պրոպագանդային, որը վաղուց արդեն կատաղի գրոհներ է մղում գրականության և արվեստի բնագավառում մեր պարտիայի վարած քաղաքականության դեմ։ Ի դեպ, նրանք, ըստ էության, իրենց նույնպես դնում են դոգմատիկների դրության մեջ, թեև այնպես են ձևացնում, թե պայքարում են դոգմատիզմի դեմ։ Առաջին հայացքից դա կարող է պարադոքսային թվալ․ չէ որ դոգմատիզմը բնութագրվում է գլխավորապես նրանով, որ ընդհանուր դրույթները կիրառում է առանց կոնկրետ-պատմական իրադրությունը և այլ առանձնահատկություններ հաշվի առնելու։ Այո։ Բայց ընդհանուրը բնութագրելու համար հնացած մասնավորություններին կառչելու ձգտումը ևս դոգմատիզմի և տիրացության դրսևորումներից մեկն է։*

*Նման մարդիկ ասում են՝ տեսեք, ահա թե ինչպիսի ոչ-ճշգրիտ և հնացած դրույթներ կան այդ որոշումներում, նշանակում է՝ դրանք ոչ-ճշգրիտ և նույնիսկ սխալ որոշումներ են։ Ո՛չ, այդպես չէ։ Որովհետև, կրկնում ենք, կոնկրետ-պատմական իրադրության հետ կապված և անցյալի գիրկն անցած մասնավորություններով չէ, որ նրանք բնութագրվում են։ Պետք է տեսնել, թե այդ որոշումներն ինչի են կոչում, ինչի դեմ և ի՞նչ նպատակի են ուղղված։ Պետք է ստեղծագործորեն կենսագործել լենինյան այն անսասան դրույթներն ու սկզբունքները, որ նրանք պարունակում են։ Նեղ-դոգմատիկ մոտեցումն ընդհանրապես վնասակար է ամեն մի փաստաթղթի գնահատման գործում, քանի որ անխուսափելիորեն տանում է դեպի անճիշտ, միակողմանի հետևություններ։*

*Վերցնենք, օրինակ, լենինյան «Պարտիական կազմակերպությունը և պարտիական գրականությունը» հոդվածի մեկնաբանությունը։ Մինչև այժմ էլ գտնվում են մարդիկ, որոնք միակողմանիորեն են մոտենում դրան, նրա բովանդակությունը հանգեցնելով այն ժամանակաշրջանի ներպարտիական պայքարի սոսկ արտացոլմանը, երբ հրապարակ եկավ այդ հոդվածը, նրա մեջ որոնում են գլխավորապես «կարգապահական իմաստ»։ Իսկ պայքարը արվեստի մեջ բուրժուական-դեկադենտական երևույթների դեմ, «մաքուր արվեստի» բուրժուական լոզունգի, գեղարվեստական ստեղծագործության անարխիստորեն ըմբռնվող «ազատությունների» դեմ և այլն այստեղ որպես թե գործ չունի։ Վերջերս այդպիսի սխալ տեսակետ է համառորեն պաշտպանում ընկ. Ստրոչկովը (տես* «Вопросы истории» *ամսագրի 1956 թվականի № 4-ը և 1957 թվականի հունվարի 10-ի* «Литературная газета»*-ն)։ Ոչ ոք մտադիր չէ վիճարկելու այն ճիշտ դրույթը, որ Վ. Ի. Լենինի հոդվածը կապված է այն ժամանակաշրջանի ներպարտիական կոնկրետ պայքարի հետ, երբ այդ հոդվածը գրվել է։ Բայց ընկ. Ստրոչկովը, ըստ երևույթին, չի հասկանում, թե որքան վտանգավոր է ամբողջ գործը հանգեցնել միայն դրան։ Նրան սիրով կպաշտպանեն նրանք, ովքեր հանդես են գալիս գրականության և արվեստի բնագավառում պարտիականության սկզբունքի դեմ, ովքեր հայտարարում են, թե պարտիականությունը միայն նրանց գործն է, ովքեր մտնում են պարտիայի մեջ։ Հազիվ թե այդ է ցանկանում մեր հեղինակը։*



*Լենինյան «Պարտիական կազմակերպությունը և պարտիական գրականությունը» հոդվածը, որը մենք համարում ենք ծրագրային, արդեն իր երևան գալու շրջանում ուներ ոչ միայն կոնկրետ ներպարտիական, այլև ավելի լայն նշանակություն։ Պատահական չէ, որ նրա վրա իսկույն ևեթ հարձակվեցին «մաքուր արվեստի» պաշտպանները, որոնք ոչ մի առնչություն չունեին պարտիայի հետ։ Զտեսնել այդ՝ նշանակում է արհեստականորեն սահմանափակել հոդվածի մարտական բնույթը ինչպես այն դարաշրջանի, այնպես էլ հատկապես մեր ժամանակի համար։ Որովհետև, եթե բանը միայն այն ժամանակվա ներպարտիական պայքարն է, ապա ի՞նչ պրակտիկ նշանակություն կարող է ունենալ հոդվածը այսօր։*

*Մենք բերեցինք այն «մոդայական» ձգտման օրինակը, թե պետք է ինչ ուզում է լինի վերանայել այն ամենը, ինչ որ մի քանի տարի առաջ տարակույս չէր հարուցում։ Մինչդեռ լենինյան այդ հոդվածի նման փաստաթղթերի ամեն տեսակ կամայական մեկնաբանությունները կարող են խառնաշփոթություն մտցնել գրականության և արվեստի ակտուալ հարցերի լուծման գործում։*

*Բանը չի սահմանափակվում նրանով, որ փորձեր են արվում կասկածի տակ առնելու գրականության և արվեստի հարցերի վերաբերյալ պարտիայի մի քանի կարևոր որոշումները։ Ոմանք փորձում են ավելի առաջ գնալ և կասկածի տակ առնել գրականության և արվեստի զարգացման ղեկավարման բուն իսկ սկզբունքը։ Եվ այստեղ կիրառվում է նույն մեթոդը՝ ավելի ցցուն են դարձվում այն հաստատությունների թույլ տված սխալները, որոնց միջոցով իրականացվում է ղեկավարությունը․ վարչարարության և բծախնդիր խնամակալության օրինակները, որ առանձնապես բնորոշ են անհատի պաշտամունքի տարածման ժամանակաշրջանի համար, ուռցվում և վերածվում են այնպիսի օրինաչափության, որն իբր թե անխուսափելի է ղեկավարության առկայության դեպքում։*

*Այդ առումով, բացի Նազարովի և Գրիդնևայի հոդվածից, որը քննադատվել է մեր մամուլում, հատկանշական է Ա. Կրոնի հոդվածը՝ հրապարակված* «Литературная Москва» *ժողովածվում։ Այս հոդվածը իրենց պարտիական ժողովում արդարացի քննադատության ենթարկեցին Մոսկվայի գրողները։ Իսկապես, Կրոնը այնպես է խտացրել գույները և այնպիսի տպավորություն է ստեղծել, թե իբր դրամատուրգի վիճակը մեզ մոտ ուղղակի անելանելի*

digitised by A.R.A.R.@

*է, թե ամեն մի նոր պիեսի դարանակալում է թշնամիների՝ զանազան
ինստանցիաների, խմբագիրների մի բազմություն, որոնք մտածում են միայն
այն մասին, թե ինչպես խեղդեն այն ամենը, ինչ կենդանի է և տաղանդա-
վոր։ Հոդվածի հեղինակը այնպես է իրեն վախեցրել իր իսկ գունազարդած
սարսափներով, որ չի մտածել մի այսպիսի հասարակ հարցի մասին՝ հապա
ինչպես նման պայմաններում հանդիսականներին հասան նրա սեփական տա-
ղանդավոր. պիեսները և իր կոլեգաների պիեսները։*

*Թվարկելով այն դժբախտությունները, որոնք իբր անպայման սպասում
են դրամատուրգին նրա «փշոտ ճանապարհին», Կրոնը գրում է. «Դրանից հարկ
չկա անել այն հետևությունը, թե արվեստին առհասարակ չպետք է ուղղություն
տալ»։ Բայց հոդվածի ամբողջ պաթոսն այնպես է, որ ըստ էության կասկածի
տակ է դնում նաև արվեստի գործը ղեկավարելու հիմունքները։ Սխալ կլիներ
պնդել, թե գրականության և արվեստի ղեկավարման գործում մեզ մոտ ամեն
ինչ արդեն բարեհաջող է, թե այդ բնագավառում վերացված են անհատի
պաշտամունքի բոլոր հետևանքները, բծախնդիր խնամակալությունը և վարչա-
րարությունը։ Թերությունները դեռ քիչ չեն և դրանք պետք է քննադատել։
Պետք է մասնավորապես ունկնդրել նաև այն կոնկրետ արդարացի դիտողու-
թյուններին, որ վերաբերում են թատերական հաստատություններում դեռևս
գոյություն ունեցող բյուրոկրատական արգելքներին, որոնք մատնանշված են
Կրոնի հոդվածում։ Բայց պետք է քննադատել թերություններն ուղղելու նպա-
տակով և ոչ թե հախուռն կերպով վարաբանել ամեն բան և ամեն ինչ, ոչ մի
պատասխանատվություն չզգալով սեփական եզրակացությունների համար,
տարվելով սենսացիոնությամբ։*

*Անհատի պաշտամունքի հետևանքները ուղղելու ընթացքում այժմ լիկվի-
դացվում է գրականության և արվեստի ղեկավարության բնագավառում եղած
բծախնդիր խնամակալության ամեն մի դրսևորում։ Շատ բան արդեն արված
է։ Վերը խոսվեց այն մասին, որ թատերական գործում այժմ ստեղծագործա-
կան նախաձեռնությունը ծավալված է։ Նույնն էլ պետք է ասել հրատա-
րակչությունների աշխատանքի մասին, որոնք այժմ իրենք են որոշում թե՛
ցանկացած թեմայով գեղարվեստական գրքի հրատարակության հարցերը,
թե՛ ամսագրերում հրապարակված երկերի վերահրատարակման հարցերը և
այլն։ Իսկ վերջին մեկ-երկու տարվա ընթացքում ինչպե՞ս է ընդլայնվել գրա-
կան-գեղարվեստական ամսագրերի ցանցը։ Միջոցներ են ձեռնարկվում նաև
գեղարվեստական գրականության լույս ընծայող հրատարակչությունների,
երաժշտական և այլ հրատարակչությունների քանակը ավելացնելու համար։*

*Բայց ամենակարևորն այն է, որ այժմ նոր բարձրության վրա է դրված
ստեղծագործական միությունների նշանակությունը։ Գրողների, նկարիչների,
կոմպոզիտորների միությունները կոչված են դառնալու պարտիական գծի խ-
կական կիրառողները գրականության և արվեստի բնագավառում, գաղափարա-
կան անաղարտության և գեղարվեստական բարձր վարպետության համար
մարտնչողներ։ Ամեն ոք, ով ուշադրությամբ հետևում է այդ կազմակերպու-
թյունների աշխատանքին, չի կարող նրանց մեջ չնկատել լուրջ աշխուժացում։
Ստեղծագործական միությունները սկսում են ավելի ակտիվորեն լուծել սովե-
տական գրականության և արվեստի հարցերը, իրենք իրենց ուժերով հակա-
հարված են տալիս նրանց, ովքեր թույլ են տալիս տատանումներ և ձգում
դեպի սխալ ուղղություն։ Միությունները աճել են, կոփվել, նրանք ունեն հսւ-*



*սալի ուժեր, որոնք ընդունակ են ճիշտ կողմնորոշվել ամեն մի բարդ իրա-
դրության մեջ։ Պարտիան ամեն կերպ խրախուսում է ստեղծագործական
կազմակերպությունների ինքնագործունեությունը, որովհետև միայն այդ ուղիով
է հնարավոր գեղարվեստական ստեղծագործության նոր վերելքը մեր երկրում։*

*Պարտիայի հոգատարությունը հետապնդում է այն նպատակը, որպեսզի
գրականության և արվեստի գործիչները ավելի խոր կերպով տիրապետեն
մարքսիստական-լենինյան աշխարհայացքին, ավելի ևս ուժեղացնեն իրենց
կապը կյանքի հետ, կատարելագործեն իրենց վարպետությունը, է՛լ ավելի
զարգացնեն իրենց գեղարվեստական մեթոդը՝ սոցիալիստական ռեալիզմը։
Հենց այդ բանին է կոչ անում պարտիան գրականության և արվեստի գործիչ-
ներին սովետական գրողների Համամիութենական II համագումարին ՍՄԿՊ
ԿԿ-ի ուղարկած ողջույնում և ՍՄԿՊ-ի XX համագումարին Կենտկոմի տված
հաշվետու զեկուցման մեջ։*

*Ստեղծագործական միությունները դեռևս թույլ են արձագանքում այդ կո-
չերին։ Օրինակ, արվեստագետ ինտելիգենցիայի ժողովներում պարտիայի XX
համագումարի արդյունքների քննարկումը երբեմն կրում էր միակողմանի
բնույթ, առանց բավականաչափ շեշտելու դրական խնդիրները, որոնք պետք
է լուծել։ Ստեղծագործական միությունների աշխատանքում առաջվա նման
ամենալուրջ թերությունը գեղարվեստական ստեղծագործության հրատապ
պրոբլեմների վերաբերյալ սուր դիսկուսիաների բացակայությունն է։ Այս գոր-
ծում սակավ ակտիվություն են ցուցաբերում խոշոր գրողները և արվեստի գոր-
ծիչները, որոնք կարող են լուրջ զարկ տալ էսթետիկական մտքին, ինչպես որ
մի ժամանակ այդ անում էին Մ. Գորկին և Կ. Ստանիսլավսկին։ Իսկ առանց
ստեղծագործական պրոբլեմների քննարկման, առանց կարծիքների բախման,
առանց սուր վեճերի չի կարող լինել նաև բեղմնավոր առաջընթաց շարժում,
սոցիալիստական ռեալիզմի գեղարվեստական մեթոդի հարստացում։*

*Ստեղծագործական միություններում ինքնագործունեության բազմակող-
մանի զարգացումը պահանջում է կազմակերպության աշխատանքի համար
նրա յուրաքանչյուր անդամի կենդանի շահագրգռվածությունն ու պատասխա-
նատվության զգացմունքը։ Ցավոք սրտի, դեռևս չի վերացված ստեղծագոր-
ծական միությունների որոշ անդամների պասսիվությունը, ըստ «ինձ չի վերա-
բերում» սկզբունքի գլուխ պահելը, այն սպասումը, թե ուրիշ մեկը կպարզա-
բանի և կանի այն ամենը, ինչ անհրաժեշտ է։ Այսպիսի պասսիվությունը
նպաստում է ամեն տեսակ դեմագոգներին, որոնք երբեմն փորձում են
տոն տալ։*

*Ստեղծագործական միություններում դեռևս անբավարար է զարգացած
այն սկզբունքը, որը համառորեն մատնացույց է անում պարտիան,— ընկերա-
կան քննադատության և պարզաբանման սկզբունքը։ Գրականության ու ար-
վեստի գործիչներն իրավացիորեն բողոքում են ստեղծագործական կազմակեր-
պությունների աշխատանքը վերահսկող հաստատությունների կողմից թույլ
տրվող վարչարարության և բղավոցի դեմ, բայց իրենց միջավայրում միմյանց
նկատմամբ այդ բղավոցը չեն վերացրել։*

*Ստեղծագործական միությունների աշխատանքի ակտիվացման կարևո-
րագույն խթանը կոլեգիալության ուժեղացումն է բոլոր օղակներում։ Ցավոք
սրտի, մինչև այժմ կոլեգիալությունը պատշաճ բարձրության վրա չի գտնվում
թե՛ միությունների ղեկավար օրգաններում և թե՛ մանավանդ ամսագրերում,*

digitised by A.R.A.R.@

որտեղ խմբագրական կոլեգիաների շատ անդամներ փաստորեն աշխույժ մասնակցություն չեն ցույց տալիս աշխատանքին, տպագրության համար նախատեսված երկերի քննարկմանը, և բոլոր հարցերը լուծում է աշխատողների մի սահմանափակ շրջան։

Ստեղծագործական կազմակերպություններում ինքնագործունեությունը զարգացնելու վերաբերյալ պարտիայի գիծը համբերատարությամբ ու համառորեն պետք է կիրառեն տեղերի պարտիական օրգանները։ Պետք է ասել, որ ոչ բոլոր ռեսպուբլիկաներում ու մարզերում ստեղծագործական կազմակերպությունները անհրաժեշտ ուշադրություն են վայելում։ Որոշ մարզկոմներ և կոմպարտիաների կենտկոմներ ընդհանրապես քիչ են հետաքրքրվում իրենց ստեղծագործական կազմակերպությունների կյանքով և միայն ինչ-որ արտակարգ իրադարձության կապակցությամբ հանկարծ «գլխի են ընկնում», որոշում են ընդունում, և սկսվում է սխալներ թույլ տվողների «մշակումը»։ Նման մեթոդներից պետք է վճռականորեն հրաժարվել։ Պարտիական աշխատողները պետք է ավելի շատ շփվեն գրականության և արվեստի գործիչների հետ, նրանց պարզաբանեն պարտիայի ու կառավարության քաղաքականությունը էկոնոմիկայի և կուլտուրայի տարբեր բնագավառներում, ավելի շատ պատմեն իրենց ռեսպուբլիկաների ու մարզերի կյանքի մասին, օգնեն նրանց պրակտիկորեն կապվելու արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների հետ՝ կյանքը խոր կերպով և ոչ թե գասաբոլային կարգով ուսումնասիրելու համար։

Ներկայումս տեղի է ունենում սովետական նկարիչների և կոմպոզիտորների համագումարների եռանդուն նախապատրաստություն։ Պետք է ենթադրել, որ սովետական ինտելիգենցիայի այնպիսի նշանակալից ջոկատներ, ինչպես նկարիչներն ու կոմպոզիտորներն են, իրենց համագումարներից գեղարվեստական ստեղծագործության նոր վերելքի խթան կստանան։

Սովետական գրականության և արվեստի գործիչներն ամբողջ ժողովրդի հետ միասին կատարում են պատմական մեծ միսիա—ստեղծում են նոր հասարակարգ՝ կոմունիզմ, որի մասին անցյալում միայն կարող էին երազել մարդկության լավագույն մտածողները։ Այդ կարգի կարևորագույն առանձնահատկություններից մեկը կուլտուրայի չտեսնված ծաղկումն է, որի կառուցման գործում իր անգնահատելի ավանդն է մտցնում մեր արվեստագետ ինտելիգենցիան։

Սովետական Միության փառապանծ Կոմունիստական պարտիան առաջիկայում էլ ամեն կերպ կաջակցի այդ խնդրի լուծման հաջողությանը, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հզոր լուսարձակով լուսավորելով առաջընթացի ուղին։ Սովետական արվեստագետները պարտիայի մեջ տեսնում են ժողովրդի իմաստուն ավանդարդին. Վ. Մայակովսկու վառ խոսքերով արտահայտված՝ «դասակարգի ուղեղը, դասակարգի գործը, դասակարգի ուժը, դասակարգի փառքը — ահա թե ինչ է պարտիան»։

«КОММУНИСТ», № 3, 1957 թ.

---

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԵՎ Ս. Գ. ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ՆԱՄԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՔՎԻ ԿՈՄՈՒՆԱՅԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ

Բաքվի Կոմունան Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ծնունդն է, միջազգային իմպերիալիզմի և ներքին կոնտրռևոլյուցիոն ուժերի դեմ Բաքվի պրոլետարիատի մղած հերոսական պայքարի պատմության պանծալի էջերից մեկը։

Բաքվի Կոմունայի պատմության գիտական լուսաբանության գործում կարևոր նշանակություն ունի Վ. Ի. Լենինի և Ս. Գ. Շահումյանի 1918 թվականի նամակագրության ուսումնասիրությունը։ Կոմունայի օրերին, ինչպես և իր ռևոլյուցիոն ամբողջ գործունեության ընթացքում, Ս. Գ. Շահումյանը Վ. Ի. Լենինին գրել է մեծ թվով նամակներ, հեռագրեր, որոնց մի մասը նոր է միայն հայտաբերվել և օգտագործվում է ներկա հոդվածում։ Այդ փաստաթղթերը վկայում են պրոլետարական ռևոլյուցիայի մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի այն խոշոր դերի մասին, որ կատարել է նա Կոմունայի գործունեության և Անդրկովկասում սովետական կարգերի հաղթանակի ապահովման գործում ու նոր լույս են սփռում Ս. Գ. Շահումյանի կյանքի վերջին շրջանի ռևոլյուցիոն գործունեության վրա։

***

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, որի 40-ամյակը լրանում է այս տարվա նոյեմբերի 7-ին, նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ։

Անդրկովկասի աշխատավորները ջերմորեն արձագանքեցին Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիային։ Բանվորների և Զինվորների դեպուտատների Բաքվի Սովետը, որի նախագահն էր Ս. Գ. Շահումյանը, ռևոլյուցիայի հաղթանակից անմիջապես հետո պատրաստակամություն հայտնեց ամեն կերպ աջակցելու Ռուսաստանի Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկային։ 1917 թվականի նոյեմբերի 4-ի (17) Բաքվի Սովետի ընդունած կոչում այդ առթիվ ասված է. «Բոլորը, ովքեր ցանկանում են ժողովրդի բարօրության, խաղաղության և կարգի ամենաշուտ հաստատում տանջված ու խոշտանգված երկրում, պետք է անհապաղ և վճռականորեն կանգնեն Լենինի գլխավորած Ժողովրդական Կոմիսարների նոր կառավարության կողմը...

Կեցցե՛ Պետերբուրգի ռևոլյուցիոն պրոլետարիատը և կայազորը։
Կեցցե՛ ռևոլյուցիոն կառավարությունը Լենինի գլխավորությամբ։
Կեցցե՛ սովետների իշխանությունը»։

Государственная БИБЛИОТЕКА СССР им. В. И. Ленина

digitised by A.R.A.R.@

Բայց այդ շրջանում Բաքվի Սովետում մեծամասնություն էին կազմում էսեռա-մենշևիկյան նացիոնալիստական պարտիաները։ Անդրկովկասում իշխանությունը գտնվում էր բուրժուա-կալվածատիրական պարտիաների ձեռքում։ Անդրկովկասյան կոմիսարիատը և ապա Սեյմը երկրամասը կտրելով Ռուսաստանից, իրենց հակաժողովրդական քաղաքականությամբ ամրապնդում էին բուրժուազիայի, ազնվականության ու խաների տիրապետությունը։ Նրանք դանակ էին խրում ռևոլյուցիայի թիկունքը, խեղդում մինչև իսկ փետրվարյան ռևոլյուցիայի շնորհիվ ձեռք բերած չնչին ազատությունները։

1917 թվականի դեկտեմբերի 16-ին Սովետական Ռուսաստանի ժողկոմսովետը Վ. Ի. Լենինի նախագահությամբ քննարկում է Կովկասում ստեղծված դրությունը և որոշում Ս. Գ. Շահումյանին նշանակել Կովկասի Գործերի ժամանակավոր Արտակարգ Կոմիսար։ Անդրկովկասում ստեղծված բարդ իրադրության պայմաններում Ս. Գ. Շահումյանը Բաքվից մեկնում է Թիֆլիս, որտեղ ռևոլյուցիայի անվեհեր մարտիկ Կամոն նրան է հասցնում Շահումյանին Կովկասի Գործերի Ժամանակավոր Արտակարգ Կոմիսար նշանակելու մասին վկայականը, լենինյան դիրեկտիվները և այն դրամը, որ հատկացվել էր Կովկասում ռևոլյուցիոն աշխատանք ծավալելու համար։

Անդրկովկասի բոլշևիկները, զինված մեծ Լենինի ցուցումներով, Ս. Գ. Շահումյանի ղեկավարությամբ եռանդուն կերպով պայքար են մղում հանուն երկրամասում սովետական կարգերի հաստատման։

1918 թվականի հունվարի 31-ին Թիֆլիսում լույս է տեսնում «Кавказский Вестник Совета Народных Комиссаров» թերթի առաջին համարը՝ Կովկասի Գործերի ժամանակավոր Արտակարգ Կոմիսար Շահումյանի դիրեկտիվներով։ Թերթում հրատարակված էր «Բանվորների, Զինվորների և Գյուղացիների դեպուտատների բոլոր Սովետներին, Կովկասի բոլոր բանվորներին ու գյուղացիներին» խորագրով կոչը, որի մեջ Ս. Գ. Շահումյանը մարքսիստլենինյանին հատուկ խորությամբ վերլուծում էր Կովկասում ստեղծված դրությունը, մերկացնում սոցիալիզմի դիմակի տակ թաքնված կոնտրռևոլյուցիոներներին, խնդիր առաջադրելով Կովկասում անհապաղ ստեղծել սովետական իշխանություն։ «Կովկասը կանգնած է անդունդի եզրին,— ասում էր Շահումյանը։— Փրկեցե՛ք նրան։ Ստեղծեցե՛ք այստեղ ինտերնացիոնալ Բանվորա-Գյուղացիական կառավարություն, որը Ռուսաստանի սովետական կենտրոնների ու Ժողովրդական Կոմիսարների Սովետի հետ սերտ միասնություն ստեղծելով՝ վերջ կդնի Կովկասի կոնտրռևոլյուցիային և երկրի բանվոր ու գյուղացի բնակչությանը կառաջնորդի դեպի լուսավոր ապագան, դեպի սոցիալիզմի թագավորությունը»։

Ս. Գ. Շահումյանն իր շուրջն է համախմբում Անդրկովկասի ականավոր բոլշևիկներին, ուժեղացնում կապը տեղական պարտիական կազմակերպությունների հետ, ուղղություն տալիս բոլշևիկյան կազմակերպությունների ողջ գործունեությանը։

1918 թվականի սկզբներից է՛լ ավելի ուժեղացավ Ս. Գ. Շահումյանի նամակագրական կապը Վ. Ի. Լենինի հետ։ Իրենց նամակներում և հեռագրերում Վ. Ի. Լենինը և Ս. Գ. Շահումյանը քննարկում էին սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի և սովետական շինարարության բազմապիսի հարցեր։ Իլյիչը 1917 թվականին ուրախ էր տեսնվելու Շահումյանի հետ,— իր հիշողություններում պատմում է Ն. Կրուպսկայան,— խոսելու ընդհուպ այն բոլոր



խնդիրների մասին, որոնք այնպես հատու կերպով ծառացել էին բոլշևիկների առաջ։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախօրյակին նրանք այդպիսի ջերմ հանդիպումներ ունեցել էին, բայց 1918 թվականին հնարավորություն չունենալով անձամբ հանդիպելու Վ. Ի. Լենինին, Շահումյանը նրա հետ խորհրդակցում էր նամակագրության միջոցով։ Ռուսաստանի համար ստեղծված ծանր պայմաններում անգամ Վ. Ի. Լենինը քայլ առ քայլ հետևում էր Կովկասի բոլշևիկների գործունեությանը, քաջալերում նրանց, օգնում միջազգային բարդ իրադրության մեջ ճիշտ կողմնորոշվելու, ճիշտ քաղաքականություն վարելու։ Հավանություն տալով Շահումյանի եռանդուն գործունեությանը, որպես Կովկասի Գործերի Ժամանակավոր Արտակարգ Կոմիսարի, ողջունելով նրա ռևոլյուցիոն ակտիվ պայքարը, Վ. Ի. Լենինը 1918 թվականի փետրվարի 14-ին գրել է.

«Թանկագին ընկեր Շահումյան։

Շատ շնորհակալ եմ նամակի համար։ Մենք հրճվանքի մեջ ենք ձեր հաստատակամ և վճռական քաղաքականությունից։ Կարողացեք դրան միացնել այն ամենազգույշ դիվանագիտությունը, որն անպայման թելադրվում է այժմյան դժվարագույն դրությամբ,— և մենք կհաղթենք։

Դժվարություններն անհաշիվ են։ Առայժմ մեզ փրկում են միայն իմպերիալիստների հակասությունները, կոնֆլիկտներն ու պայքարը։ Կարողացեք օգտագործել այդ կոնֆլիկտները. առայժմ հարկավոր է դիվանագիտություն սովորել։

Լավագույն ողջույններ ու ցանկություններ և ողջույն բոլոր բարեկամներին։

Վ. Ուլյանով (Լենին)»[1]

Վ. Ի. Լենինի նամակը է՛լ ավելի ոգեշնչեց Բաքվի և Անդրկովկասի բոլշևիկներին։ Փետրվարի վերջերին Ս. Գ. Շահումյանը կովկասյան ռազմաճակատից մեկնող զորքերի հետ էշալոնով ժամանում է Բաքու և այնտեղ նոր ուժով ծավալում պայքարը սովետական կարգերի հաղթանակի համար։ Այդ նույն ժամանակ Բաքու է փոխադրվում կովկասյան բանակի երկրորդ համագումարում ընտրված Ռազմա-Ռևոլյուցիոն Կոմիտեն՝ Գ. Կորգանովի ղեկավարությամբ։

Բաքուն, երկրամասի այդ ժամանակվա արդյունաբերական միակ խոշոր կենտրոնը, դարձել էր կռվախնձոր։ Բաքվի վրա էին արշավում մի կողմից, գերմանա-թյուրքական օկուպանտները, իսկ մյուս կողմից՝ անգլո-ֆրանսիական իմպերիալիստները, որոնք ձգտում էին նվաճել Բաքուն՝ իրականացնել իրենց զավթողական նպատակները, տիրել նավթին և Արևելքի ստրատեգիական այդ կարևոր հանգույցին։

Այդ դեռ բոլորը չէ։ Բաքվի պրոլետարիատի շահերին սուր կերպով դավաճանում էին էսեռները, մենշևիկները, դաշնակցականները և մուսավաթիստները։ Նրանք Սովետում մեծամասնություն կազմելով՝ իրենց քաղաքականությամբ նպաստում էին օտարերկրյա իմպերիալիստների զավթողական պլանների իրագործմանը։ Բուրժուա-նացիոնալիստական պարտիաները տենդորեն զինում էին իրենց ազգային զորամասերը ռևոլյուցիայի դեմ։

Միայն բոլշևիկյան պարտիան էր, որ հետևողականորեն պաշտպանում

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 35, էջ 359, Հայպետհրատ։

digitised by A.R.A.R.@

էր ժողովրդի արմատական շահերը, Ռուսաստանի սոցիալիստական ռեսպուբ-
լիկայի շահերը, մերկացնում բուրժուա-նացիոնալիստական պարտիաների
կոնտրռևոլյուցիոն վարքագիծը։

Հաշվի առնելով Կովկասում, հատկապես Բաքվում, Հոկտեմբերյան ռևո-
լյուցիայից հետո ընկած ժամանակաշրջանում ստեղծված բարդ իրադրու-
թյունը՝ բոլշևիկները Բաքվում ստեղծում են կարմիր գվարդիա, ինտերնա-
ցիոնալ բանակ։ Ռևոլյուցիայի և կոնտրռևոլյուցիայի զինված ուժերի միջև
մարտի 30-ից մինչև ապրիլի 1-ը (նոր տոմարով) ծավալված մարտերը, որ
հրահրել էին մուսավաթիստները, ավարտվեցին կոնտրռևոլյուցիոն ուժերի
ջախջախմամբ, Բաքվի պրոլետարիատի փայլուն հաղթանակով։ 1918 թվա-
կանի ապրիլի 1-ին Բաքվում հաղթանակեց սովետական իշխանությունը,
ստեղծվեց Կոմունա։ Մուսավաթիստական բանդաները պարտություն կրելով,
նահանջեցին և ամրացան Ելիզավետապոլում։ Նրանք Թյուրքիայից ու Դաղըս-
տանից նոր համալրում ստանալով սկսեցին իրենց հետագա արշավանքները
Բաքվի վրա։ Այսպիսով, Բաքվի Կոմունան, գործելով պատմական բարդ իրա-
դրության մեջ, պայքարում էր երկու ճակատում՝ ներքին և արտաքին։

Կոմունայի հաստատումից անմիջապես հետո Ս. Գ. Շահումյանը Կենտ-
րոնական Ժողովրդական Կոմիսարների Սովետին զեկուցում է իրադրության
մասին, նշելով, որ Անդրկովկասը մտել է ակտիվ զինված պայքարի շրջան՝
սովետական իշխանության համար։ Ապրիլի 25-ին ստեղծվում է Բաքվի Ժո-
ղովրդական Կոմիսարների Սովետը, որն իր առջև խնդիր էր դրել սերտ կապ
պահպանել Համառուսաստանյան կենտրոնական իշխանության հետ և հար-
մարվելով տեղական պայմաններին՝ կյանքի մեջ կիրառել Ռուսաստանի Բան-
վորա-Գյուղացիական կառավարության՝ Ժողովրդական Կոմիսարների Սովետի
բոլոր դեկրետներն ու կարգադրությունները։

Բաքվի Ժողովրդական Կոմիսարների Սովետի Նախագահ և Արտաքին
Գործերի Ժողովրդական Կոմիսար է ընտրվում Ստ. Շահումյանը, Ներքին Գոր-
ծերի Կոմիսար՝ Պ. Ջափարիձեն, Գավառային Կոմիսար՝ Մ. Ազիզբեկովը,
Ժողովրդական տնտեսության Սովետի նախագահ՝ Ի. Ֆիոլետովը, Ռազմա-
Ծովային Գործերի Կոմիսար՝ Գ. Կորգանովը, Արդարադատության Գործերի
Կոմիսար՝ Ա. Կարինյանը (Գաբրիելյան), Լուսավորության Գործերի Կոմիսար՝
Ն. Կոլեսնիկովան, Քաղաքային տնտեսության Գործերի Կոմիսար՝ Ն. Նարի-
մանովը, Աշխատանքի Կոմիսար՝ Յա. Զևինը, Հողագործության Կոմիսար՝
Մ. Վեզիրովը և ուրիշներ։ Կազմակերպելով քաղաքի պաշտպանությունը, ան-
հավասար մարտեր մղելով թշնամիների դեմ, Բաքվի Կոմունան իրականացրեց
սոցիալիստական մի շարք միջոցառումներ։ Կարմիր գվարդիայի և կոմունիս-
տական ջոկատների բազայի վրա ստեղծվեց Կարմիր Բանակ, ազգայնացվե-
ցին նավթարդյունաբերությունը, բանկերը, առևտրական նավատորմը, ձկ-
նորսարանները, բռնագրավվեցին կալվածատերերի և բեկերի հողերը՝ հօգուտ
աշխատավոր գյուղացիության։ Վերացվեց հին դատարանը, ստեղծվեցին տե-
ղական և օկրուգային ժողովրդական դատարաններ, կազմակերպվեց ժողո-
վրդական լուսավորության գործը։

Ահա այս և սոցիալիստական մյուս միջոցառումներին, Կոմունայի պաշտ-
պանության, սովետական կարգերի ամրապնդման հարցերին է նվիրված
Վ. Ի. Լենինի և Ս. Գ. Շահումյանի 1918 թ. նամակագրությունը։ Չնայած
Բաքվի և Մոսկվայի միջև Կոմունայի ժամանակաշրջանում եղած կապի և



հաղորդակցության միջոցների ծանր պայմաններին, Ս. Գ. Շահումյանն օգ-
տագործում էր բոլոր հնարավոր միջոցները Վ. Ի. Լենինի և Կենտրոնական
Ժողկոմսովետի հետ նամակագրական և հեռագրական կապ պահպանելու
համար։

Մի շարք նամակներ վկայում են, որ Կոմունայի հաստատման առաջին
իսկ օրերից Ս. Գ. Շահումյանը միջոցներ է ձեռնարկել Մոսկվայի, Պետրո-
գրադի, Աստրախանի և սովետական այլ կարևորագույն կենտրոնների հետ
ռադիո-հեռագրական կապ ստեղծելու ուղղությամբ։ Ապրիլի 13-ին Կենտրո-
նական Ժողկոմսովետին ուղղված նամակում Ս. Գ. Շահումյանը գրել է. «Ես
խնդրում եմ միայն ռադիո-կայանի մասին։ Հնարավորություն չկա Ձեզ հետ
կապվելու, եթե հնարավոր է ուղարկեցեք անհրաժեշտ հարմարանքներ»։

Ս. Գ. Շահումյանի նամակը ստանալուց հետո Վ. Ի. Լենինն անմիջապես
կարգադրություն է անում Բաքվի հետ ռադիո-հեռագրական կապը կարգավո-
րելու մասին, այդ նպատակով Բաքու են ուղարկվում համապատասխան մաս-
նագետ և տեխնիկական սարքավորում։

Վ. Ի. Լենինի և Ս. Գ. Շահումյանի նամակագրությունը ցույց է տալիս,
որ Բաքվում սովետական կարգերի հաստատումից անմիջապես հետո Կոմու-
նան Ս. Գ. Շահումյանի ղեկավարությամբ միջոցներ է ձեռնարկել երկրի ըն-
դերքը, նավթարդյունաբերությունը ազգայնացնելու մասին։ Ապրիլի 13-ին
Ս. Գ. Շահումյանը Կենտրոնական Ժողկոմսովետին ուղղած նամակում գրել է.
«Բաքվում մեր ունեցած հաղթանակից հետո Սովետը վերջնականապես ամ-
րացավ, մենք հնարավորություն ունենք անցկացնելու լուրջ միջոցառումներ,
նավթարդյունաբերության ազգայնացման հարցը վաղուց է լուծված, որը
պատրաստվում ենք իրականացնել։ Նավթն այժմ մեր տնօրինության տակ է»։
Ճիշտ է, նավթարդյունաբերության ազգայնացումը կապված էր մեծ դժվա-
րությունների հետ, բայց, ինչպես Ս. Գ. Շահումյանն է Վ. Ի. Լենինին գրել,
ազգայնացումը անհրաժեշտ էր, որպես «նավթարդյունաբերությունը կործա-
նումից փրկելու և նավթի փոխադրման միակ միջոց»։ Վ. Ի. Լենինի հանձ-
նարարությամբ Ի. Վ. Ստալինը մայիսի 12—13-ին Ս. Գ. Շահումյանին
ուղարկած նամակում[1] գրել է. «Ռադիոկայանի վերաբերմամբ նույնպես
կարգադրություն է արված Ծովային կոլեգիայում և Պիտերում։ Գաբրիելյանը
եկել է[2]։ Ընդերքի և նույնիսկ նավթարդյունաբերության ազգայնացման Ձեր
պլանը խոչընդոտների չի հանդիպի, եթե երաշխավորում եք տեխնիկական
անհրաժեշտ անձնակազմի առկայությունը, կարող եք երաշխավորել, որի
նկատմամբ մեզ եռանդուն կերպով հավատացնում է Գաբրիելյանը։ Ազգայ-
նացման գործը ավելի հարթ կընթանար, եթե Դուք Ձեր պատվիրակի հետ
ուղարկեք Ձեր Ժողկոմսովետի ձևական առաջարկությունը և Դեկրետի նախա-
գիծը։ Կրկնում եմ, եթե տեխնիկական անձնակազմ ունեք, գործը շարժեցեք,
առանց շփոթվելու Գուկովսկու[3] առաջարկություններից ու կարգադրություն-
ներից։ Դա միայն իմ անձնական կարծիքը չէ, այլ Կենտրոնական Ժողկոմսո-

---

[1] Ի. Վ. Ստալինի այդ նամակը չի հրապարակված։ Նրանից բերված այս և մյուս քաղվածքները վերցված են մեր ձեռքի տակ եղած մեքենագիր օրինակից։

[2] Խոսքը Սահակ Տեր-Գաբրիելյանի մասին է։

[3] Գուկովսկին Ժողովրդական Տնտեսության Գերագույն Խորհրդի Ֆինանսների պետն էր, որը այդ շրջանում դեմ էր արտահայտվում Բաքվի նավթարդյունաբերության ազգայնացմանը, համարելով դա վաղաժամ։

digitised by A.R.A.R.@

վետի Նախագահի կարծիքը։ Այդ ասում եմ միանգամայն պաշտոնական կերպով»։

Մայիսի 22-ին Ռուսաստանի Ժողկոմսովետը Վ. Ի. Լենինի նախագահությամբ որոշում է կայացնում Ժողովրդական Տնտեսության Գերագույն Խորհրդի Վառելիքի Բաժնին տրամադրել 100 միլիոն ռուբլի Բաքվից նավթ տեղափոխելու և նավթահանքերի բանվորների աշխատավարձը վճարելու համար։ Մայիսի 27-ին Ս. Գ. Շահումյանը Վ. Ի. Լենինին հեռագրել է, թե ուշացումով ստացանք Բարձրագույն Ժողտնտնավթխորհի № 706 հեռագիրը նավթային արդյունաբերության վերաբերյալ միջոցառումների մասին և այսօր Ժողկոմսովետի № 3082 հեռագիրը հարյուր միլիոնի մասին։ Ընդունված որոշումները հասկանում ենք որպես ազգայնացում։ Եթե խոչընդոտներ չկան,— ասում է Շահումյանը,— հեռագրեցեք ավելի որոշակիորեն։ Ողջունում եմ որոշումը։ Մայիսի 28-ին Շահումյանը ստանում է Ի. Վ. Ստալինի հեռագիրը այն մասին, թե Ժողկոմսովետը հաստատել է նավթարդյունաբերության ազգայնացումը, որի համաձայն էլ հունիսի 1-ին Բաքվի Ժողկոմսովետը դեկրետ է ընդունում նավթարդյունաբերության ազգայնացման մասին։

Վ. Ի. Լենինին գրած հետագա իր մի շարք նամակներում և հեռագրերում Ս. Գ. Շահումյանը խորհրդակցում է նավթարդյունաբերության ազգայնացման հետ կապված դժվարությունների մասին, բողոքում, որ հարցը խճճել են և ինչ էլ որ լինի, այլևս վերադարձ չի կարող լինել դեպի հինը։ Վ. Ի. Լենինը Բաքվի Կոմունայի ղեկավարներից պահանջում էր բոլոր միջոցները ձեռք առնել նավթամթերքը Վոլգայի վրայով շուտափույթ տեղափոխելու համար։

1918 թվականի հունիսի 20-ին Ռուսաստանի Ժողկոմսովետը ընդունում է նավթարդյունաբերության ազգայնացման մասին դեկրետը, որից անմիջապես հետո մեծ չափով ավելացավ նավթի փոխադրումը։ Բաքվի պրոլետարիատի քրտնաջան աշխատանքի շնորհիվ միայն երեք ամսվա ընթացքում Բաքվից Սովետական Ռուսաստան ուղարկվեց մոտ 80 միլիոն փութ նավթ։

Վ. Ի. Լենինին Ս. Գ. Շահումյանի գրած նամակներում և հեռագրերում քննարկվում են պարենային ծանր դրությունը հաղթահարելու, Ռուսաստանից ռազմական օգնություն ստանալու, օտարերկրյա օկուպանտների և ներքին կոնտրռևոլյուցիոն ուժերի դեմ պայքարի կազմակերպման հարցերը։

Բաքվի բանվորների պարենային դրությունը չափազանց ծանր էր, քաղաքում թագավորում էր սովը։ Կոմունարները ռևոլյուցիոն պատերազմ էին մղում երկու ճակատում՝ ռազմական և տնտեսական։ Ժողկոմսովետը ամեն ինչ անում էր բնակչության մատակարարման գործը բարելավելու, կաշառակերությունն ու սպեկուլյացիան լիկվիդացնելու ուղղությամբ։ «Բաքվում պարենային հարցը խիստ դժվարացնում է մեզ,— մայիսի 14-ին գրել է Ս. Գ. Շահումյանը Վ. Ի. Լենինին։— Բանվորները սոված են»։ Հունիսի 18-ին Ներքին Գործերի ժողկոմ Պ. Ջափարիձեն համատեղության կարգով նշանակվում է Մատակարարման Գործերի ժողկոմ։ Մարտերում կոփված լավագույն բոլշևիկ Ջափարիձեն գլխավորում է պայքարը սովի դեմ։

Ս. Գ. Շահումյանը Վ. Ի. Լենինին խնդրում էր նյութական աջակցություն ցույց տալ Բաքվին։ Հունիսին Վ. Ի. Լենինը հեռագրել է Շահումյանին, թե՝ «Ժողկոմսովետը որոշել է անհապաղ Ցարիցինից Բաքու ուղարկել մեծ քանակությամբ հաց»։ Հունիսի 10-ին Ս. Օրջոնիկիձեն Բաքվի Կոմունայի ղեկավարներին Ցարիցինից հեռագրել է. «Վաղը ջրային ճանապարհով ուղարկում ենք տաս հազար փութ հացահատիկ։ Կարգադրված է անհապաղ մարշրուտային գնացքներ ուղարկել Ստավրոպոլի նահանգից և Թերեքի մարզից։



Ողջույն Բաքվի ընկերներին, որոնք հերոսական պայքար են մղում պրոլետարիատի բռնադատիչների ու դավաճանների դեմ»։

Հուլիսի 19-ին Աստրախանից հայտնում են, որ Բաքվի համար ստացված է 180 վագոն բեռ, առաջիկա օրերին կուղարկվի 28 հազար տուփ պահածո։ Բայց փոխադրական միջոցների պակասության և տրանսպորտի անկանոն լինելու պատճառով Բաքվի համար նախատեսված պարենամթերքի մի զգալի մասը տեղ չէր հասնում, մնում էր ճանապարհին։

Վ. Ի. Լենինի և Ս. Գ. Շահումյանի 1918 թվականի նամակագրության մեջ լայնորեն քննարկված են Կոմունայի ռազմական գործողությունները, Բաքվին ցույց տրված ռազմական օգնության հարցերը։ «Այժմ մենք գտնվում ենք անընդհատ կռվի վիճակում»,— ապրիլի 13-ին գրել է Շահումյանը։

Ս. Գ. Շահումյանը Վ. Ի. Լենինին խնդրում էր ուժեղացնել ռազմական օգնությունը, ուղարկել ավելի շատ զենք, ռազմամթերք և սպառազինության այլ միջոցներ։

Սովետական Ռուսաստանը, Վ. Ի. Լենինի ցուցումներով, հնարավորին չափ օգնում էր Բաքվին՝ ուղարկելով դրամ, ռազմամթերք, զորք։ Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ մայիսին Ի. Վ. Ստալինը Շահումյանին հարցում է արել.

«1. Ստացե՞լ եք արդյոք երկու միլիոնը Կամոյի միջոցով։

2. Ստացե՞լ եք վերջերս Ձեզ ուղարկած հարյուր միլիոնը։

3. Ստացե՞լ եք արդյոք Տեր-Պետրոսյանի և մի ռուս ընկերոջ (ազգանունը մոռացել եմ) միջոցով ծովային ճանապարհով ուղարկված ռազմամթերքը»։

Վ. Ի. Լենինը շատ անգամ է անձամբ ընդունել Բաքվի Կոմունայի ներկայացուցիչներին (Ս. Տեր-Գաբրիելյան, Ն. Կուզնեցով, Բ. Բորյան և ուրիշներ), հոգատարությամբ լսել նրանց, մարտական կարգադրություններ արել ռազմական և սովետական կազմակերպություններին՝ Կոմունային օգնություն ցույց տալու համար։ «Կարգադրեցեք անմիջապես բարձել և Բաքու ուղարկել զրահապատ ավտոմեքենաներ՝ Սպառազինման Համառուսաստանյան կոլեգիայի գերատեսչության ցուցակով» — այսպես է գրել Վ. Ի. Լենինը Պետրոգրադի Սովետի նախագահին։ Շահումյանը հուլիսի 23-ին Վլադիմիր Իլյիչին գրած նամակում շնորհակալություն է հայտնում ցույց տված ռազմական օգնության համար։ «Այսօր, վերջապես, եկավ Տեր-Գաբրիելյանը և մեզ համար բերեց 4 զրահամեքենա, 13 աերոպլան և ուրիշ շատ բաներ։ Այդ ամենի համար շատ ու շատ շնորհակալ եմ Ձեզանից։ Մենք ստացանք այն, ինչ պակասում էր մեզ և ինչ այժմ անգնահատելի ծառայություն կմատուցի մեզ»։ Հուլիսի 13-ին Վ. Ի. Լենինը Ծովային կոլեգիային կարգադրություն է անում ռազմանավեր փոխադրել Կասպից ծով։ Հուլիսի 20-ին ուկրաինական ռազմաճակատից Բաքու է ուղարկվում Պետրովի ջոկատը, իսկ 24-ին Աստրախանից Բաքու է հասնում մի հեծյալ մարտկոց, որի կազմում կային 4 հրանոթ՝ ռազմական սպառազինությամբ և 170 ռազմիկ։ Հուլիսի վերջին և օգոստոսի սկզբներին Սովետական Ռուսաստանից կոմունարները ստանում են 80 թնդանոթ, 160 գնդացիր, 1000 հրացան, զրահապատ ավտոմեքենաներ։ Ռազմական օգնության հետ միասին Վ. Ի. Լենինը Բաքվի պրոլետարիատին ոգե-

digitised by A.R.A.R.@

շնչում էր իր բարեկամական ողջույններով և իմաստուն ցուցումներով։

Բաքվի Կոմունան շարունակում էր իր հերոսական դիմադրությունը, վճռական ճակատամարտ էր մղում մուսավաթիստական «վայրենի դիվիզիայի», գերմանա-թյուրքական զավթիչների, Իմամ Գոցինսկու բանդաների և անգլիական իմպերիալիստների դեմ։ Կոմունայի զինված ուժերը հունիսի 10-ից հարձակման անցնելով՝ կարճ ժամանակամիջոցում մեկը մյուսի հետևից ազատագրեցին Սալյանը, Շամախին, Քյուրդամիրը, Կուբան և այլ վայրեր։

Վ. Ի. Լենինին Ս. Գ. Շահումյանի գրած նորահայտ նամակներն ու հեռագրերը վկայում են այն ամենազգույշ դիվանագիտության մասին, որ վարում էին Կոմունայի ղեկավարները։ Ս. Գ. Շահումյանը, ղեկավարվելով Վ. Ի. Լենինի ցուցումներով, օգտագործում էր իմպերիալիստական տերությունների, ինչպես և ներքին կոնտրռևոլյուցիոն ուժերի միջև եղած հակասություններն ու կոնֆլիկտները։

Մարտյան կռիվների ընթացքում ձախ էսեռների, հայկական ազգային որոշ ուժերի օգտագործումը Կոմունայի վարած ճիշտ տակտիկայի արդյունքն էր։ Կոմունայի ղեկավարությանը միանգամայն պարզ էր, որ հիշատակված ուժերը ռևոլյուցիայի մշտական ուղեկիցներ չեն, որ նրանք հարմար առիթի են սպասում ռևոլյուցիայի մեծ գործին դավաճանելու համար, բայց ստեղծված քաղաքական վիճակը պահանջում էր թեկուզ ժամանակավորապես օգտվել նրանց աջակցությունից։ Հատկապես Բաքվի պայմաններում դա անհրաժեշտ էր։ Այսպես էր պահանջում պրոլետարական ռևոլյուցիայի մեծ ստրատեգ Վ. Ի. Լենինը։

Կոմունայի պատմության ուսումնասիրությանը նվիրված մի շարք աշխատություններում փորձեր են արվել անտեսելու այդ ճշմարտությունը, անհիմն մեղադրանք ներկայացնելու Կոմունայի ղեկավարներին։ Վ. Ի. Լենինի և Ս. Գ. Շահումյանի 1918 թվականի նամակագրության գիտական ուսումնասիրությունը լիովին հերքում է նման մտայնությունները, հաստատում Բաքվի բոլշևիկների գործողությունների իրավացիությունը։

Շահումյանը լավ գիտեր, որ Բիչերախովին լիովին չի կարելի վստահել, բայց ստեղծված իրադրությունից ելնելով՝ հնարավոր էր համարում օգտագործել նրան։ «Բիչերախովի մասին ես արդեն ձեզ գրել եմ,— ասում է Շահումյանը Կենտրոնական Ժողկոմսովետին մայիսի 14-ի ուղարկած նամակում։ Այդ մարդը անպարտիական է։ Այժմ նա ջոկատները պահում է անգլիացիների միջոցներով, անհրաժեշտ է գտնում, ինչպես կտեսնեք ռադիոյից, համատեղ աշխատանքը մեզ հետ՝ ընդդեմ Թյուրքիայի։ Ես արդեն գրել եմ Ձեզ, որ հանձնարարել եմ Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեին՝ վերջնականապես պարզելու, թե՛ Բիչերախովի և թե՛ գեներալ Բարանովի դիրքը։ Ակնհայտորեն այդ նպատակով է հարցում արվել նրան (Բիչերախովին)»[1]։ Հուլիսի 7-ին Լ. Բիչերախովի ջոկատը Բաքվում միանում է Կոմունայի զինված ուժերին և մասնակցում պատերազմական գործողություններին։ Բայց, ինչպես սպասվում էր, Բիչերախովը շուտով դրժում է իր խոստումը, լքում ռազմաճակատը և պահանջում անգլիացիներին անհապաղ հրավիրել Բաքու։ Ի վերջո նա իր ջո-

[1] См. архив НКИД, д. 54837, папка 321. Հոդվածի նորահայտ նամակների քաղվածքները վերցված են ЦПА ИМЛ, ф. 461, ЦГАОР, ф. 130, ЦГАКА, ф. 1:



կատով շարժվում է դեպի Հյուսիսային Կովկաս, միանում կոնտրռևոլյուցիոն բանակներին։ Բիչերախովի ջոկատի հրավիրումը տակտիկական քայլ էր, Կոմունայի թշնամիների միջև եղած հակասություններն օգտագործելու ձևերից մեկը։

Չնայած Բաքվի Ժողկոմսովետի ձեռնարկած միջոցառումներին, Վ. Ի. Լենինի ցուցաբերած հոգատարությանը, հուլիսին Կոմունայի դրությունը ծանրացավ։ Ռուսաստանի երիտասարդ ռեսպուբլիկան ռազմական և տնտեսական տեսակետից նույնպես գտնվում էր ծանր վիճակում։ Նա հնարավորություն չուներ Բաքվին անհրաժեշտ չափով օգնություն ցույց տալու։ Ավելին, ուղարկված ռազմական օգնությունն ու պարենը երբեմն տեղ չէր հասնում։ Օգոստոսի 23-ին Վլադիմիր Իլյիչը անհանգստացած նշում էր, որ Բաքվի համար ուղարկված ռազմական օգնությունը չգիտենք որտեղ է, կարծում ենք կանգ է առել Ցարիցինի մոտ։

Ս. Գ. Շահումյանը հուլիսին Վ. Ի. Լենինին գրած նամակներում և հեռագրերում պատմում է, որ դրությունը լրջանում է, անհրաժեշտ է ուժեղացնել օգնությունը Ռուսաստանից։ «Ռազմական ուժերի ուղարկումը Բաքու պետք է ուժեղացվի և շտապեցվի,— հուլիսի 20-ին Շահումյանը հեռագրել է Վ. Ի. Լենինին և Ի. Վ. Ստալինին։— Ուղարկեցեք շուտով, կարգադրեցե՛ք, որպեսզի տեղական Սովետները ճանապարհին չկանգնեցնեն Բաքու ուղարկվող զորամասերը, հաղորդեցե՛ք, թե կարո՞ղ ենք օգնություն սպասել և ինչ ժամկետում։ Կրկնում եմ, զորքերով օգնելն անհրաժեշտ է շտապ և զգալի չափերով»։ Դրանից երեք օր անց, հուլիսի 23-ին, Շահումյանը նորից է հիշեցնում, որ Ռուսաստանից օգնությունն անհրաժեշտ է, այլապես դրությունը կարող է դառնալ անհուսալի։ «Համառաբար խնդրում եմ բոլոր միջոցները ձեռք առնել անհապաղ կանոնավոր զորամասեր ուղարկելու համար,— հուլիսի 27-ին հեռագրել է Շահումյանը։— Մեր դեմ կռվում են թյուրքական կանոնավոր զորքերը, կան գերմանական հրամանատարներ։ Սպասում եմ Ձեր շտապ կարգադրություններին զորքեր ուղարկելու մասին»։

Ստեղծված բարդ ու խճճված պայմաններում անգամ, երբ թշնամու կրակի օղակը հետզհետե սեղմվում էր Բաքվի շուրջը, բոլշևիկները անսահման հավատով էին լցված դեպի իրենց ուժերը, դեպի ռուս ժողովուրդը։ Շահումյանն արտահայտելով կոմունարների կամքը՝ այդ օրերին Վ. Ի. Լենինին վստահեցնում էր, թե՝ «մենք կայտառ ենք և հավատով լեցուն», որ այսպիսի պայմաններում, երբ սպառված չեն ռևոլյուցիոն Ռուսաստանի ուժերը, մենք հաստատակամորեն պետք է շարունակենք պայքարը և հաղթանակով պսակենք Կոմունայի գործը։ Սակայն, էսեռները, մենշևիկները, դաշնակները և հակաբոլշևիկյան մյուս տարրերը գնալով ավելի են ուժեղացնում մութ ագիտացիան, դավաճանելով միջազգային պրոլետարիատի շահերին՝ պահանջում են Բաքու հրավիրել անգլիացիներին։ Շահումյանը գործադրելով պարտիական ու պետական գործչի իր ռևոլյուցիոն ամբողջ եռանդն ու կորովը, մերկացնում էր նրանց կործանարար քաղաքականությունը։ Համաձայնողական պարտիաների ճնշման տակ, այնուամենայնիվ, Բաքվի Սովետը ձայների աննշան տարբերությամբ (23) որոշում է անգլիացիներին հրավիրել Բաքու։ Վ. Ի. Լենինին տված հեռագրերում Շահումյանը պատմում է համաձայնողական պարտիաների այդ դավաճանական քայլի մասին, նշում, որ ինքը բողոքում է կայացված որոշման դեմ և խնդրում է Վլադիմիր Իլյիչի շուտափույթ



digitised by A.R.A.R.@

ցուցումները։ Վ. Ի. Լենինը և նրա զինակիցները Շահումյանին հայտնում են, որ հարկավոր է վճռական միջոցներ ձեռնարկել, որ Բաքվի Սովետի նարոդնիկական ֆրակցիայի ամեն մի գործողությունը դիտվելու է որպես ապըստամբություն և դավաճանություն։ Շահումյանը իր մարտական ընկերների հետ միասին մինչև վերջը մերկացնում է էսեռների, դաշնակների և մենշևիկների քաղաքականությունը, ցույց տալով նրանց կեղծավորությունները։ Բաքվի Սովետում «դաշնակներն իրենց քվեարկությամբ,— ասել է Շահումյանը,— բացահայտ դավաճանություն կատարեցին մեր դեմ»։ Օգոստոսի սկզբներին (5-ից ոչ շուտ) Աստրախանից Վ. Ի. Լենինին և Յա. Սվերդլովին տրված հեռագրում[1] նկարագրվում է Բաքվի Կոմունայի ծանր վիճակը, նշվում, որ Ժողկոմսովետը կանգնած է դավաճանության փաստի առաջ։ «Ժողկոմսովետը,— ասված է այդ հեռագրում,— չէր կարող գտնվել նրանց թվում, ովքեր հանձնվում էին թյուրքական փաշաների ողորմածությանը, ոչ էլ նրանց թվում, ովքեր կողմնակից էին անգլիացիների գալուն, և նա որոշեց փրկել եղած ռևոլյուցիոն զորքերը, էվակուացվել»։

Վ. Ի. Լենինը, հավանություն տալով անգլիացիների նկատմամբ Բաքվի բոլշևիկների վարած քաղաքականությանը, օգոստոսի 20-ին ասել է. «անգլո-ֆրանսիական իմպերիալիստների հետ որևէ համաձայնություն կնքելուց վըճռականորեն հրաժարվելը Բաքվի ընկերների միակ ճիշտ քայլն է, քանի որ չի կարելի նրանց հրավիրել, առանց ինքնուրույն, սոցիալիստական իշխանությունը, թեկուզ և կտրված տերիտորիայում, վերածելու իմպերիալիստական պատերազմի ստրուկի»[2]։

Չնայած Բաքվի պրոլետարիատի հերոսական պայքարին, չհաջողվեց պաշտպանել Կոմունան։ Հուլիսի 31-ին սովետական իշխանությունը Բաքվում ժամանակավորապես ընկավ։ Բաքվի քաջարի կոմիսարները ձերբակալվեցին։ Վ. Ի. Լենինը օգոստոսի 9-ին Աստրախանի Սովդեպի նախագահին ուղարկած հեռագրում անհանգստացած պահանջում էր պարզել Բաքվի դրությունը, իմանալ, թե որտեղ է Շահումյանը։

Սովետական կառավարությունը, Վ. Ի. Լենինը մեծ ջանքեր թափեցին Շահումյանի և նրա մարտական ընկերների կյանքը փրկելու համար։

Ավա՜ղ, չհաջողվեց...

Մենք մեռնում ենք կոմունիզմի համար։ Կեցցե՜ կոմունիզմը։

Այս էր կոմունարների ավանդը մեզ և գալիք սերունդներին։

* * *

Վ. Ի. Լենինը Բաքվի Կոմունայի հաղթանակների կազմակերպիչն ու ոգեշնչողն էր։

Վ. Ի. Լենինի և Ս. Գ. Շահումյանի 1918 թվականի նամակագրության մեջ, ինչպես տեսանք, վառ արտացոլում է գտել նրանց բարեկամությունը, մեծ առաջնորդի հոգատարությունն իր զինակիցների և ժողովրդի նկատմամբ, այն հերոսական պայքարը, որ Անդրկովկասի բոլշևիկները մղել են երկրամասում սովետական կարգերի հաստատման համար։

[1] Տես՝ ЦГАОР г. Москвы, ф. 130, оп. 2, д. 570. Վերոհիշյալ հեռագիրը վերագրվել է Անիսիմովին, բայց տեքստի ուշադիր հետազոտությունը բերում է այն եզրակացության, որ այն Շահումյանի հեռագիրն է։

[2] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 28, էջ 9։

# ՊԱՅՔԱՐԻ ԵՎ ՀԱՂԹԱՆԱԿԻ 37 ՏԱՐԻՆ

Գ. ՄԱՀՄԵԴՈՎ

«Ազերբայջան Կոմունիստի» ամսագրի գլխավոր խմբագիր

Ապրիլի 28-ին լրանում է Ադրբեջանում սովետական իշխանության հաստատման 37 տարին։

1920 թ. ապրիլի 28-ին Ադրբեջանի աշխատավորությունը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ և ռուս մեծ ժողովրդի օգնությամբ տապալելով մուսավաթականների բուրժուա-կալվածատիրական իշխանությունը՝ ստեղծեց սովետական իշխանություն։ Հենց այդ օրվանից էլ ադրբեջանական ժողովուրդը դարձավ իր բախտի տերը, տիրացավ իր ընդերքի հարստություններին և սկսեց ընթանալ սոցիալիզմի ուղիով։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի շնորհիվ մեր ժողովրդին վիճակված այս անսահման երջանկությունը սրտանց ուրախացնում էր Վլադիմիր Իլյիչ Լենինին՝ Կոմունիստական պարտիայի հանճարեղ կազմակերպչին և ղեկավարին։ Նա Ադրբեջանին ուղարկած ողջույնի հեռագրի մեջ Սովետական Ռուսաստանի կառավարության անունից գրում էր.

«Ժողկոմսովետը ողջունում է անկախ Ադրբեջանական ռեսպուբլիկայի աշխատավոր մասսաների ազատագրումը և հաստատ վստահություն է հայտնում, որ Ադրբեջանի անկախ ռեսպուբլիկան իր Սովետական կառավարության ղեկավարությամբ ՌՍՖՍՌ-ի հետ միասին կպաշտպանի իր ազատությունը և անկախությունը Արևելքի ճնշված ժողովուրդների ոխերիմ թշնամուց՝ իմպերիալիզմից։

Կեցցե՜ Ադրբեջանի անկախ Սովետական ռեսպուբլիկան։

Կեցցե՜ն Ադրբեջանի բանվորները և գյուղացիները։

Կեցցե՜ Ադրբեջանի և Ռուսաստանի բանվորների ու գյուղացիների դաշինքը։

Ժողկոմսովետի նախագահ՝ Վ. Ուլյանով (Լենին)»

Կանցնեն տարիներ և շատ ժամանակներ, բայց ադրբեջանական ժողովրդի բոլոր սերունդները միշտ էլ մեծ խանդավառությամբ և ոգևորությամբ կնշեն պատմական այդ պայծառ օրը՝ ապրիլի 28-ը, որը նոր դարաշրջանի՝ ազգային վերածնության և երկրի սոցիալիստական զարգացման սկիզբը եղավ։

Ժողովուրդների մեծ ղեկավար Լենինը չափազանց շատ ջանքեր է գործադրել ինչպես ամբողջ աշխարհի, այնպես էլ Ադրբեջանի աշխատավորության ազատության և նրա սոցիալիստական վերածնության համար։ Նա անմիջական ուղղություն է տվել ռևոլյուցիոն շարժմանը Ադրբեջանում։

digitised by A.R.A.R.@

Դեռ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախապատրաստման և իրագործման ժամանակաշրջանում, օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի և երկրի ներքին հակառևոլյուցիոն շարժման դեմ պայքարի տարիներին Վ. Ի. Լենինը ղեկավարել է սովետական իշխանության համար Բաքվի և Ադրբեջանի աշխատավորության մղած պայքարը։

Ինչպես հայտնի է, Անդրկովկասում ամենից առաջ Բաքվում ստեղծվեց սովետական իշխանություն։ Բաքվի պրոլետարիատը Անդրկովկասում հանդես եկավ որպես պրոլետարական ռևոլյուցիայի դրոշակակիր։ 1918 թ. ապրիլի 25-ին ստեղծվեց Բաքվի ժողովրդական կոմիսարների Սովետը։ Սովետի կազմում էին հայտնի ռևոլյուցիոներներ՝ Ստ. Շահումյանը, Մ. Ազիզբեկովը, Ա. Ջափարիձեն, Վ. Ֆիոլետովը, Գ. Կորգանովը, Մ. Հ. Վազիրովը, Ն. Նարիմանովը և ուրիշները։

Բարձր գնահատելով Բաքվի կոմունայի գործունեությունը՝ Վ. Ի. Լենինը 1918 թ. փետրվարի 14-ին Ստ. Շահումյանին գրեց.

«Մենք հրճվանքի մեջ ենք ձեր հաստատակամ և վճռական քաղաքականությունից» (հատոր 35, էջ 359)։

Անգլիական իմպերիալիզմի անմիջական մասնակցությամբ, մուսավաթականների և դաշնակների դավաճանությամբ, ստոր մենշևիկների և էսեռների աջակցությամբ Բաքվում տապալվեց Սովետական իշխանությունը։ Ադրբեջանի պարտիական կազմակերպությունը խոր ընդհատակյա գործունեության անցավ։

Ոգեշնչվելով Սովետական Ռուսաստանի հաջողություններով՝ Բաքվի պրոլետարիատը և Ադրբեջանի ամբողջ աշխատավորությունը ավելի լարված պայքար ծավալեցին հանուն սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի։

Ադրբեջանի հայտնի ռևոլյուցիոներ Դադաշ Բունյաթզադեն, որը պարտիական հանձնարարությամբ աշխատում էր Աստրախանում, 1918 թ. աշնանը կանչվում է Մոսկվա՝ Ադրբեջանում տիրող դրության մասին զեկուցելու։ Վ. Ի. Լենինը իրեն հատուկ ջերմությամբ է ընդունում Բունյաթզադեին և նրա հետ զրուցում Բաքվում տիրող դրության մասին։

Այս հանդիպման մասին Բունյաթզադեն իր հիշողությունների մեջ գրել է. «Երբ ես նրան պատմեցի Բաքվում սովետական իշխանության տապալման և 26 կոմիսարների գնդակահարման մասին, նա ինձ ասաց. 26 կոմիսարների կորուստը չպետք է թուլացնի մեր սկսած աշխատանքը։ Հարկավոր է հավաքել բանվորների և գյուղացիների ուժերը և շուտով ազատագրել Ադրբեջանի աշխատավորներին»։

1918—1919 թթ. Բաքվում գնալով աճում էին ցույցերն ու գործադուլները ընդդեմ անգլիական ինտերվենտների և մուսավաթականների։ 1918 թ. դեկտեմբերի 24—27-ին բոլշևիկների անմիջական ղեկավարությամբ գործադուլ արեցին նավթարդյունաբերության բանվորները, երկաթուղայիններն ու ծովայինները։ 26 կոմիսարների չարանենգ սպանության կապակցությամբ 1919 թ. մարտի 20-ին Բաքվում սկսված գործադուլին 50 հազարից ավելի բանվորներ էին մասնակցում։ Նույն թվականի մայիս, հունիս և օգոստոս ամիսներին մի շարք ցույցեր կազմակերպվեցին Դենիկինի և անգլիական ինտերվենտների դեմ։ Բոլոր ցույցերն անցնում էին «Կորչի անգլիական հրամանատարությունը», «Մահ Դենիկինին», «Կեցցե Սովետական Ռուսաստանը», «Կեցցե Սովետական իշխանությունը Ադրբեջանում» լոզունգներով։ Բաքվի պրոլե-

digitised by A.R.A.R.@



տարիատի ելույթները կարճ ժամանակում արձագանք գտան Ադրբեջանի տարբեր շրջաններում։

Իրազեկ լինելով կոնտրռևոլյուցիայի դեմ Բաքվի աշխատավորների հարձակման անցնելու պատրաստակամության մասին՝ Վ. Ի. Լենինը 1919 թ. փետրվարի 12-ին Կասպի-կովկասյան ճակատի Ռազմա-ռևոլյուցիոն խորհրդին գրել է, որ անհրաժեշտ է օգտագործել բաքվեցիների տրամադրությունը, միջոցառումներ մշակել վճռական գործողության համար։

Հակառևոլյուցիայի դեմ պայքարի այս եռուն ժամանակ Բաքվի պրոլետարիատը լուրջ օգնություն էր ստանում Ռուսաստանից։ Այդ ծանր օրերին բոլշևիկյան պարտիայի ԿԿ-ի, անձամբ Վ. Ի. Լենինի ցուցումով Ս. Օրջոնիկիձեն, Ս. Մ. Կիրովը, Ա. Ի. Միկոյանը ամեն կերպ օգնում էին սովետական իշխանության համար պայքարող Ադրբեջանի աշխատավորներին։ Չնայած ծանր պայմաններին՝ Բաքվի բանվորներն էլ իրենց հերթին գաղտնի ճանապարհներով նավթ, բենզին, քսայուղ և այլն ուղարկում էին Աստրախան։

Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ 1920 թ. փետրվարին Ադրբեջանում ստեղծվեց Կոմունիստական պարտիա, որի Կենտկոմը իր ձեռքը վերցրեց զինված ապստամբության նախապատրաստման գործը։

1920 թ. ապրիլի 28-ին գիշերը ռևոլյուցիոներ Համիդ Սուլթանովը մուսավաթական պառլամենտին հանձնեց Ռևոլյուցիոն կոմիտեի վերջնագիրը։ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ և ռուս մեծ ժողովրդի օգնությամբ 1920 թ. ապրիլի 28-ին ռևոլյուցիան հաղթանակեց։

Ռևոլյուցիայի առաջին իսկ օրերից, ղեկավարվելով Լենինի իմաստուն ցուցումներով, Ադրբեջանի բոլշևիկները ակտիվ պայքար սկսեցին պրոլետարիատի դիկտատուրայի ամրապնդման, արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման համար։

Ադրբեջանում ռևոլյուցիոն շարժումների ականավոր կազմակերպիչ, մեծ պետական գործիչ Նարիմանովը 1922 թ. հունվարին Բաքվի համաքաղաքային պարտիական կոնֆերանսում Լենինի կողմից նրան ասված հետևյալ խոսքերն էր կրկնում. «Ադրբեջանում մենք պետք է ստեղծենք օրինակելի ռեսպուբլիկա»։

Այդ շրջանում Ադրբեջանի պարտիական կազմակերպությունը ղեկավարում էր Ս. Մ. Կիրովը։ Ականավոր բոլշևիկ ռևոլյուցիոներ Կիրովը Ն. Նարիմանովի, Ս. Մ. Էֆենդիևի, Դ. Բունյաթզադեի, Ա. Հ. Գարաևի, Ռ. Ախունդովի, Գ. Մուսաբեկովի, Մ. Պլեշակովի, Հ. Սուլթանովի. Մ. Դ. Հուսեյնովի, Լ. Միրզոյանի, Մ. Գասիմովի հետ միասին եռանդուն պայքար կազմակերպեցին մուսավաթական իշխանության տարիներին քայքայված արդյունաբերության, գյուղատնտեսության վերականգնման ու զարգացման, նորաստեղծ ռեսպուբլիկայի ամրապնդման համար։

Իմաստուն ղեկավար Վ. Ի. Լենինի առաջադրած նոր տնտեսական քաղաքականությունը մեծ դեր խաղաց Ադրբեջանում բանվորների և գյուղացիների դաշինքի ամրապնդման գործում։

Վ. Ի. Լենինը հատուկ ուշադրություն էր դարձնում ՌՍՖՍՌ և Անդրկովկասի ժողովուրդների բարեկամության և համագործակցության ամրապնդման վրա։ Այս տեսակետից մեծ նշանակություն ուներ Ադրբեջանի Սովետական ռեսպուբլիկայի և ՌՍՖՍՌ միջև 1920 թ. սեպտեմբերի 30-ին կնքված քաղաքական-ռազմական դաշինքը։

Ադրբեջանում նավթարդյունաբերության վերականգնման և զարգացման գործը առաջ մղելու նպատակով Լենինը 1921 թ. մայիսի 27-ին գրում էր.

«Ե՛վ մամուլում, և՛ տեղերից ստացված հաղորդագրությունների մեջ հաճախակի են դառնում Բաքվում գործերի վատթարացման վերաբերյալ լուրերը։

Անհրաժեշտ է ուժեղացնել ուշադրությունն ու հոգատարությունը Բաքվի նկատմամբ։

Խնդրում եմ ԱՊԽ մտցնել Բաքվին սիստեմատիկաբար օգնելու միջոցառումների ծրագիրը, օգտագործելով արտասահմանյան գնումները։

Հարկավոր է սահմանել մշտական «դիտում», թե ինչ է արվում Բաքվում և ինչով ենք օգնում մենք։

Պարզել համառոտ արդյունքները երկու հոդվածներով էլ (ա՝ ինչ կա. բ՝ ինչ ենք տվել) և անդադրում հետևել»։

ԱՊԽ Նախ. Լենին»

Ադրբեջանի Կոմպարտիան մի շարք կարևորագույն միջոցներ մշակեց նորաստեղծ ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը վերականգնելու համար։ Այդ միջոցառումները ելնում էին Լենինի հայտնի նամակից, ուր ասվում էր.

«Իսկույն աշխատել բարելավել գյուղացիների դրությունը և սկսել էլեկտրիֆիկացիայի, ոռոգման խոշոր աշխատանքները։ Ոռոգումն ամենից ավելի է պետք և ամենից ավելի կվերաստեղծի երկիրը, կվերածնի նրան, կթաղի անցյալը, կամրապնդի անցումը դեպի սոցիալիզմ» (հատոր 32, էջ 404)։

Անցած 37 տարվա ընթացքում սովետական կարգերի և լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ արմատապես փոխվեց Ադրբեջանը։ Ցարական իշխանության ժամանակվա ծայրահեղ հետամնաց Ադրբեջանը հիմա ծաղկած, սոցիալիստական առաջավոր երկիր է դարձել։

Ռեսպուբլիկայի ժողովրդական գրող Ս. Վուրղունը ճիշտ է արտահայտել հազարավոր մարդկանց զգացմունքները, երբ գրել է.

Ազատ է թռչունների երգը բերկրալի,
Ազատ է կյանքը վեհ խնդությամբ լի.
Թե ծովը թանաք, անտառը լինի գրիչ,
Չեն սպառի սրտիս երգերը թովիչ։

Անցած 37 տարվա ընթացքում ռեսպուբլիկայի արդյունաբերության ամենագլխավոր ճյուղերից մեկը՝ նավթարդյունաբերությունը աճել է վիթխարի չափով։ Այժմ այստեղ կիրառվում են տեխնիկայի ամենավերջին նվաճումները, հայտաբերվում և շահագործման են հանձնվում հսկայական պաշարներ ունեցող նավթահորեր։ Կասպից ծովի վրա բարձրացող հազարավոր վիշկաները բոլորովին նոր տեսք են տալիս քաղաքին և ծովին։

Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ՝ մետալուրգիական, քիմիական, էլեկտրատեխնիկական, տեքստիլ, տրիկոտաժ, կաշվի, կոնսերվի և այլ տասնյակ ճյուղեր են ստեղծվել։ Մեր ժողովուրդը այժմ հպարտանում է Բաքվի խողովակի, Սումգաիթի ալյումինի և կաուչուկի գործարաններով և նման մի շարք արդյունաբերական խոշոր օբյեկտներով։

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության և կուլտուրայի աննախընթաց վերելքի գործում մեծ նշանակություն ունեցավ մեր ամենախոշոր էլեկտրակայաններից մեկի՝ Մինգեչաուրի հիդրոկայանի շահագործման հանձնելը։



Վերջին տարիների ընթացքում Լենինի, Շահումյանի, Ազիզբեկովի, Օրջոնիկիձեի, Ստալինի անվան և Վերին Ղարաբաղի ջրանցքների կառուցումով ոռոգման մի հզոր սիստեմ է ստեղծվել ռեսպուբլիկայում։

Բոլորովին անճանաչելի են դարձել ռեսպուբլիկայի քաղաքները և գյուղերը։ Անցյալի հետամանց ադրբեջանական գյուղում հիմա բարձրանում են ակումբների, գրադարանների, կուլտուրայի տների, հիվանդանոցների շենքերը, կոլտնտեսականների հիասքանչ բնակարանները։

Ռեսպուբլիկայի մայրաքաղաք սոցիալիստական Բաքուն իր չքնաղ ու բարձր շենքերով, ասֆալտապատ փողոցներով, աննման տեսարաններով, հաճելի ծովափերով միության ամենագեղեցիկ քաղաքներից մեկն է դարձել։ Հայտնի ֆրանսիական գրող Հանրի Բարբյուսը Բաքվով հիացած գրել է.

«Եթե ինձ հարցնեն, թե սովետական իշխանությունն իր բարեկամներին, նույնիսկ թշնամիներին զարմացնող ինչպիսի գործեր է արել, ես կպատասխանեմ՝ նայեցեք Բաքվին, կտեսնեք այդ»։

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հասարակության զարգացման նոր ուղի է հարթել։ Երկրում ստեղծվել է հզոր արդյունաբերություն և մեխանիզացիայի ենթարկված առաջավոր գյուղատնտեսություն։

Ինչպես մեր երկրի բոլոր աշխատավորները, այնպես էլ Ադրբեջանի աշխատավորությունը հպարտանում է 1956 թ. նվաճումներով։ Կենսագործելով պարտիայի XX համագումարի որոշումները՝ Ադրբեջանի աշխատավորությունը պատվով կատարեց վեցերորդ հնգամյակի առաջին տարվա պլանները։ 1956 թ. համախառն արտադրանքի թողարկման պլանը ռեսպուբլիկայում կատարվեց 102,1 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի թողարկումը 1955 թ. համեմատությամբ ավելացել է 5,9 տոկոսով։ Նավթագործները պլանից դուրս երկրին տվեցին 200 հազար տոննա նավթ։

Վերջին տարիների ընթացքում մեծ հաջողությունների են հասել նավթի հետախուզական խմբերը։ Նրանք հայտաբերել են նորանոր վայրեր, որտեղից այժմ օրական տասնյակ հազար տոննա նավթ է ստացվում։ Այժմ ծովից հանվող նավթը ընդհանուր հանույթի 30 տոկոսից ավելի է։ Այստեղ հորերը 1200—1800 մետր խորություն ունեն։

Անցյալ տարի իրենց պլանները հաջողությամբ կատարեցին նաև ռեսպուբլիկայի ծանր և թեթև արդյունաբերության աշխատողները։

1956 թ. գյուղատնտեսության ասպարեզում ռեսպուբլիկան 1940 թ. համեմատությամբ 2,3 անգամ ավելի աճ է ունեցել, իսկ 1950 թ. համեմատությամբ 68 հազար տոննա ավելի բամբակ հանձնեց պետությանը։ Բամբակի հանձնման պլանը կատարված է 109,9 տոկոսով, ծխախոտինը՝ 102,5, բանջարեղենինը՝ 107,5, թարմ մրգինը՝ 103,5 տոկոսով։

1956 թ. նոր հաջողություններ են ձեռք բերվել նաև անասնապահության զարգացման գործում։ Կաթի արտադրությունն ավելացել է 31,8 տոկոսով, մսինը՝ 8,6, բրդինը՝ 19, ձվինը՝ 21 տոկոսով։

Կուլտուրական ռևոլյուցիայի հաղթանակը Ադրբեջանում ամուր հիմքեր ստեղծեց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ծաղկման համար։ Միայն սովետական իշխանության օրոք էր, որ ադրբեջանական ժողովուրդը լայն հնարավորություններ ստացավ իր ազգային, տնտեսական, կուլտուրական և քաղաքական բարգավաճման համար։

digitised by A.R.A.R.@

Սովետական իշխանության առաջին իսկ օրից ռեսպուբլիկայում լայն
հնարավորություններ են ստեղծվել գիտության, լուսավորության և կուլտու-
րայի զարգացման համար: Այս կարճ ժամանակամիջոցում ադրբեջանական
ժողովուրդը տիրապետեց գիտության և կուլտուրայի բոլոր ճյուղերին:

Ռևոլյուցիայից առաջ ադրբեջանական բնակչության հիմնական մասը
անգրագետ էր, իսկ հիմա այստեղ միջոցառումներ են նշվում պարտադիր
միջնակարգ կրթություն մտցնելու համար:

Ներկայումս ռեսպուբլիկայի դպրոցներում սովորում են ավելի քան 600
հազար աշակերտներ: Այս տարի կառուցվելու են 11 դպրոցական նոր շենքեր:

Ռեսպուբլիկայում կան երեք տասնյակից ավելի ուսումնական բարձրա-
գույն հաստատություններ: Վերջին տարիների ընթացքում զգալի հաջողու-
թյուններ են ձեռք բերված կուլտուրայի, գրականության և արվեստի բնագա-
վառում: Ընդարձակվում է կուլտուր-լուսավորական հիմնարկների ցանցը քա-
ղաքներում և գյուղերում: Ներկայումս ռեսպուբլիկայում եղած 2394 գրադա-
րանները 11 միլիոնից ավելի գիրք ունեն: Վերջին երկու տարվա ընթացքում
գրադարանները պետական բյուջեի հաշվին ստացել են ավելի քան 2 միլիոն
գիրք: Վերջին 5 տարվա ընթացքում գյուղերում բացվել է մոտ 400 գրադա-
րան: Այժմ ռեսպուբլիկայում եղած 1381 ակումբներից 1129-ը գյուղական
շրջաններում են, բացի սրանից շրջաններում կա նաև 91 կուլտուրայի տուն:

Ռեսպուբլիկայի կինոցանցն ընդարձակվել է հատկապես վերջին հնգամ-
յակի ընթացքում: Այժմ քաղաքներում և գյուղերում կա 900 կինոսարքավո-
րում: Վեցերորդ հնգամյակում յուրաքանչյուր կոլտնտեսություն կունենա իր
կինոապարատը: Վերջին տարիների ընթացքում զգալի չափով ավելացել է կի-
նոնկարների արտադրությունը: Անցյալ տարի Բաքվի կինոստուդիան նկարեց
և էկրան հանեց երիտասարդ ռեժիսյորներ Լ. Սաֆարովի և Թաղիզադեի
«Բախտիյար» և «Գորուշ» գեղարվեստական ֆիլմերը: Կինոռեժիսյոր Սեյիդզա-
դեն նկարահանել է կոմպոզիտոր Ուզ. Հաջիբեկովի «Մաշտի իբատ» երաժըշ-
տական կոմեդիան: Ռեժիսյոր Ա. Գուլիևը նկարահանել է գրող Մեհտի Հու-
սեյնի «Գարա դաշլար» սցենարիան:

Բաքվի կինոստուդիան 1957 թ. կպատրաստի և էկրան կհանի նաև Դա-
ղըստանի հայտնի գրող Սուլեյման Ստալսկուն և Ադրբեջանի հերոս զավակ
պարտիզան Մեհդիյին նվիրված երկու գեղարվեստական նկարներ:

Նորանոր արժեքավոր աշխատություններ են ստեղծում նաև մեր կոմպո-
զիտորները, գրողները և նկարիչները: Ռեսպուբլիկայի աշխատավորությունը
մեծ ուշադրությամբ և հիացմունքով է ունկնդրում Ու. Հաջիբեկովի «Քյոր-
օղլի», «Լեյլի Մեջնուն», Մ. Մագոմաևի «Շահ Իսմայիլ», «Նարգիզ», երիտա-
սարդ կոմպոզիտորներից Ֆ. Ամիրովի «Սևիլ», Գ. Գարաևի և Հ. Հաջիևի «Վա-
թան», Գ. Գարաևի «Եդդի գոզալ», Ս. Հաջիբեկովի «Գյուլշան», Ս. Բաղիրբեյ-
լիյի «Գըզ գալասը» և այլ հաջողված գործերը:

Մ. Ազիզբեկովի անվան պետթատրոնը պատրաստել և ցուցադրել է մի
քանի ինքնուրույն պիեսներ: Երիտասարդ դրամատուրգներից Ի. Էֆենդիևի
«Աթանների ընտանիքը», Զ. Մեջնունբեկովի «Իլդըրըմ», Ի. Գասըմովի և
Հ. Սեյիդբեյլիի «Հեռավոր ափերում» պիեսները մեծ ուշադրության են արժա-
նացել դիտողների մոտ: Մի շարք արժեքավոր աշխատություններ են գրել
նաև երիտասարդ կոմպոզիտորներ՝ Գ. Գարաևը, Ջ. Հաջիևը, Թ. Գուլիևը,
Ս. Ռուստամովը, Ս. Ալեսկերովը, Գ. Հուսեյնլին և ուրիշները:



Արվեստի բնագավառում հետաքրքրական և չափազանց գովելի քայլերից
մեկն էլ այն է, որ եղբայրական ռեսպուբլիկաների արվեստագետների հետ
այժմ ամուր կապեր են ստեղծվել: Մ. Ֆ. Ախունդովի անվան օպերայի և
բալետի թատրոնը վերջին ժամանակներս պատրաստեց և բեմադրեց հայ կոմ-
պոզիտոր Ա. Տիգրանյանի «Անուշ» և վրացական կոմպոզիտոր Զ. Պալիաշ-
վիլիի «Դաիսի» կլասիկ օպերաները, որոնք դիտվեցին չափազանց մեծ հետա-
քըրքրությամբ: Հայաստանի և Վրաստանի ականավոր արտիստները եղել
են Բաքվում: Ադրբեջանական ՍՍՌ վաստակավոր արտիստներ Ֆ. Ախմեդո-
վան և Ա. Բ. Բունյաթզադեն Երևանում հանդես են եկել «Անուշ» օպերայում:

Հայ և ադրբեջանական ժողովուրդների բարեկամությունն ունի իր դա-
րավոր պատմությունը: Այս բարեկամական կապերը իրենց արտահայտու-
թյունն են գտել նաև արվեստի մեջ: Հեքիաթների, պատմվածքների, երգերի,
պարերի և այլնի մեջ մենք միշտ զգում ենք այդ բարեկամությունը: Սայաթ-
Նովայի վերին աստիճանի քնքշությամբ շնչող երգերը՝ «Սարը գալինները»,
«Արազբարիները», «Ուզունդարաները» և ուրիշ գործեր նույն հուզմունքով են
ընկալում հայ, ադրբեջանցի ունկնդիրները: Ադրբեջանական մեծ դրամատուրգ
Ջ. Ջաբարլին լավ է ասել, որ երկար տարիներ է, ինչ մեր ժողովուրդների
պըրուստը, գործը, հայացքը, ցավը, ուրախությունը մեկ է եղել: Հայ կլասիկ
Վարդան Այգեկցու և ադրբեջանական գրող Նիզամիի, Բուդաղ Ամթեսի և Նա-
սիմիի գրական գործունեությունների մեջ եղած մոտիկությունը բոլորին
հայտնի է:

Երկու ժողովուրդների կուլտուրական զարգացման գործում մեծ դեր է
խաղացել 19-րդ դարի առաջավոր իդեաների տարածող Խ. Աբովյանի և
Մ. Ֆ. Ախունդովի մտերմությունը:

Ադրբեջանում արագ թափով զարգանում է նաև նկարչությունը: Մ. Աբ-
դուլաևի, Լ. Քարիմովի և մի շարք ուրիշների աշխատությունները ցուցադըր-
վում են Բաքվում, Երևանում, Մոսկվայում և այլ քաղաքներում:

Պարտիան և կառավարությունը ինչպես միշտ, այնպես էլ հիմա չափա-
զանց մեծ ուշադրություն են դարձնում ազգաբնակչության բնակարանային
պայմանների բարելավման գործին: Հինգերորդ հնգամյակի ընթացքում ռես-
պուբլիկայի միայն քաղաքներում կառուցվել է 1.412 հազար քառ. մետր բնա-
կելի տարածություն: Բացի դրանից 1951—1955 թթ. կառուցված են նաև 44
հազար բնակելի տներ կոլտնտեսային գյուղի աշխատավորների համար:

Պարտիայի Կենտկոմի 1957 թ. Փետրվարյան պլենումի որոշումները նոր
և պատասխանատու խնդիրներ են դնում արդյունաբերության և շինարարու-
թյան ղեկավարման բնագավառում: Կենտկոմի պլենումի որոշումները ինչպես
մեր լայնածավալ երկրի մյուս վայրերում, այնպես էլ Ադրբեջանում ստեղծա-
գործական, աշխատանքային խանդավառություն է առաջացրել աշխատավո-
րության մեջ:

Ինչպես ամեն տարի, այնպես և այս տարի Ադրբեջանի աշխատավորները
ռեսպուբլիկայում սովետական կարգերի հաստատման տարեդարձը նշում են
համաժողովրդական մայիսմեկյան տոնի հետ: Ռեսպուբլիկայի բանվորներն
ու կոլտնտեսականները, գիտության և կուլտուրայի բնագավառի աշխատող-
ները մեծ սխրագործություններով են դիմավորում նաև մայիսմեկյան տոնը:
Այժմ մեր ռեսպուբլիկայի աշխատողները եռանդուն աշխատանք են սկսել

digitised by A.R.A.R.@

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի տոնակա-
տարությունը արժանավայել դիմավորելու նշանաբանով։
Ներկայումս մեր հիմնական խնդիրն է՝ ռեսպուբլիկայի աշխատավորու-
թյան այս խանդավառությունը ճիշտ օգտագործելով՝ հնգամյակի երկրորդ
տարվա պլանները կատարել ժամկետից շուտ և բարձր որակով։
1957 թ. ռեսպուբլիկայի նավթագործների առաջ մեծ և պատասխանատու
խնդիր է դրված։ Նրանք պետք է այս տարի պետությանը հանձնեն անհամե-
մատ ավելի շատ նավթ, քան անցած տարի։ Միայն այս տարի պետք է ար-
տադրվի 3 միլիարդ 200 միլիոն խ. մ. գազ, որը 1956 թ. համեմատությամբ
ավելի է 1 միլիարդ 100 միլիոն խմ-ով։ Այս պատասխանատու խնդիրը կեն-
սագործելու համար ռեսպուբլիկայի նավթարդյունաբերության աշխատողները
պետք է մոբիլիզացնեն իրենց բոլոր ուժերը, ճիշտ կազմակերպեն տեխնի-
կայի, սարքավորումների անխափան աշխատանքը։
Ինչպես հայտնի է, Ադրբեջանում նավթարդյունաբերությանը զուգընթաց
զարգանում և աճում են նաև ծանր ինդուստրիայի մյուս ճյուղերը։ Այս ճյու-
ղերի պարտիական և սովետական կազմակերպությունների առաջնահերթ խըն-
դիրն է՝ ձեռնարկել բոլոր միջոցառումները 1957 թ. պետական առաջադրանք-
ներն անթերի կատարելու համար։
Ժողովրդական տնտեսության աճը և աշխատավորների նյութական կյան-
քի պայմանների բարելավումն ապահովելու համար մեծ գործեր են կատա-
րելու նաև ռեսպուբլիկայի շինարարական կազմակերպությունները։ Պար-
տիայի պահանջի համաձայն 1957 թ. մեծ և պատասխանատու խնդիր է դըր-
ված նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բնագավառի աշխատողների
առաջ։ Այս տարին պետք է լինի շրջադարձային տարի բամբակագործության
զարգացման բնագավառում։ Ռեսպուբլիկայի բամբակագործները 1957 թ. պե-
տությանը հանձնելու են ավելի քան 400 հազար տոննա բամբակ։ Բամբա-
կագործները մոբիլիզացնելով իրենց բոլոր ուժերը, մինչև Հոկտեմբերյան
ռևոլյուցիայի տարեդարձը կկատարեն այս պատասխանատու առաջա-
դրանքը։
Ռեսպուբլիկայում գյուղատնտեսական կուլտուրաների մոտ 60 տոկոսը
կազմում է հացահատիկային կուլտուրան։ Այս տարի յուրաքանչյուր հեկտա-
րից պետք է ստացվի միջին հաշվով 12 ցենտներ, իսկ ջրովի տարածություն-
ներից՝ 18 ցենտներ ցորեն, 30 ցենտներ բրինձ, 25 ցենտներ եգիպտացորեն։
Հաստատված պլանի համաձայն այս տարի ռեսպուբլիկայում զգալի չա-
փով աճելու է նաև այգեգործությունը։ Կոլտնտեսությունները և սովետական
տնտեսությունները լուրջ աշխատանք կկատարեն խաղողի և այլ նոր այգիներ
տնկելու համար։
Գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովելու համար պետք է
կազմակերպորեն-տնտեսականորեն ամրապնդել կոլտնտեսությունները, լայն
կերպով ծավալել սոցիալիստական մրցությունը, օգտագործել առաջավորների
փորձը՝ գյուղատնտեսության վերելքն ապահովելու համար։
1957 թ. ռեսպուբլիկայի առաջ կանգնած բոլոր խնդիրների պատվով կա-
տարումը մեր ամենաթանկարժեք նվերը կլինի Հոկտեմբերյան Սոցիալիստա-
կան Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձին։

---

# ԳՈՐԾԻ ԴՆԵԼ ԱՆԱՍՆԱԲՈՒԾԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ԱՎԵԼԱՑՄԱՆ ՌԵԶԵՐՎՆԵՐԸ

Ա. ԱՅՐՈՒՄՅԱՆ

Հայաստանի գյուղատնտեսության աշխատավորները իրականացնելով
պարտիայի և կառավարության որոշումները՝ ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբեր-
յան պլենումից հետո անցած ժամանակամիջոցում անասնաբուծական մթերք-
ների արտադրությունն ավելացնելու գործում զգալի հաջողությունների են հա-
սել։ 1953 թվականի համեմատությամբ 1956 թվականին ռեսպուբլիկայում
մսի արտադրությունն ավելացել է 11 տոկոսով, կաթինը՝ 30, բրդինը՝ 15,
ձվինը՝ 24 տոկոսով։
Անասնաբուծության ապրանքային արտադրանքի աճը և մթերման ու
գնումների պետական գների բարձրացումը զգալիորեն ավելացրին
կոլտնտեսությունների դրամական եկամուտները։ Հայաստանի կոլտնտեսու-
թյուններում դրամական եկամուտների ընդհանուր գումարի մեջ անասնաբու-
ծությունից ստացվող եկամտի տեսակարար կշիռը 1953 թվականին 30 տոկո-
սից բարձրանալով՝ 1955 թվականին հասել է 39,1 տոկոսի։
Սակայն, Հայկական ՍՍՌ-ում անասնաբուծական մթերքների արտադրու-
թյան մակարդակը դեռ բավարար չէ և չի գոհացնում բնակչության պահանջ-
մունքները։
1955—1956 տնտեսական տարում տնտեսությունների բոլոր կատեգո-
րիաների գծով մսի արտադրությունը (սպանդանոցային քաշով) կազմել է
28,4 հազար տոննա (չհաշված անասունների քաշի տարեկան վերաճը, որ
միայն կոլտնտեսություններում կենդանի քաշով կազմել է 4.300 տոն-
նա), կաթինը՝ 243,8 հազար տոննա, բրդինը՝ 2,888 տոննա, ձվինը՝ 96,2 մի-
լիոն հատ։ Գյուղատնտեսական հողատարածությունների 100 հեկտարի հաշ-
վով անասնաբուծական մթերքների արտադրությունը կազմել է մսինը՝ 18,7
ցենտներ (սպանդանոցային քաշով), կաթինը՝ 161 ցենտներ, բրդինը՝ 191
կիլոգրամ, ձվինը (100 հեկտար հացահատիկային կուլտուրաների հաշվով)
34,3 հազար հատ։
Անասնաբուծական մթերքների արտադրության մակարդակը ռեսպուբլի-
կայի շրջանների միջև շատ անհամաչափ է։
Հայկական ՍՍՌ-ն ունենալով 29,8 հազար քառակուսի կիլոմետր տարա-
ծություն՝ աչքի է ընկնում բացառիկ ուղղահայաց զոնալությամբ։ Ռեսպուբլի-
կայի տերիտորիայում խիստ բազմազան բնական պայմաններ կան, որը և
նշանակալից չափով արտահայտվել է գյուղատնտեսական արտադրության
տեղաբաշխման ու շրջանների մասնագիտացման գործում։
առանձին ճյուղերի գոյություն ունեցող տեղաբաշխման ու շրջանների մաս-
նագիտացման գործում։

digitised by A.R.A.R.@

Հաշվի առնելով բնական ու տնտեսական պայմանները՝ Հայկական ՍՍՌ-ում առանձնացված են 9 գյուղատնտեսական գոտիներ, որոնց կազմի մեջ մտնում են հետևյալ վարչական շրջանները. Արարատյան դաշտավայր — Արտաշատի, Վեդու, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Շահումյանի շրջանները, Արարատյան դաշտի նախալեռնային գոտի — Կոտայքի, Աշտարակի, Թալինի շրջանները, Կենտրոնական գոտի — Ախտայի, Ապարանի շրջանները, Սևանի ավազան — Սևանի, Նոր Բայազետի, Մարտունու, Բասարգեչարի, Կրասնոսելսկի շրջանները, Հյուսիս-արևելյան — Իջևանի, Շամշադինի, Նոյեմբերյանի, Ալավերդու շրջանները, Լոռի-Փամբակ — Կիրովականի, Ստեփանավանի, Կալինինոյի շրջանները, Շիրակ — Աղինի, Ախուրյանի, Արթիկի, Սպիտակի, Ամասիայի, Ղուկասյանի շրջանները, Դարալագյազ — Միկոյանի, Ազիզբեկովի շրջանները, Զանգեզուր — Սիսիանի, Գորիսի, Ղափանի. Մեղրու շրջանները։

Թե անասնաբուծական մթերքների արտադրության գծով ինչպիսի ցուցանիշների են հասել ռեսպուբլիկայի բոլոր կատեգորիայի տնտեսությունները 1956 թվականին ըստ գյուղատնտեսական գոտիների՝ հողային տարածությունների յուրաքանչյուր 100 հեկտարին ընկնող չափերով, երևում է հետևյալ աղյուսակից.

| Գյուղատնտեսական գոտիներ | Միս (սպանդ. քաշ. ցենտներով) | Կաթ (ցենտներով) | Բուրդ (կիլոգրամով) | Ձու (հազար հատով) |
|---|---|---|---|---|
| 1. Արարատյան դաշտավայր | 29,6 | 240,0 | 233 | 125,3 |
| 2. Նախալեռնային գոտի | 15,9 | 108,9 | 153 | 27,5 |
| 3. Կենտրոնական » | 18,3 | 167,2 | 2 4 | 22,1 |
| 4. Սևանի ավազան | 16,3 | 151,3 | 196 | 23,6 |
| 5. Հյուսիսային արևելյան շրջաններ | 19,8 | 171,5 | 209 | 53,7 |
| 6. Լոռի-Փամբակ | 15,8 | 185,5 | 106 | 52,3 |
| 7. Շ ի ր ա կ | 18,5 | 172,9 | 222 | 19,2 |
| 8. Դարալագյազ | 14,9 | 101,4 | 148 | 22,0 |
| 9. Զանգեզուր | 17,4 | 128,3 | 193 | 23,2 |
| Միջինը Հայկական ՍՍՌ-ում՝ | 18,7 | 161,0 | 191 | 34,3 |

Այս տվյալներից երևում է, որ հողային տարածությունների յուրաքանչյուր 100 հեկտարի հաշվով անասնաբուծական մթերքների առավել մեծ քանակություն ապահովում են Արարատյան դաշտավայրի շրջանները, որոնք ռեսպուբլիկայի միջին մակարդակը գերազանցում են մսի գծով՝ 58,3 տոկոսով, կաթի՝ 49,1, բրդի՝ 22 տոկոսով, ձվինը՝ համարյա 4 անգամ։

Արարատյան դաշտավայրի շրջանների մեջ Շահումյանի շրջանում յուրաքանչյուր 100 հեկտար հողային տարածության դիմաց մսի արտադրությունը կազմել է 57,7 ցենտներ, կաթինը՝ 444,0 ցենտներ, բրդինը՝ 329 կգ., ձվինը՝ 304 հազար հատ։

Յուրաքանչյուր 100 հեկտար հողային տարածությանն ընկնող անասնաբուծական մթերքների արտադրության տեսակետից ռեսպուբլիկայում ամենից ավելի ցածր ցուցանիշներ են տվել նախալեռնային գոտու, Սևանի ավազանի և Դարալագյազի շրջանները, որոնց մեջ առավել ևս ցածր ցուցանիշներ ունեն Թալինի, Բասարգեչարի և Ազիզբեկովի շրջանները։

Հայաստանի երկու գյուղատնտեսական գոտիների՝ Արարատյան դաշտավայրի և Սևանի ավազանի գյուղատնտեսական մթերքների արտադրու-



թյան մակարդակի միջև եղած տարբերությունը կազմում է մսի գծով՝ 82 տոկոս, կաթի՝ 59, բրդի՝ 19 տոկոս և ձվի գծով ավելի քան 5 անգամ։

Հայաստանի շրջանների ընդհանուր թվից ռեսպուբլիկական միջինից ավելի ցածր ցուցանիշներ ունեն մսի գծով 19 շրջան, կաթի՝ 15, բրդի՝ 10 և ձվի գծով՝ 15 շրջան։

Այս տվյալներն ակնառու կերպով ցույց են տալիս, որ շատ շրջաններում հողային տարածություններն ամենևին էլ ինտենսիվ չեն օգտագործվում անասնաբուծության զարգացման և նրա մթերատվության բարձրացման իմաստով։ Ճիշտ է, հողային տարածությունների յուրաքանչյուր 100 հեկտարի հաշվով մսի, կաթի, բրդի ու ձվի արտադրությունը Հայկական ՍՍՌ-ում զգալիորեն գերազանցում է միութենական համապատասխան միջին ցուցանիշները, սակայն բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի հաշվով մեզ մոտ մսի, կաթի ու ձվի արտադրությունը դեռևս շատ ետ է մնում միութենական միջին ցուցանիշներից։

Ի՞նչ պատճառներով Հայկական ՍՍՌ-ում անասնաբուծական մթերքների արտադրությունը ետ է մնում պահանջմունքի չափերից։ Այդ պատճառները շատ են։ Քննենք դրանցից մի քանիսը։

Մսի ու կաթի արտադրության ցածր մակարդակը ամենից առաջ հետևանք է այն բանի, որ մի շարք շրջաններում անբավարար է աճում կովերի գլխաքանակը։ Խոշոր եղջերավոր անասունների նախիրի մեջ կովերի տեսակարար կշիռը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում 1956 թվականին կազմել է ընդամենը 27,4 տոկոս։ Կաթնատու անասնաբուծության զարգացման համար բացառիկ բարենպաստ պայմաններ ունեցող մի շարք շրջաններում և ամենից առաջ Մարտունու, Բասարգեչարի, Ախտայի, Կրասնոսելսկի ու մի քանի այլ շրջաններում նախիրների մեջ կովերի թիվը մեկ քառորդից էլ պակաս է կազմում։ Այս դրությունը բացատրվում է նրանով, որ տեղերում կովերի խոտանման տոկոսը մեծ է, անբավարար է ընթանում երկու տարեկանից բարձր երինջների զուգավորման նախապատրաստումն ու ընդրկումը։

Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման մի լուրջ խոչընդոտ էլ հոտի վերարտադրության ցածր ցուցանիշներն են։ Վերջին 10 տարվա ընթացքում յուրաքանչյուր 100 գլուխ մայրական կազմից ստացվել է 70 հորթ, 75 գառ և 410 խոճկոր։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները պակաս միս են ստանում, որով և իրենց եկամուտները նվազեցնում են այն պատճառով, որ տեղերում անբավարար են կազմակերպում անասունների գիրացումը և անթույլատրելի չափով մեծ քանակությամբ մատղաշներ են հանձնվում մթերման։ Այդ հաստատելու համար բավական է նշել, որ վերջին երեք տարվա ընթացքում պարտադիր հանձնումների և գնումների կարգով պետությանը վաճառված անասուններից խոշոր եղջերավորների միայն 1,7 տոկոսը և մանր եղջերավորների 15 տոկոսը միջինից բարձր գիրություն է ունեցել, այնինչ խոշոր եղջերավորների 49 տոկոսը և ոչխարների ու այծերի 28 տոկոսը միջինից ցածր գիրություն է ունեցել։ Մյուս կողմից պետությանը վաճառված խոշոր եղջերավոր անասունների մեջ մատղաշները կազմել են 41,8—51,5 տոկոս։

Ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններում ու սովետական տնտեսու-

digitised by A.R.A.R.@

թյուններում դեռևս անբավարար են օգտագործվում խողաբուծության առավելությունները մսի արտադրությունն ավելացնելու գործում։ Բավական է ասել, որ մսի ընդհանուր արտադրության մեջ խոզի միսը կազմում է ընդամենը 9 տոկոս։ Մինչդեռ Ստեփանավանի, Ղափանի, Շամշադինի և Շահումյանի շրջաններում այդ տոկոսը 20-ից էլ անցնում է, թեև այս էլ բավարար համարել չի կարելի։ Դրությունն զգալիորեն ավելի վատ է թռչունի մսի արտադրության գործում, որի տեսակարար կշիռը կազմում է 0,5 տոկոսից էլ պակաս։

Անասնաբուծական մթերքների արտադրության մակարդակը ցածր լինելու գլխավոր պատճառներից մեկն էլ այն է, որ կերի բազան ետ է մնում եղած պահանջից։ Ռեսպուբլիկայում կերի արտադրության գործում խոշոր փոփոխություններ են տեղի ունեցել։ Սկսած 1954 թվականից կոլտնտեսություններում լայնորեն սկսել են արմատավորել եգիպտացորենը։ 1956 թվականին եգիպտացորենի ցանքերի տարածությունը հասել է 17,5 հազար հեկտարի։ Չհաշված հացաֆուրաժային կուլտուրաները, անցյալ տարի Հայաստանի կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում ցանովի կերային կուլտուրաներով զբաղված է եղել 97,7 հազար հեկտար տարածություն, կամ բոլոր վարելահողերի 18,4 տոկոսը։ Լուրջ ուշադրություն է հատկացվում կերի սիլոսացմանը։ 1956 թվականին կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում 315.000 տոննա սիլոս է պատրաստվել ի դիմաց 1953 թվականի 210 հազար տոննայի։

Չնայած այս ամենին՝ անասունները մսուրային կերակրման ժամանակաշրջանում միանգամայն անբավարար են ապահովված կոշտ, հյութալի և խտացրած կերով։ Մսուրային և բուն արոտային շրջանների կերի միջև գոյություն ունի զգալի անհամապատասխանություն։ 1956 թվականին ռեսպուբլիկայի բոլոր կերային ռեսուրսներից ամառային արոտներին բաժին է ընկել մոտավորապես կեսը։ Եթե նկատի ունենանք, որ մսուրային ժամանակաշրջանը շատ շրջաններում սովորաբար տևում է 180—210 օր, իսկ բանող անասունների գերակշռող մասի համար՝ 300 օր, ապա ավելի ևս պարզ կլինի, թե ինչպիսի անհամապատասխանություն գոյություն ունի արոտային ու մսուրային շրջանների կերային ռեսուրսների միջև։ 1956—1957 թվականի մսուրային ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում յուրաքանչյուր մի գլուխ անասունի համար (փոխարկված խոշոր եղջերավորի) միջին հաշվով առանձնացված է 680 կերի միավոր (հաշված կոշտ, հյութալի և խտացրած կերերը), որ կազմում է օրական մոտ 3,5 կերի միավոր։ Ահա թե ինչու ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններում անասնաբուծության մթերատվությունը ձմեռվա մսուրային շրջանում խիստ նվազում է։

Վերջապես, անասնաբուծական մթերքների արտադրության մակարդակն անբավարար լինելու լուրջ պատճառներից մեկն էլ այն է, որ ռեսպուբլիկայի շատ շրջաններում գոյություն ունեցող գյուղատնտեսական ճյուղերի տեղաբաշխումն ու զուգակցումը դեռևս լիովին չի համապատասխանում այն պահանջներին, որոնք կապահովեին յուրաքանչյուր գյուղատնտեսական գոտու, շրջանի, կոլտնտեսության ու սովետական տնտեսության բնական ու տնտեսական պայմանների առավել ռացիոնալ օգտագործումը։ Այսպես, սովորաբար խոշոր քաղաքների ու արդյունաբերական կենտրոնների բնակչությանը կաթով, բանջարեղենով ու կարտոֆիլով ապահովող գոտի են հանդիսանում քաղաքամերձ շրջանները։ ՍՄԿԿ XX համագումարի դիրեկտիվներում, իսկ



դրանից առաջ էլ՝ Պարտիայի XVIII—XIX համագումարների և այլ որոշումներում նշված է, որ անհրաժեշտ է խոշոր քաղաքների ու արդյունաբերական կենտրոնների շուրջն ստեղծել կաթնա-բանջարանոցային գոտիներ։ Վերջին տարիներս ձեռք առած կազմակերպական միջոցառումների հետևանքով նկատելիորեն բարելավվել է Երևան քաղաքի մատակարարումը կաթով և բանջարեղենով։

Սակայն, քաղաքամերձ գոտու կոլտնտեսություններում անասնաբուծության մասնագիտացումը չի համապատասխանում քաղաքի բնակչության պահանջներին։ Սա հատկապես վերաբերում է Արարատյան դաշտավայրի, Կոտայքի, Աշտարակի ու Ախտայի շրջանների կոլտնտեսությունների մեծ մասին։ Այդ շրջանների կոլտնտեսություններում անասնաբուծության մեջ կաթնատնտեսական ուղղությունն անբավարար է արտահայտված։ Խոշոր եղջերավոր անասունների նախիրների մեջ կովերի տեսակարար կշիռը կազմում է 33,9 տոկոս, իսկ Կոտայքի, Աշտարակի ու Ախտայի շրջանների կոլտնտեսություններում՝ դրանից էլ պակաս։ Այնինչ ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշմամբ քաղաքամերձ գոտում եղած կաթնապրանքային ֆերմաներում կովերի տեսակարար կշիռը 60 տոկոսից պակաս չպետք է լինի։

Քաղաքամերձ գոտու անասնաբուծության համար ո՛չ բնորոշ վիճակ է նաև այն, որ Արարատյան դաշտավայրի շրջաններում և Կոտայքի ու Աշտարակի շրջանների ցածրադիր մասերում ոչխարների շատ կուտակում կա։ Եթե ռեսպուբլիկայում 100 հեկտար հողային տարածությանը միջին հաշվով ընկնում է 123 մանր եղջերավոր անասուն, ապա Արարատյան դաշտավայրի շրջաններում այդ թիվը հասնում է 165-ի, ըստ որում՝ Շահումյանի շրջանում 177, իսկ Հոկտեմբերյանի շրջանում՝ 196 գլուխ։

Արարատյան դաշտավայրում ոչխարաբուծության զարգացմանը նպաստել է այդ շրջանների սահմաններում ձմեռային արոտների առկայությունը և կոլտնտեսություններին ամառային արոտներ հատկացնելը ռեսպուբլիկայի
այլ շրջաններում։ Սակայն, ջրաշինարարական աշխատանքների մեծ պլանի
սիստեմատիկ իրականացմանը զուգընթաց այդ շրջաններում ոչխարաբուծու-
թյան կերային բազան տարեցտարի նեղանում է և մյուս կողմից այդ գոտում
ընդարձակվում է խաղողագործությունը, պտղաբուծությունը և բանջարաբու-
ծությունը։ Այս փոփոխությունները, գարնանային ու աշնանային գյուղամերձ
արոտների բացակայությունը, ինչպես և կաթնատու անասնաբուծության ու
խոզաբուծության լուրջ զարգացման կարևորությունը անհրաժեշտ են դարձ-
նում վերանայել անասնաբուծության ճյուղերի գոյություն ունեցող մասնա-
գիտացումն ու զուգակցումը Արարատյան դաշտավայրի շրջաններում և Կո-
տայքի ու Աշտարակի շրջանների ցածրադիր մասերում։ Չի կարելի նաև հաշ-
վի չառնել, որ քաղաքամերձ գոտու վերոհիշյալ շրջաններում ոչխարաբուծու-
թյան բարձր խտությունը լուրջ վնաս է հասցնում խաղողագործության զար-
գացմանը։ Դրա համար էլ անխուսափելի է մանր եղջերավոր անասունների
մի մասի աշխարհագրական տեղափոխումը, առաջին հերթին Արարատյան
հարթավայրի շատ կոլտնտեսություններից և Կոտայքի ու Աշտարակի շրջան-
ների ցածրադիր մասերից դեպի լեռնային շրջանների կոլտնտեսությունները։
Այս գործը պետք է այնպես կատարել, որ ռեսպուբլիկայի կոլտնտեսություն-
ներում ոչխարների գլխաքանակի նվազում չթույլատրվի և ապահովվի բնա-
կան ու տնտեսական պայմանների նպատակահարմար օգտագործումը։ Ազատ-

digitised by A.R.A.R.@

ված ձմեռային արոտների մի մասը նպատակահարմար է ամրացնել Աղինի,
Թալինի, Ապարանի, Կոտայքի (Վերին Ենթադոտու), Ախտայի և մի քանի այլ
շրջանների կոլտնտեսություններին։ Ձմեռային արոտները հատկացնելը, երբ
շրջանի սահմանների ներսում ամառային և գարնան-աշնանային արոտների
լայն տարածություններ կան, լավ բազա կհանդիսանա հիշյալ շրջաններում
եկամտաբեր ոչխարաբուծություն զարգացնելու համար։

Ոչխարների գլխաքանակի մի մասի այսպիսի տեղափոխությունը և քաղա-
քամերձ գոտու կոլտնտեսություններում կաթնատու անասնաբուծության
զգալի զարգացումը կպահանջի վերանայել հիշյալ շրջանների անասնաբու-
ծական մթերքների պարտադիր հանձնումների նորմաները՝ բրդի հանձնման
նորմաներն իջեցնելու և կաթի հանձնման նորմաներն ավելացնելու իմաստով։

Ռեսպուբլիկայի բազմաթիվ նախալեռնային ու լեռնային շրջաններում
գյուղատնտեսական արտադրության ստեղծված մասնագիտացման թերու-
թյունն է հանդիսանում անասնաբուծության ու դաշտավարության անբավա-
րար զուգակցումը։ Վերն արդեն նշեցինք մսուրային ու արոտային ժամանա-
կաշրջանների կերային ռեսուրսների անհամապատասխանությունը։ Կերի բա-
զայի անբավարար կազմակերպումն ըստ էության անուղղակիորեն նվա-
զեցնում է ամառային արոտների բարձր էֆեկտիվությունը, որովհետև արո-
տային շրջանի սկզբնական ժամանակամիջոցում կերը ծախսվում է անասուն-
ների կշռի ու մթերատվության կորուստի վերականգնման վրա։ Կերի արտա-
դրության անբավարար մակարդակը նաև հնարավորություն չի տալիս, որ
քաղաքամերձ շրջանների կոլտնտեսություններում կովերի սեզոնային ծնից
անցնեն կլոր տարվա ծնին, մի բան, որ անհրաժեշտ է ոչ միայն բնակչու-
թյանը համաչափ կերպով կաթ ու թարմ կաթնամթերք մատակարարելու գործն
ապահովելու համար, այլև անասնաբուծական ֆերմաներում աշխատանքն
ավելի լավ կազմակերպելու և քաղաքային կաթնագործարանների աշխա-
տանքն ապահովելու իմաստով։

Մեր խնդիրն է ավելի նպատակահարմար օգտագործել բնական ու տըն-
տեսական պայմանները և յուրաքանչյուր շրջանում, կոլտնտեսությունում ու
սովետական տնտեսությունում ապահովել գյուղատնտեսական արտադրու-
թյան ճյուղերի այնպիսի զարգացում ու զուգակցում, որոնց համար առավել
նպաստավոր պայմաններ կան։

***

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման վեցերորդ հնգամյակի
վերաբերյալ ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվներում կոնկրետ առաջադրանք-
ներ են տրված Հայկական ՍՍՌ-ում գյուղատնտեսական մթերքների, մասնա-
վորապես անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման մասին։
Այդ առաջադրանքների հաջող իրականացման համար անհրաժեշտ պայման է
հանդիսանում գյուղատնտեսական արտադրության առանձին ճյուղերի ճիշտ
տեղաբաշխումն ու շրջանների մասնագիտացումը՝ հաշվի առնելով յուրաքան-
չյուր շրջանի, կոլտնտեսության ու սովետական տնտեսության բնական և
տնտեսական պայմանները։ Առանց սրա չի կարելի իրականացնել աշխա-
տանքի ճիշտ աշխարհագրական բաժանում և գյուղատնտեսական արտադրու-
թյան առանձին ճյուղերի նպատակահարմար տեղաբաշխում։ Չի կարելի նաև



ապահովել Հայկական ՍՍՌ արդյունավետ մասնակցությունը ՍՍՌՄ-ում գյու-
ղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու գործում։

ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվներում խնդիր է դրված՝ «Ապահովել
գյուղատնտեսության առանձին ճյուղերի տնտեսական տեսակետից նպատա-
կահարմար տեղաբաշխումը և երկրագործության ու անասնաբուծության մաս-
նագիտացումը երկրի շրջաններում՝ հաշվի առնելով յուրաքանչյուր շրջանի,
իսկ շրջանում՝ յուրաքանչյուր կոլտնտեսության և սովետական տնտեսության
բնական ու տնտեսական պայմանները, նկատի ունենալով 100 հեկտար հո-
ղատարածություններից ստացվող արտադրանքի խիստ ավելացումը՝ աշխա-
տանքի և միջոցների նվազագույն ծախսումով»։

Պարտիայի այս պահանջը և տնտեսության պլանավորման նոր կարգը
նպատակ ունեն ամեն կերպ ծավալել կոլտնտեսականների և գյուղատնտե-
սության բոլոր աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը
գյուղատնտեսական արտադրության վերելքի և կոլտնտեսությունների, ՄՏ
կայանների ու սովետական տնտեսությունների աշխատանքի հետագա բարե-
լավման գործում։

Աշխատանքի և նյութական միջոցների նվազագույն ծախսումներով
առավել մեծ քանակությամբ գյուղատնտեսական մթերքներ ստանալու հա-
մար անհրաժեշտ է, որ գյուղատնտեսական արտադրության յուրաքանչյուր
ճյուղը տեղաբաշխված լինի այնտեղ, որտեղ բնական ու տնտեսական պայ-
մաններն առավել բարենպաստ են դրա համար։ Միանգամայն հասկանալի է,
որ ըստ շրջանների, կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների
գյուղատնտեսական արտադրության տեղաբաշխումն ու մասնագիտացումը
պետք է ելնի առաջին հերթին ժողովրդական տնտեսության պահանջներից։
Այսպիսով, ուրեմն, խոսքը վերաբերում է արտադրանքի այն տեսակների մա-
կարդակին, որոնք անհրաժեշտ են պետությանը և օգտակար են կոլտնտեսու-
թյուններին ու սովետական տնտեսություններին։

Նախկին պրակտիկան, երբ անհրաժեշտ էր համարվում, որ յուրաքան-
չյուր ռեսպուբլիկա իր մոտ արտադրի գյուղատնտեսական բոլոր հիմնական
մթերքները, չի համապատասխանում յուրաքանչյուր 100 հեկտար հողային
տարածության հաշվով նվազագույն ծախսումներով առավելագույն քանակով
մթերք ստանալու խնդրին։ Որոշ չափով այդ պրակտիկայով պիտի բացատրել
անասնաբուծական մթերքների արտադրության անբավարար մակարդակը։

Անասնաբուծության զարգացման վերը նշած թերությունների վերլուծու-
թյունը և գյուղատնտեսության այդ կենսականորեն կարևոր ճյուղի զարգաց-
ման համար բացառիկ բարենպաստ պայմանների առկայությունը և ամենից
առաջ բնական արոտավայրերի և մարգագետինների ընդհանուր հողատարա-
ծության մեջ բարձր տեսակարար կշիռը ցայտուն ապացույց են, որ ռեսպուբ-
լիկան անասնաբուծական մթերքների ավելացման համար խոշոր ռեզերվներ
ունի։ Հայկական ՍՍՌ-ում 100 հեկտար վարելահողին ընկնում է 170 հեկտար
արոտ ու բնական խոտհարք։ Արոտային կերով անասունների լավ ապահով-
վածությունը նպաստում է անասնաբուծական մթերքների արտադրությանը՝
համեմատաբար ցածր ինքնարժեքով։

ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվներում խնդիր է դրված՝ Հայկական
ՍՍՌՄ-ում մսի արտադրությունը 1960 թվականին 1955 թվականի համեմա-
տությամբ ավելացնել 2,1 անգամ։ Սա նշանակում է, որ 1960 թվականին մսի



digitised by A.R.A.R.@

արտադրությունը սպանդանոցային քաշով պիտի հասցվի 59 հազար տոննայի, կամ հողային տարածությունների 100 հեկտարի հաշվով՝ 39 ցենտների։ Հաշվի առնելով ռեսպուբլիկայի բնակչության հետագա աճը, պարտավոր առաջադրանքի հաջող կատարումը կապահովի մսի արտադրության ավելացումը յուրաքանչյուր շնչին 33 կիլոգրամի հաշվով, որը դեռ ամենևին չի ապահովի ռեսպուբլիկայի բնակչության պահանջներն ըստ գիտականորեն հիմնավորված նորմաների՝ սեփական արտադրության հաշվին։ Այս հանգամանքն է՛լ ավելի մեծ պատասխանատվություն է դնում գյուղատնտեսության բոլոր աշխատավորների վրա և նրանց պարտավորեցնում է իրենց բոլոր ջանքերն ու գիտելիքները գործադրել մսի արտադրության առաջադրանքների հաջող կատարման ու գերակատարման համար։

Հայկական ՍՍՌ-ում մսի արտադրության խիստ ավելացումը պետք է ապահովվի ինչպես ի հաշիվ խոզի մսի արտադրության արագ աճման, այնպես էլ այլ տեսակի անասունների և թռչունի մսի արտադրության ընդլայնման։ Հենց միայն հոտի վերարտադրության ցուցանիշների բարելավումով կարելի է զգալի չափով ավելացնել մսի քանակը։ Այսպես, յուրաքանչյուր 100 գլուխ մայր անասունից 85 հորթ, 90 գառ և 1000 խոճկոր ստանալու դեպքում ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները լրացուցիչ կարող են ստանալ ավելի քան 11 հազար գլուխ հորթ, 116 հազար գառ և ավելի քան 100 հազար խոճկոր։ Տեղին է նշել, որ Սևանի, Հոկտեմբերյանի, Էջմիածնի ու Շահումյանի շրջանների շատ կոլտնտեսություններում յուրաքանչյուր 100 գլուխ կովից ստանում են 87—92 հորթ, Գորիսի շրջանի շատ կոլտնտեսություններում յուրաքանչյուր 100 գլուխ մայր ոչխարից ստանում են 95 գառ, իսկ Խնձորեսկ գյուղում՝ 105—110 գառ, և Շահումյանի շրջանի շատ կոլտնտեսություններում յուրաքանչյուր 100 մայր խոզից ստանում են 1600—1800 խոճկոր, իսկ Հաղթանակ գյուղի կոլտնտեսությունում՝ նույնիսկ 2520 խոճկոր։

Անասունների անկման տոկոսը հենց միայն կիսով չափ նվազեցնելու դեպքում անցյալ տարի հնարավոր կլիներ լրացուցիչ պահպանել մոտ 10 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 60 հազար գլուխ մանր եղջերավոր և 13 հազար գլուխ խոզ։ Իսկ որ այդ հնարավոր է, ցույց է տալիս Շահումյանի շրջանի կոլտնտեսությունների օրինակը, որտեղ անցյալ տարի խոշոր եղջերավոր անասունների անկումը կազմել է 0,9 տոկոս, ի դիմաց ռեսպուբլիկայի 4,5 տոկոս միջինի, ոչխարներինը՝ 2,4 տոկոս՝ ի դիմաց 6,9 տոկոս միջինի և խոզերինը 6 տոկոս՝ ի դիմաց 14,8 տոկոս միջինի։ Հոտի վերարտադրության բարելավումով ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները և սովետական տնտեսությունները կկարողանան մսի արտադրությունն ավելացնել ոչ պակաս քան 40 տոկոսով, այդ թվում՝ խոզի միսը ավելի քան երկու անգամ։

Մսի արտադրությունն ավելացնելու մյուս կարևոր ռեզերվը անասունների գիրացումն է և մատղաշների աճեցումը։ Հենց միայն ոչ կոնդիցիոն անասունները սահմանված կոնդիցիային հասցնելով՝ արդեն իսկ այս տարի ռեսպուբլիկայում կարելի կլինի մսի քանակն ավելացնել 1,5 հազար տոննայով՝ հաշված սպանդանոցային քաշով։ Սակայն այս էլ քիչ է։ Անհրաժեշտ է առաջավոր կոլտնտեսությունների փորձի օրինակով ճիշտ կազմակերպելով անասունների գիրացումը և մատղաշների աճեցումը՝ մսամթերման պլանի կատարումն ապահովել ավելի քիչ անասուն հանձնելով։

Խոզի մսի արտադրությունն ավելացնելու համար նպատակահարմար



կլիներ Երևանի գործարանում արտադրվող կոմբինացված կերի մի զգալի մասը հատկացնել ինչպես սովետական տնտեսություններում ու կոլտնտեսություններում, այնպես էլ հատկապես կազմակերպված տնտեսություններում խոզերի բտմանը։

Անասնաբուծության զարգացման որակական ցուցանիշների բարելավման հետ ռեսպուբլիկայում պետք է լուրջ ուշադրություն դարձվի նաև մթերատու անասունների բոլոր տեսակների և մանավանդ կովերի գլխաքանակի ավելացմանը։ Ճիշտ է, ամբողջությամբ վերցրած ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունն աչքի է ընկնում անասունների բարձր խտությամբ, որ զգալիորեն գերազանցում է միութենական միջին ցուցանիշները։ Այսպես, 1955—56 տնտեսական տարում յուրաքանչյուր 100 հեկտար հողային տարածությանը Հայաստանում ըստ գյուղատնտեսական գոտիների հետևյալ թվով անասուն էր ընկնում.

| Գյուղատնտեսական գոտիներ | Խոշոր եղջերավոր անասուն | Այդ թվում կովեր | Ոչխարներ և այծեր | Խոզեր (100 հեկտ. վարելահողին) |
|---|---|---|---|---|
| 1. Արարատյան հարթավայր | 51 | 18 | 165 | 33 |
| 2. Նախալեռնային գոտի | 29 | 9 | 117 | 8 |
| 3. Կենտրոնական » | 44 | 14 | 141 | 12 |
| 4. Սևանի ավազան | 39 | 13 | 126 | 13 |
| 5. Հյուս. արևելյան շրջաններ | 47 | 15 | 115 | 102 |
| 6. Լոռի-փամբակ | 39 | 14 | 72 | 37 |
| 7. Շիրակ | 44 | 14 | 121 | 11 |
| 8. Դարալագյազ | 29 | 8 | 132 | 8 |
| 9. Զանգեզուր | 39 | 12 | 118 | 16 |
| Միջինը Հայկական ՍՍՌ-ում | 41 | 13 | 123 | 23 |
| Այդ թվում կոլտնտեսութ. | 27 | 7 | 54 | 16 |
| Միջինը ՍՍՌՄ-ում առ 1 հունվարի 1956 թ. | 14 | 6 | 29 | 25 |

Ինչպես երևում է այս տվյալներից, յուրաքանչյուր 100 հեկտար հողային տարածությանը ավելի մեծ թվով խոշոր եղջերավոր անասուններ (51 գլուխ) և մանր եղջերավոր անասուններ (165 գլուխ) ընկնում է Արարատյան դաշտավայրի կոլտնտեսություններում։ 100 հեկտար վարելահողի հաշվով խոզերի գլխաքանակի բարձր խտություն ունեն (102 գլուխ) Հյուսիս-արևելյան շրջանները, որոնք համապատասխան ռեսպուբլիկական միջին ցուցանիշը գերազանցում են ավելի քան 4 անգամ։ Այնինչ խոշոր ու մանր եղջերավոր անասունների կուտակումը Սևանի ավազանի, Կենտրոնական գոտու, Լոռի-Փամբակի, Շիրակի, Զանգեզուրի, Դարալագյազի շրջաններում, որտեղ անասնաբուծության զարգացման համար բարենպաստ պայմաններ կան, ետ է մնում միջին ռեսպուբլիկական ցուցանիշներից և շատ ավելի ցածր է, քան Արարատյան դաշտավայրի շրջաններում։

Կոլտնտեսությունների 1955 թվականի տարեհաշվետվություններից երևում է, որ Արարատյան դաշտավայրի կոլտնտեսությունները Հայաստանի մյուս շրջաններին գերազանցում են մթերատու անասունների արժեքի տեսակետից։ 1955 թվականին Արարատյան դաշտավայրի կոլտնտեսությունների մթերատու անասունների ընդհանուր արժեքը կազմում էր 30,5 միլիոն ռուբլի, կամ, 100 հեկտար հողային տարածության հաշվով՝ 21,4 հազար ռուբլի,

digitised by A.R.A.R.@

ի դիմաց 9,4 հազար միջին ռեսպուբլիկականի, այն ժամանակ, երբ Սևանի ավազանի կոլտնտեսություններում մթերատու անասունների ընդհանուր արժեքը կազմում էր ընդամենը 16,2 միլիոն ռուբլի, կամ 100 հեկտար հողային տարածության հաշվով՝ 6,8 հազար ռուբլի։ Եթե Արարատյան դաշտավայրի կոլտնտեսությունների մթերատու անասունների արժեքն ընդունենք 100, ապա մի շարք անասնաբուծական շրջանների կոլտնտեսություններում այն կկազմի՝ կենտրոնական գոտում 36, Սևանի ավազանում՝ 31, Լոռի-Փամբակում՝ 44, Շիրակում՝ 44, Դարալագյազում՝ 27 և Զանգեզուրում՝ 33։

Այս տվյալները ցույց են տալիս, որ շատ շրջաններում անասնաբուծության զարգացման մակարդակը շատ հեռու է ինտենսիվ լինելուց։

Պետք է նկատի ունենալ, որ ռեսպուբլիկայում առանց մթերատու անասունների և մանավանդ կովերի և խոզերի գլխաքանակի հետագա աճեցման, նույնիսկ առաջիկա տասը տարում չի կարելի, միայն անասնաբուծության կազմակերպումը բարելավելու միջոցով, Հայաստանի բնակչությունը սեփական արտադրության հաշվին մսով ու կաթով ապահովել գիտականորեն հիմնավորված նորմաներով։

Մի կողմից գոյություն ունեցող սովետական տնտեսություններում մթերատու անասունների գլխաքանակի աճով և վեցերորդ հնգամյակի ընթացքում նոր ոռոգվող հողերի ու տնտեսապես թույլ կոլտնտեսությունների հողերի բազայի վրա մեծ թվով նոր սովետական տնտեսություններ հիմնելով, մյուս կողմից կոլտնտեսություններում կովերի և այլ մթերատու անասունների գլխաքանակի աճումով, ինչպես և կոլտնտեսականների տնտեսությունների կովազրկության վերացումով՝ ապահովված կլինի խոշոր ու մանր եղջերավոր անասունների և խոզերի գլխաքանակի հետագա ավելացումը։

ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվներում Հայկական ՍՍՌ առջև խնդիր է դրված՝ 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, կաթի արտադրությունն ավելացնել 2,2 անգամ։ Այս նշանակում է, որ 1960 թվականին ռեսպուբլիկայում կաթի արտադրությունը պետք է հասցվի 483 հազար տոննայի։ Այս խնդրի իրականացումը հնարավորություն կտա 1960 թվականին բնակչության մեկ շնչի հաշվով (հաշվի առնելով նաև բնակչության աճը) կաթի արտադրությունը հասցնել մինչև 268 կիլոգրամի։ 1960 թվականի մակարդակին հասնելու դեպքում յուրաքանչյուր 100 հեկտար հողային տարածությանն ընկնող կովերի թիվը կկազմի 19 գլուխ, իսկ կաթի արտադրությունը նույն տարածության հաշվով՝ 320 ցենտներ։ Այսպիսի պլանի իրականացման ռեալությունը տարակույս չի առաջացնում, որովհետև այժմ էլ ռեսպուբլիկայում քիչ չեն այնպիսի կոլտնտեսությունները, որոնք յուրաքանչյուր 100 հեկտար հողային տարածության հաշվին այդքան և նույնիսկ ավելի շատ կով ունեն և ավելի կաթ են արտադրում։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առջև խոշոր խնդիրներ են դրված բրդի արտադրությունն ավելացնելու ուղղությամբ։ ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվներում նախատեսված է Հայկական ՍՍՌ-ում 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, բրդի արտադրությունն ավելացնել 1,8 անգամ։ Բրդի արտադրության ընդհանուր մակարդակը ռեսպուբլիկայում 1960 թվականին հասնելու է մոտ 5 հազար տոննայի, կամ 100 հեկտար հողային տարածությանը՝ 330 կիլոգրամ։

Մի շարք շրջաններ ու կոլտնտեսություններ բրդի արտադրության այդ-



պիսի մակարդակի հասել են դեռ անցյալ տարի։ Այսպես, 100 հեկտար հողային տարածության հաշվով բուրդ է ստացվել Շահումյանի շրջանում 329 կիլոգրամ, Մեղրու շրջանում՝ 380 կիլոգրամ։

Գլխաքանակի աճման հետ միասին պետք է լուրջ ուշադրություն դարձվի նրբագեղմ և կիսանրբագեղմ ոչխարաբուծության զարգացման վրա, որն առավել եկամտաբեր է և մեծ քանակությամբ բարձրորակ բուրդ է տալիս։

Տեղերում մշակված պլաններով նախատեսված է ռեսպուբլիկայում 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ձվի արտադրությունն ավելացնել 2,1 անգամ և հասցնել 230 միլիոն հատի։ Չնայած նրան, որ նախատեսված է 1960 թվականին 100 հեկտար հացահատիկային կուլտուրաների հաշվով ձվի արտադրությունը հասցնել մինչև 70 հազար հատի, սակայն այս մակարդակը ոչ միայն չի ելնում եղած պահանջներից, այլև զգալիորեն ցածր է առկա հնարավորություններից։ Ձվի արտադրության նախատեսված պլանը կատարելու դեպքում 1960 թվականին յուրաքանչյուր շնչին միջին հաշվով կընկնի 127 ձու, որ, իհարկե, բավարար չէ։

Մինչդեռ բավական է, որ կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում ապահովվի ինկուբատորա-թռչնաբուծական կայանից տարեկան ստացված մոտ մեկ միլիոն ճտի նորմալ աճեցումը, թռչունների թվի աճման ու ձվի արտադրության նախատեսված պլանները կկատարվեն ու կգերակատարվեն մեկ-երկու տարվա ընթացքում։

Ձվի և թռչունի մսի արտադրությունն արագորեն ավելացնելու ուղղությամբ անհետաձգելի խնդիր է խոշոր թռչնաբուծական ֆերմաների ստեղծումը։ Թռչնաբուծական ֆերմայի չափի հարցը պետք է լուծվի ըստ յուրաքանչյուր կոլտնտեսության ու սովետական տնտեսության պայմանների, սակայն ֆերման պետք է ունենա ոչ պակաս քան 1500—2000 գլուխ ձվատու հավ։ Հատուկ ուշադրություն պետք է դարձնել ջրալող թռչունների բուծման վրա։ Այս տեսակետից Սևանի ավազանի շրջանները դեռ չեն օգտագործում եղած հնարավորությունները։

Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ձվի ու թռչունի մսի արտադրությունն զգալիորեն ավելացնելու համար անհրաժեշտ է բացի հիշյալ միջոցներից կիրառել նաև մի շարք արմատական կազմակերպական միջոցառումներ։ Հայտնի է, որ մանր թռչնաբուծական ֆերմաները թռչուններ աճեցնելու ինտենսիվ եղանակներ կիրառելու հնարավորություններից զուրկ են։ Սովետական Միությունում և մեր ռեսպուբլիկայում պետական խոշոր թռչնաֆաբրիկաներ կազմակերպելու բացառիկ դրական փորձ գոյություն ունի։ Պետական թռչնաֆաբրիկաների ցանցի ընդարձակմանը զուգընթաց անհրաժեշտ է մեզ մոտ ձեռնամուխ լինել նաև միջկոլտնտեսային թռչնաբուծական խոշոր ֆերմաների կամ ֆաբրիկաների կազմակերպմանը՝ 10—15 հազար և ավելի ձվատու հավերով։ Թռչնաբուծության այսպիսի կազմակերպումը, մանավանդ այն կոլտնտեսություններում, որոնք թռչնաբուծական ֆերմաների խոշորացման համար անհրաժեշտ պայմաններ չունեն, լավագույն ձև կլինի և հնարավորություն կտա նվազագույն քանակությամբ աշխատանքի ու նյութական միջոցների ծախսումով առավել քանակությամբ արտադրանք ստանալու։

Անասնաբուծական մթերքների հետագա ավելացման խնդրի իրականացման գործում վճռական նշանակություն ունի կերի բազայի հետագա զգալի ամրապնդումը։ Հաշիվները ցույց են տալիս, որ Հայկական ՍՍՌ-ում 1960

digitised by A.R.A.R.@

թվականի համար նախատեսված անասնաբուծական մթերքների արտադրու-
թյունն ապահովելու համար անհրաժեշտ կլինի խոտացրած կերի արտադրու-
թյունն ավելացնել 3 անգամ, հյութալի կերինը՝ 3 անգամ, կոշտ կերինը՝ 1,7
անգամ։ Այս ծրագրի իրականացման համար կպահանջվի՝ ա) շատ կոլտըն-
տեսություններում վերանայել ցանքատարածությունների կազմը՝ նպատակ
ունենալով ավելացնել եգիպտացորենի ցանքը հատիկի ու սիլոսի համար,
բազմամյա ու միամյա խոտաբույսերի, կերի արմատապտուղների և այլ կե-
րային կուլտուրաների ցանքերը. բ) զգալիորեն բարձրացնել կերային կուլ-
տուրաների բերքատվությունը, որի համար դեռևս բացառիկ մեծ ռեզերվներ
կան. գ) պլանաչափորեն միջոցառումների կոմպլեքս իրականացնել մարգա-
գետիններում և արոտներում։

Ցանովի կերակուլտուրաների տեղաբաշխման համար հարկ կլինի շատ
կոլտնտեսություններում և մանավանդ անասնաբուծական շրջանների կոլտըն-
տեսություններում, դաշտային ցանքաշրջանառության հետ միասին մտցնել
նաև կերային և ամենից առաջ՝ մերձֆերմային ցանքաշրջանառություն։ Վեր-
ջինս կազմակերպական ու տնտեսական առավելություն ունի։ Սրա հետ միա-
սին անհրաժեշտ է կերաբույսերի լայն ցանք կատարել ինչպես խոզաններում,
այնպես էլ ցելերում։

Անասնաբուծության հաջող զարգացման կարևոր պայման է նաև անա-
սուններն ու թռչունները բարեկարգ շենքերով ապահովելը և ֆերմաներում
ծանր աշխատանքների մեքենայացումը։ Եթե կոլտնտեսություններում համե-
մատաբար վատ չի ընթանում անասնապահական շենքերի շինարարությունը,
և այդ բնագավառում արդեն շատ բան է արված, ապա միանգամայն անբա-
վարար է ֆերմաներում աշխատատար պրոցեսների մեքենայացման թափը։
Լուրջ թերություններ կան նաև անասնապահության բնագավառի կադրերի
ընտրության, տեղաբաշխման, ինչպես նաև ֆերմաներում աշխատանքի կազ-
մակերպման բնագավառում։

Հայկական ՍՍՌ-ն բնական ու տնտեսական բարենպաստ պայմաններ
ունի բարձր ապրանքային անասնաբուծություն զարգացնելու համար։ Անհրա-
ժեշտ է ամեն մի շրջանում, կոլտնտեսությունում ու սովետական տնտեսու-
թյունում ապահովել անասնաբուծության առանձին ճյուղերի առավել բարձր
ժողովրդա-տնտեսական շահույթաբերությունը գյուղատնտեսական արտա-
դրության ընդհանուր կոմպլեքսի մեջ, հաշվի առնելով նրանց կոնկրետ բնա-
կան ու տնտեսական պայմանները։

---

# «ՀԱՅ ԲԱՆՎՈՐ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆՆԵՐԻ ԱՍՈՑԻԱՑԻԱՅԻ» ՄԱՍԻՆ

(Ընկ. Ար. Մնացականյանի «Առաջին հայ բանվորական ռևոլյուցիոն կազմակերպությունը» հոդվածի առթիվ)

Վ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

«Պարտիական կյանք» ամսագրի 1956 թվականի 10-րդ համարում ընթեր-
քերի փոխանակության կարգով հրապարակված է ընկ. Ար. Մնացականյանի
«Առաջին հայ բանվորական ռևոլյուցիոն կազմակերպությունը» հոդվածը, որի
մեջ հեղինակը 1892—1895 թվականներին Թիֆլիսում գործող «Հայ բանվոր
հեղափոխականների Ասոցիացիայի» մասին նախկինում եղած կարծիքները
համարելով անտեղյակության կամ նացիոնալ-նիհիլիստական մոտեցման ար-
դյունք, իր առաջ նպատակ է դնում տալ այդ կազմակերպության «օբյեկտիվ
լուսաբանումը, ...նրա օրգանների, նրա ծրագրի պարտիական-գիտական
բնութագրությունը»[1]։

Ինչ խոսք, որ ընկ. Մնացականյանի ցանկությունը միանգամայն օրինա-
կան է, խրախուսելի։

Բայց տեսնենք, թե որքանո՛վ է հաջողվել հոդվածագրին կենսագործել
իր առաջադրած նպատակը, որքանո՛վ է կարողացել նա գիտականորեն ճիշտ
գնահատել Ասոցիացիայի գործունեությունը։

Մենք համաձայն ենք ընկ. Մնացականյանի հետ, որ Ասոցիացիան չի
կարելի բնութագրել որպես բուրժուական-նացիոնալիստական կամ հակառե-
վոլյուցիոն կազմակերպություն, ինչպես այդ արվել է երբեմն անցյալում։

Բայց, մերժելով նախկինում եղած ծայրահեղ տեսակետները՝ ընկ. Մնա-
ցականյանն ինքն էլ ընկնում է մի նոր, ո՛չ պակաս, եթե չասենք ավելի, վնա-
սակար ծայրահեղության մեջ։

Նա գտնում է, որ Ասոցիացիան «հայ իրականության մեջ... մի նոր կազ-
մակերպություն էր, որն էապես տարբերվում էր այն ժամանակ արդեն գոր-
ծող մյուս կազմակերպություններից»[2]։ Իսկ ո՞րն էր այդ էական տարբերու-
թյունը։ Հոդվածի շարադրանքից բխում է, որ դա Ասոցիացիայի մարքսիս-
տական ուղղությունն էր։

Ճիշտ է, ընկ. Մնացականյանը, ըստ երևույթին, զգալով իր այս թեզի
խախտությունը՝ ամբողջ հոդվածում խուսափում է Ասոցիացիայի նկատ-
մամբ «մարքսիստական» բառը գործածելուց, բայց իրապես նրա հոդվածում,

1 «Պարտիական կյանք», 1956 թ., № 10, էջ 39։

2 Նույն տեղում, էջ 41,— ընդգծումն իմն է — Վ. Ա.։

digitised by A.R.A.R.@

*ինչպես կտեսնենք ստորև, Ասոցիացիան բնութագրված է որպես մարքսիստական, սոցիալ-դեմոկրատական կազմակերպություն:*

*Իր առջև այսպիսի խնդիր դնելով՝ ընկ. Մնացականյանը, ինչպես այդ անշուշտ նկատած կլինեն նրա հոդվածի ընթերցողները, հաճախ ընկնում է հակասական վիճակի մեջ, կամ, ինչպես ասում են, «մեկ նալին է խփում, մեկ մեխին»: Եվ դա հասկանալի է, որովհետև հոդվածագիրը մեկ ստիպված է հաշվի նստել պատմական փաստերի հետ, մեկ՝ գնահատել երևույթները հակառակ այդ փաստերի: Երբեմն էլ այն փաստերը, որոնք չեն տեղավորվում հեղինակի «պրոկրուստյան մահճում», կամ առհասարակ անտեսվում են, կամ հարմարեցվում են իր առաջադրած սխեմային: Այսպես, օրինակ, բերելով Ասոցիացիայի մի հայտարարության այն խոսքերը, թե՝ «մեր նպատակն է գործել մի որոշ դասակարգի՝ բանվորների մեջ, հասկացնել նրանց իրենց դրությունը, կազմել մի մարմին՝ կուսակցություն», ընկ. Մնացականյանն ընդհատում է քաղվածքը, չբերելով հաջորդ խոսքերը՝ «կուսակցություն, որը ավելի զորեղ կերպով՝ միացած ուժով նպաստե Հայաստանի ընդհանուր հեղափոխությանը»: Մինչդեռ հենց այս խոսքերն են, որ խիստ էական են և բնորոշում են կազմակերպության բուն նպատակը, բայց Մնացականյանը չի բերել այս խոսքերը, որովհետև դրանք չեն հարմարվում իր թեզին: Կամ մի այլ օրինակ. Ասոցիացիայի օրգան «Ազատ Հայաստան» թերթը խոսելով «հայկական հեղափոխության» մասին՝ գրում է, որ դրանով մենք կհասնենք «այնպիսի վարչական կազմակերպության, որ ժողովրդի զարգացումը դրանից հետո կընթանա ինքնուրույն, համաձայն իր կամքի և հակումների»: Բերելով այս նախադասությունը՝ ընկ. Մնացականյանը խկույն ևեթ իր կողմից ավելացնում է. «այսինքն՝ ազգերի անկախության և ինքնորոշման սկզբունքն իրականացվի» (էջ 46): Մի՞թե որևէ հիմք կա «Ազատ Հայաստանի» վերոհիշյալ խոսքերը այսպես մեկնաբանելու: Ակնհայտ է, որ ոչ:*

*Այժմ վերադառնանք Ասոցիացիայի բնութագրման հարցին: Ինչպես ասացինք, ընկ. Մնացականյանը Ասոցիացիան բնորոշում է որպես բանվորական մարքսիստական կազմակերպություն: Իր հոդվածում նա գրում է.*

*«...Հայ բանվոր ռևոլյուցիոներների Ասոցիացիան* կանգնած էր ժամանակի բանվորական շարժման առաջավոր մարտիկների շարքերում *և քարոզում էր* սոցիալիստական շարժման ժամանակի առաջավոր գաղափարներ» *(էջ 50, ընդգծումներն իմն են — Վ. Ա.):*

*Կամ. «Նրանք գիտեին, որ Մարքսի ռևոլյուցիոն գեփզը բոլոր երկրների և ազգերի պրոլետարների միացումն է» (նույն տեղը):*

*Կամ թե՝ «Ասոցիացիայի գլխավոր պահանջներն էին՝ արտադրության միջոցները ժողովրդի սեփականություն դարձնել, վերացնել միապետական ռեժիմը և ժողովրդի մշտական ներկայացուցչություն հրավիրել: Ահա այն երկու հիմնական հարցերը, որ դրել էին նաև* այդ ժամանակի առավել զարգացած և ձևավորված սոցիալիստական պարտիաներն ու խմբերը» *(նույն տեղը, էջ 44, ընդգծումներն իմն են — Վ. Ա.):*

*Այսպիսով, այստեղ այն միտքն է արտահայտվում, որ Ասոցիացիան մարքսիստական կազմակերպություն էր, որովհետև 19-րդ դարի 90-ական թվականներին «բանվորական շարժման առաջավոր մարտիկները», «առավել զարգացած և ձևավորված սոցիալիստական պարտիաներն ու խմբերը» այլ*



*բան չէին, քան մարքսիստներ, սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններ:*

*Ասոցիացիային տրված այսպիսի բնութագրերից հետո... գալիս են «սակայնները», բայց այդ «սակայնները», ինչպես կտեսնենք, այնքան էական են, որ փաստորեն ամբողջովին ժխտում են վերոհիշյալ գնահատականները:*

*«Անվիճելի է,—գրում է Ար. Մնացականյանը,—որ Ասոցիացիայի մոտ դասակարգային պայքարի հարցերը մշուշապատ են դրվում, չկա պրոլետարիատի դասակարգային կազմակերպման և նրա դաշնակիցների հարցի պարզորոշ ըմբռնում: Ասոցիացիան գործում էր մեկուսացած, նա փորձ չարեց եղբայրական մյուս ժողովուրդների բախտակից բանվորների հետ միավորվել և հանդես գալ դասակարգային համերաշխությամբ» (էջ 49—50): «Սակայն նրանք դեռևս չէին յուրացրել մարքսիզմի ոգին, չգիտեին դասակարգային պայքարի ուսմունքը, հստակ պատկերացում չունեին պրոլետարիատի պատմական դերի մասին» (էջ 50):*

*Խոսելով «Ասոցիացիայի» գաղափարական ակունքների մասին՝ ընկ. Մնացականյանը նշում է, որ այդ ակունքներն էին՝ մարքսիզմը, ռուսական նարոդնիկությունը, հայ իրականության մեջ եղած սոցիալիստական և ազգային դեմոկրատական ու ազատագրական գաղափարները, Նալբանդյանի սոցիալիստական քարոզները, Րաֆֆու քաջալերած հերոսները և ապստամբության կոչերը (էջ 50):*

*Այսպիսի էկլեկտիկ, խառնիճաղանճ հայացքներ ունեցող մի կազմակերպություն էլ ի՞նչ հիման վրա է հայտարարվում «ժամանակի բանվորական շարժման առաջավոր մարտիկ», «սոցիալիստական շարժման ժամանակի առաջավոր գաղափարները քարոզող» և այլն:*

*«Հայ բանվոր հեղափոխականների Ասոցիացիայի» անդամները կանգնա՞ծ էին արդյոք սոցիալ-դեմոկրատական դիրքերում, թեկուզ և որոշ սխալներով, թե՞ ոչ:*

*Հետաքրքիր է այս կապակցությամբ լսել հենց Ասոցիացիայի ղեկավար-*
*Հետաքրքիր է այս կապակցությամբ լսել հենց Ասոցիացիայի ղեկավարների կարծիքը, որոնք հետագայում մտան բոլշևիկյան պարտիայի շարքերը:*

*Ասոցիացիայի հիմնադիրներից ու գլխավոր ղեկավարներից մեկը՝ Աշոտ Խումարյանը մի շարք առիթներով անդրադարձել է այդ կազմակերպության պատմությանը: Իր ինքնակենսագրություններից մեկի մեջ նա, օրինակ, գրում է, որ Ասոցիացիայի ծրագիրը «հարազատ էր* (была родственна) *«Նարոդնայա վոլյայի» բանվորական խմբի ծրագրին, ազգային երանգով»*[1]*: Նույն տեղում նա պատմում է, որ ինքը կյանքում առաջին անգամ սոցիալ-դեմոկրատի է հանդիպել 1898 թվականին աքսորում, այսինքն՝ Ասոցիացիայի ջախջախումից 3 տարի հետո:*

*Ասոցիացիայի մասին Աշ. Խումարյանը ավելի հանգամանորեն գրել է 1924 թվականին «Մարտակոչ» թերթում հրապարակված իր հոդվածաշարքում*[2]*: Դա բավական սուր դիսկուսիաների առիթ տվեց այն ժամանակվա մամուլում: Այդտեղ ևս Աշ. Խումարյանը «Հայ բանվոր հեղափոխականների Ասոցիացիան» բնավ չէր բնութագրում որպես մարքսիստական կազմակերպություն: Նա շատ ավելի համեստ դեր էր վերագրում Ասոցիացիային, քան այդ կատարում է ընկ. Մնացականյանը: Աշ. Խումարյանը գրում էր.*

1 *Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Կենտրոնական Պարտարխիվ, ֆ. 124, ց. 1, գ. 2056:*

2 *Տե՛ս «Մարտակոչ», 1924 թ., №№ 8, 10, 13, 15, 16:*

digitised by A.R.A.R.@

«Իհարկե, «ՀԲԱ»-ի հասկացած սոցիալիզմը շատ հեռու էր Մարքսի գի-
տական սոցիալիզմից, իհարկե, «ՀԲԱ»-ի քարոզած «ազատ» Հայաստանը
նման չէր մեր ներկա ազատ Հայաստանին, իհարկե, այդ ասոցիացիայի
հասկացած բանվորությունը, բանվորական դատը շատ հեռու էր իր այժմյան
հասկացողությունից (այն էլ ասենք, թե որտեղ էր այն ժամանակ հայ բան-
վորություն), բայց ի՞նչ կասեք, երբ մի փոքր խումբ հայ պատանիներ, սո-
ցիալիզմի մասին համարյա ոչ մի գիրք (հայերեն չկար, իսկ ռուսերեն հա-
մարյա թե չգիտեինք) չկարդացած, շատ աղոտ գաղափար ունենալով համաշ-
խարհային բանվորական շարժումից ու դասակարգային կռվից, եկել հանգել
էինք ինտուիտիվ կերպով բանվորության անկախ կազմակերպության ան-
հրաժեշտության հայ իրականության մեջ, նրա իբր առանձին ուժի մասնակ-
ցության անհրաժեշտությանը «Հայկական դատին»» [1]:

Այսպիսով, ըստ «Ասոցիացիայի» հիմնադիրի վկայության, իրենց ըմբըռ-
նած սոցիալիզմը շատ հեռու էր Մարքսի գիտական սոցիալիզմից և բանվո-
րական անկախ կազմակերպությունը ստեղծվել էր «Հայկական դատին»
առանձին մասնակցություն ունենալու համար:

Ընկ. Աշ. Խումարյանի հոդվածի դեմ այն ժամանակ եղած առարկություն-
ները մեծ մասամբ ոչ թե այս գնահատականի առթիվ էր, այլ վերաբերում
էր հոդվածագրի այն դրույթին, որ իբր «Ասոցիացիան» «ըստ ամենայն իրա-
վունքի՝ հայ կոմունիստների, հայ մարքսիստների պատմական նախորդն է» [2]:

Աշ. Խումարյանի ընդդիմախոսները, ուրեմն, նրան առարկում էին այն
բանի համար, որ նա փորձում էր ուղղակի կամուրջ անցկացնել «Ասոցիա-
ցիայի» և հայ բոլշևիկների միջև, այսինքն՝ մանր-բուրժուական սոցիալիզմի
և կոմունիզմի միջև:

Ասոցիացիայի մյուս հիմնադիր անդամը՝ ընկ. Ս. Խանոյանը (որը այն
ժամանակ 15—16 տարեկան պատանի է եղել) նույնպես նշում է, որ սոցիա-
լիզմը Ասոցիացիայի համար, «թեթև երանգ էր» («легкий отлёт») [3]: Ընկ. Խա-
նոյանը միայն 1902 թվականին է կարողանում կապվել ՌՍԴԲԿ Թիֆլիսի
կազմակերպության հետ:

Բնորոշ է, որ Ասոցիացիայի մյուս ղեկավար անդամների մեծ մասը
(Ա. Խաժակյան, Պ. Մնացականյան, Գ. Սաղաթյան և ուրիշները), կազմա-
կերպության ջախջախումից հետո իրենց գործունեությունը շարունակում են
ոչ թե ՌՍԴԲԿ-ի շարքերում, այլ՝ «Հնչակյան» մանր-բուրժուական պարտիա-
յում [4]: Պ. Մնացականյանը, Գ. Սաղաթյանը և Ասոցիացիայի նախկին ան-
դամներից մի քանիսը ՌՍԴԲԿ-ի մեջ են մտնում 1905 թվականին, իրենց հա-
յացքներում արմատական հեղաբեկում կատարվելուց հետո միայն:

Ի՞նչ կազմակերպություն էր, ուրեմն, «Հայ բանվոր հեղափոխականների

[1] «Մարտակոչ», 1924 թ., № 8:

[2] «Մարտակոչ», 1924 թ., № 8:

[3] Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Կենտրոնական Պարտարխիվ, ֆ. 124, գ. 1, գ. 2041:

[4] Ի դեպ, ընկ. Ար. Մնացականյանը «Հնչակյան» պարտիան նույնպես անվերապահորեն
հայտարարում է «սոցիալ-դեմոկրատական» (տե՛ս «Պարտիական կյանք», էջ 51): Այդ դեպ-
քում հետևողական լինելու համար նա պետք է հոդվածի սկզբում չգրեր, որ Ասոցիացիան
«էապես տարբերվում էր այն ժամանակ արդեն գործող մյուս կազմակերպություններից»,
որովհետև այդ կազմակերպություններից մեկն էլ «Հնչակյանն» էր: Եթե «Հնչակյան» պար-
տիան էլ սոցիալ-դեմոկրատական էր, հետևապես Ասոցիացիան գոնե նրանից էապես չպետք է
տարբերվեր:



Ասոցիացիան», ո՞րն էր նրա ծրագիրը, նրա պատմական տեղը հայ հասա-
րակական-քաղաքական կյանքում:

Արդեն Ասոցիացիայի հիմնադիրների վկայությունները որոշ բան պար-
զեցին այդ կազմակերպության էության մասին: Բայց գուցե դրանք, որպես
անձնական հիշողությունների վրա հիմնված եզրակացություններ, կարող են
հաճախ սուբյեկտի՞վ լինել, չհամապատասխանե՞լ պատմական ճշմարտու-
թյանը: Որպեսզի նման կասկածներ չլինեն, մենք կդիմենք Ասոցիացիայի
ծրագրին ու գործունեությունը լուսաբանող պատմական վավերագրերին:

Յուրաքանչյուր հասարակական-քաղաքական կազմակերպության դեմքը
որոշվում է ոչ միայն նրա անունով, ծրագրով և նրա անձնակազմով (թեև,
իհարկե, անդամների սոցիալական կազմը խոշոր նշանակություն ունի), այլև,
գլխավորապես, կազմակերպության պրակտիկ գործունեությամբ և այդ գոր-
ծունեության պատմական օբյեկտիվ նշանակությամբ:

Ասոցիացիան կազմակերպվել է և գործել 1892 թվականի վերջերից մինչև
1895 թվականի ամառը: Նրա կազմում եղել են բանվորներ, արհեստավորներ,
ուսուցիչներ և դպրոցական աշակերտներ: Ասոցիացիան գործում էր անլեգալ,
հրատարակում էր թերթ («Ազատ Հայաստան», ապա՝ «Կռիվ») տպագրական
շրիֆտով, ուներ իր ներկայացուցիչները հայկական մի քանի գավառներում:

Ասոցիացիան ստեղծվեց այն շրջանում, երբ կովկասահայ իրականու-
թյան մեջ գոյություն ունեին ազգայնական պարտիաներ: Դեռևս 1887 թվա-
կանից հիմնադրված էր «Հնչակյան» պարտիան իր «Հնչակ» կենտրոնական
օրգանով, 1890 թվականին կազմակերպվել էր «Դաշնակցություն» բուրժուա-
նացիոնալիստական պարտիան՝ իր «Դրոշակ» օրգանով: Այդ երկու պարտիա-
ներն էլ սոցիալական տարբեր շերտերի շահերի արտահայտիչ լինելով և
տարբեր աշխարհայացք ունենալով հանդերձ գործում էին հիմնականում «Հայ-
կական հարցի» լուծման ուղղությամբ, «Թյուրքահայաստանի» անկախության
կամ այնտեղ Բեռլինի կոնգրեսի 61-րդ հոդվածով նախատեսված բարենորո-
գումները իրականացնելու համար:

«Հնչակյան» պարտիան, ինչպես հայտնի է, ազգայնական պրոպագան-
դային զուգընթաց տանում էր նաև սոցիալիստական պրոպագանդա: Որպես
մանր-բուրժուական խավերի արտահայտիչ՝ «Հնչակյան» պարտիան չէր կա-
րող գոհ լինել կապիտալիզմից, որը ամեն օր, ամեն ժամ քայքայում, սնանկա-
նացնում էր մանր տնտեսատերերին: Այդ պատճառով էլ ապագա «Ազատ
Հայաստանի» նվաճումը նա համարում էր մերձավոր խնդիրը, որից հետո
պետք է ստեղծվեր «սոցիալիստական հասարակություն»: Հնչակյան պար-
տիան խոստանում էր «Թյուրքահայաստանում» կազմակերպած ապստամ-
բական շարժումների, տեռորի, ցույցերի միջոցով, կամ, ինչպես ընդունված
էր ասել, «Հայկական հեղափոխության» միջոցով շուտով ձեռք բերել «անկախ
հայրենիք» և խուսափել կապիտալիզմից համայնական սոցիալիզմի միջոցով:
Իրենց ազգային ծրագիրը և մանր-բուրժուական, ուտոպիական սոցիալիզմը
հիմնավորելու համար նրանք օգտագործում էին նաև մարքսիզմը, հատկապես
մարքսիզմի այն դրույթները, որոնք հիմնավորում էին ազգային-ազատագրա-
կան շարժումների պատմական անխուսափելիությունը, կապիտալիզմը սո-
ցիալիզմով փոխարինվելու անխուսափելիությունը և այլն: Ազգայնական պրո-
պագանդան սոցիալիզմով շաղախված, իհարկե, գրավում էր մանր-բուրժուա-
կան ինտելիգենցիայի, արհեստավորների, գյուղացիների և դասակարգային

digitised by A.R.A.R.@

պայքարի դպրոցը դեռ չանցած, որպես դասակարգ նոր կազմավորվող հայ բանվորների մի զգալի մասին։ Սակայն քաղաքական անկախության ձգտող հայ բուրժուազիային չէր կարող բավարարել հնչակյան պարտիան իր էկլեկտիզմով, ազգային շարժման մեջ սոցիալական հարցի իր ․շաղախով։ Բուրժուազիայի համար ձեռնտու չէր ազգային-ազատագրական շարժման մեջ դասակարգային բաժանումների, ներհակությունների փաստի արձանագրումը, նա ձգտում էր որքան կարելի է շղարշել դասակարգային անտագոնիզմը, իր ղեկավարությամբ ստեղծել համազգային, միասնական ճակատ՝ իր բուրժուական դասակարգային շահերը ներկայացնելով որպես համազգային շահեր։ Կովկասահայ բուրժուազիային իր ձգտումների կենսագործման համար հարկավոր էր խսկական նացիոնալիստական, բուրժուական-մարտական կազմակերպություն։ Այդպիսի կազմակերպություն հանդիսացավ «Դաշնակցություն» պարտիան, որը իր կազմավորման առաջին իսկ շրջանից քարոզեց մերկապարանոց նացիոնալիզմ և պայքարեց սոցիալիզմի դեմ, որպես բուրժուազիայի ղեկավարությամբ համազգային միասնական ճակատ ստեղծելուն խոչընդոտող մի գաղափարի։ Նույն պատճառներով «Հնչակյան» պարտիայի ներսում պառակտումներ առաջացրին նրա շարքերում գտնվող բուրժուական տարրերը (1896 թ.)։

Ազգային-ազատագրական շարժումների աճը Թյուրքիայում, Թյուրքիայի ներքին քաղաքական ու տնտեսական դրության քայքայումը, «Թյուրքահայաստանի ազատագրման» պրոպագանդան, որ ծավալել էին «Հնչակյան» և «Դաշնակցություն» պարտիաները, նրանց հարուցած ապստամբական ելույթները և ցույցերը, Արևմտյան տերությունների դիվանագիտական աղմկարարությունը «Հայկական հարցի» շուրջը, այս բոլորը կովկասահայության մեջ ստեղծել էին մանր բուրժուական պատրանքներ՝ շուտով ձեռք բերվելիք «հայրենիքի» մասին։

90-ական թվականների սկզբներին հայ հասարակական միտքը Ռուսաստանում մեծ չափով կլանված էր այդ հարցով։ Ցարիզմից, կալվածատիրական ու կապիտալիստական շահագործումից իրենց փրկությունը շատերը տեսնում էին ոչ թե այն պայքարում, որ պետք է մղեր նրանց դեմ հայ դեմոկրատիան ռուսաստանյան պրոլետարիատի ղեկավարությամբ, Ռուսաստանի ժողովուրդների հետ միասին, որը կբերեր ժողովրդին սոցիալական ազատություն, հետևապես նաև ազգային ազատություն, այլ՝ «Թյուրքահայաստանի» ազատության մեջ։ Ազգայնական պարտիաները կովկասահայ բանվորների, գյուղացիների, երիտասարդության ամբողջ ուշադրությունը բևեռում էին այդ հարցի վրա, կազմակերպում էին նյութական միջոցների հավաքում, հայդուկային խմբեր՝ Թյուրքիա ուղարկելու համար, որպեսզի ապստամբությունների միջոցով եվրոպական տերություններին դրդեին արագացնելու «Հայկական հարցի» լուծումը։

Իհարկե, Հայրենիքի ազատության համար պայքարելը պարզ և հմայիչ գաղափար էր, իհարկե, ոչ մի ազնիվ մարդ չէր կարող անտարբերությամբ դիտել այն սարսափելի չարագործությունները, որ կատարում էին հայ ժողովրդի նկատմամբ թյուրքական բաշիբոզուկները, և շատ երիտասարդներ անկեղծորեն հավատացած լինելով, թե կարող են օգնել արևմտահայերին, գնում էին Թյուրքահայաստան, դիմում անձնազոհությունների, կատարում ապստամբական ակտեր։



Բայց Հայաստանի զավակների թափած արյունից, ըստ էության, օգտվում էին անգլիական, գերմանական, ֆրանսիական իմպերիալիստները, ցարական ինքնակալությունը և սուլթանական դեսպոտիզմը, յուրաքանչյուրն իր ձևով, իր շահերին համապատասխան։

«Հայկական հեղափոխության» այդ նույն պատրանքով էին տարված նաև «Հայ բանվոր հեղափոխականների Ասոցիացիայի» անդամները։ Նրանց գործունեությունը ևս հիմնականում նվիրված էր սուլթանական բռնակալության լծից Արևմտյան Հայաստանի ազատագրման և անկախ Հայաստանի ստեղծման նպատակին։ Ասոցիացիայի օրգանները, նրա բոլոր ղեկավար վավերագրերը, նրա կազմակերպական կառուցվածքը և գործնական աշխատանքը ամբողջապես այս են վկայում։

Թեև Ասոցիացիայի հրատարակած թերթերի բոլոր համարները մեզ չեն հասել, բայց պահպանված օրինակները բավական նյութ են տալիս այդ կազմակերպության քաղաքական դեմքը և տակտիկան պատկերացնելու համար։

Ասոցիացիան 1893 թվականից սկսեց հրատարակել «Ազատ Հայաստան» թերթը, որի անունն իսկ արդեն որոշ բանասում է Ասոցիացիայի նպատակի մասին։ Առաջին համարը մեզ չի հասել։ Նրա բովանդակության մասին տեղեկություններ է տալիս Աշ. Խումարյանը։

Թերթի առաջին համարի մասին նա հետևյալն է գրում.

«Մտքերի ու փաստերի մի կատարյալ քաոս... Մի փոքրիկ առաջնորդող, մի քանի բխած թղթակցություններ Թյուրքիայից, մի քանի լուրեր, հավաքված Տաճկահայաստանից եկած գաղթականներից և այլն։ Նյութերը գրված էին մեծ մասամբ իմ ձեռքով ու մասամբ Արշալույսի (Խաժակյանի — Վ. Ա.). կային մի երկու կտորներ նարոդնիկության մասին» [1]։

«Ազատ Հայաստան»-ի երկրորդ համարը լույս է տեսել 1893 թվականի օգոստոսի 15-ին։ Այս համարից որոշ պատառիկներ պահպանված են։ «Մի պատասխան» խմբագրական հոդվածում թերթը (Ասոցիացիան) պարզում է իր հայացքը «հայկական հեղափոխության» մասին։ Նա առարկում է նրանց, ովքեր առաջարկում էին Թյուրքիայի դեմ ապստամբություններ չսկսել, այլ սպասել, մինչև եվրոպական պետություններն իրենց միջամտությամբ սուլթանին պարտադրեին Հայաստանում ռեֆորմներ անցկացնել։ Մերժելով այդ տեսակետը, թերթը կոչ էր անում դիմել անմիջական ապստամբական գործողությունների։

«Ազատ Հայաստան»-ի №№ 3, 4, 5-ում արդեն ավելի մանրամասն է մեկնաբանվում «Ասոցիացիայի» ծրագրի նախագիծը, որը այդ ժամանակ կազմված էր և հրապարակված առանձին բրոշյուրով։

«Ծրագիրը», ինչպես նշում է Աշ. Խումարյանը և երևում է «Ազատ Հա-
յաստան»-ում տպագրված նրա մեկնաբանություններից, կազմված էր՝ հիմք ունենալով «Նարոդնայա Վոլյա»-ի ծրագիրը։

«...Մեր ծրագիրը մշակելիս,— գրում է Աշ. Խումարյանը,— մենք մեր ձեռքի տակ ունեցել ենք միմիայն «Նարոդնայա Վոլյա»-ի բանվորական խմբի ծրագիրը, որտեղից և թարգմանաբար վերցրել ենք մի քանի կտորներ և նույնիսկ գլուխներ՝ հարմարեցնելով մեր իրականության և հասկացողության» [2]։

[1] «Մարտակոչ», 1924, № 10։

[2] «Մարտակոչ», 1924, № 13։

digitised by A.R.A.R.@

«Ազատ Հայաստան» թերթի 1893 թվականի № 4-ում խմբագրությունը պարզում է հայ բանվորներին ազգային շարժման մեջ կազմակերպելու դրդապատճառները.

«...Ավելորդ չենք համարում այստեղ հիշել,— ասված է խմբագրականում;— որ մենք ներկայանալով հայ հասարակության առաջ մեր ծրագրով ու օրգանով, նպատակ չենք ունեցել իշխել ընդհանուր հայկական հեղափոխությանը, և ոչ էլ դրան կառավարողներին կոնկուրենտ լինել, այլ մեր նպատակն է գործել մի որոշ դասակարգի — բանվորների մեջ, հասկացնել նրանց իրենց դրությունը, կազմել մի մարմին, կուսակցություն, որը ավելի զորեղ կերպով՝ միացած ուժով նպաստե Հայաստանի ընդհանուր հեղափոխությանը, ազդե նրա կառավարչական կազմակերպության վրա, դարձնելով նրան ավելի հարմար և պիտանի մեր հասարակական կյանքի ներկա պահանջներին»։

Այստեղից պարզ երևում է, որ բանվորներին մի պարտիայի մեջ միավորելու նպատակը «Հայաստանի ընդհանուր հեղափոխության»-ը նպաստելն է։

Ասոցիացիայի նպատակները ավելի կոնկրետ պարզաբանված են «Մեր համոզմունքը և ծրագիրը» խմբագրական հոդվածում («Ազատ Հայաստան» №№ 6—7, 1894 թ.)։

Բացատրելով ազգային անկախություն ձեռք բերելու անհրաժեշտությունը և դա համարելով սոցիալական հարցերի լուծման նախապայման, խմբագրությունը գրում էր. «Այդ պատճառով մենք անհրաժեշտ ենք համարում և մեր ամենամոտ խնդիրն է որպես սոցիալիստներ և ժողովրդականներ — ազատել հայ ժողովրդին ապստամբության միջոցով սուլթանական անարգ բռնակալ լծից, կատարել քաղաքական հեղափոխություն և անպայման իշխանությունը հանձնել ժողովրդին»։

Հայտնի է, որ «Հնչակյան» պարտիան նույնպես իր գործունեության հիմնական առանցքը համարում էր հենց այդ մոտակա խնդիրը։

Այնուհետև, «Ասոցիացիան» առաջադրում էր ապագա ազատ Հայաստանի հասարակական կազմի վերաբերյալ իր տեսակետներն ու պահանջները՝ դեմոկրատական ռեսպուբլիկա, օրենսդիր (Ազգային) ժողով, բոլոր գործարանները բանվորներին հանձնելը, հողը հանրային սեփականություն դարձնելը, քաղաքական ազատությունների ապահովումը և այլն։ Ասոցիացիայի դեմոկրատական ու սոցիալիստական պահանջները, իհարկե, դուրս չէին գալիս նարոդնիկական հարցադրման սահմաններից։ Այդ պահանջների մեջ, ինչպես տեսնում ենք, ի մի են խառնված բուրժուա-դեմոկրատական ու սոցիալիստական միջոցառումները։ Ծրագրի նախագծում ոչինչ չէր ասվում դասակարգային պայքարի, պրոլետարիատի կողմից քաղաքական իշխանության նվաճման մասին, որպես սոցիալիստական հասարակարգի կազմակերպման անհրաժեշտ պայմանի։ Նրան անծանոթ էր Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի «Կոմունիստական պարտիայի մանիֆեստը», որի սկզբունքները, ինչպես հայտնի է, յուրաքանչյուր բանվորական, սոցիալ-դեմոկրատական պարտիայի ու կազմակերպության հիմքումն էին դրված։

Միայն այն հիման վրա, որ Ասոցիացիայի ծրագրի նախագծում կետեր կային դեմոկրատական ռեսպուբլիկայի, գործարանները բանվորներին հանձնելու և հողը հանրայնացնելու մասին, եզրակացնել, թե Ասոցիացիան կանգնած էր այն ժամանակի առավել զարգացած և ձևավորված սոցիալիստական պարտիաների ու խմբերի մակարդակի վրա, ինչպես այդ անում է ընկ.



Ար. Մնացականյանը, սխալ կլինի։ Պետք է ասել, որ նման պահանջներ ոչ
միայն ռուս նարոդնիկությունը, այլև հայ ազգային նարոդնիկական կազմա-
կերպությունները Ասոցիացիայից դեռ շատ տարիներ առաջ առաջադրել են։
Այսպես, օրինակ, 1883 թվականին Մոսկվայում հայ ուսանողներից կազմա-
կերպված «Հայրենասերների միությունը» իր նպատակների մասին, իր օրգան
«Ազատության ավետաբեր» թերթում գրում էր.

««Հայրենասերների միության» պատգամներից մեկն է ազգերի համերաշ-
խությունը...։ «Հ. Մ.»-ն աշխատելու է, որ երկիրը, հողը, իր բնական հարըս-
տություններով, և աշխատանքի գործիքները դառնան աշխատավորների, բան-
վորների սեփականություն։ ...Մենք քարոզում ենք ընկերական միաբանու-
թյուն, որտեղ ընդհանուրը հոգում է յուրաքանչյուրի համար, իսկ յուրաքան-
չյուրը՝ ընդհանուրի համար։ Ահա թե ինչու բոլոր մասնավոր կալվածատերերի
և պետության ձեռքի հողերը պետք է անցնեն համայնքների ձեռքը...»[1]։

Սա Ասոցիացիայի ծրագրից ինչո՞վ պակաս ծրագիր է։

Այսպիսով, Ասոցիացիայի նյութերի վերլուծությունից երևում է, որ նա
տարված էր ազգային ռոմանտիկ այն գաղափարով, թե հնարավոր է «Թյուր-
քահայաստանի» մոտակա ազատագրումը սուլթանի ճիրաններից և հայ բան-
վորներին կողմնորոշում էր գործելու այդ ասպարեզում, օժանդակելու «հայ-
կական հեղափոխությանը» և իրենց մասնակցությամբ ազդելու ապագա Հա-
յաստանի սոցիալ-քաղաքական կարգերի վրա, համապատասխան իրենց
շահերի։

Այստեղից էլ բխում էր նրա գործունեության տակտիկան. ոչ թե Ռուսաս-
տանի ու Կովկասի մյուս ազգերի բանվորների հետ միացյալ պայքար մղել
ցարիզմի դեմ, կապիտալիստական շահագործման դեմ, այլ նյութապես ու
բարոյապես օգնել Արևմտյան Հայաստանում գործող ապստամբական
ուժերին։

«Ռուսաստանի, կամ ուղիղն ասած, ինքնակալության դեմ մղվելիք կռվի
մասին,— գրում է Աշ. Խումարյանը,— մենք համարյա թե ոչինչ չէինք ասում,
իսկ Հայաստանում մեր գործունեությունը դուրս էր գալիս կողմնակի կերպով,
քանի որ ծրագրի մի կետում ասված էր.— «Տաճկահայաստանի ազատության
անհրաժեշտությունն ու հեղափոխական գործունեությունն այնտեղ. սակայն
մենք չունենք անմիջական գործունեություն Տաճկահայաստանում, այլ ցույց
ենք տալիս մեր նյութական ու բարոյական աջակցությունն այնտեղ գործող
մեզ գաղափարակից կուսակցություններից մեկին»[2]։

Իսկ այդ ի՞նչ «գաղափարակից կուսակցության» մասին է ակնարկում
ընկ. Խումարյանը։ Անշուշտ ո՛չ արմենականների և ո՛չ էլ դաշնակցության
մասին, այլ «հնչակյանների» մասին, որովհետև Ասոցիացիային ավելի գա-
ղափարակից էր «Հնչակյան» պարտիան։ Եվ բնավ պատահական չպիտի հա-
մարել այն, որ Ասոցիացիայի օրգանում պարբերաբար գովաբանվում էին
հնչակյան գործիչները, «Հնչակյան» պարտիայի կազմակերպած ցույցերը,
ապստամբական գործողությունները, «Հնչակից» նյութեր էին արտատպվում։
Օրինակ՝ «Ազատ Հայաստան»-ի № 3-ում օր. Աշեն (այսինքն Աշ. Խումարյա-

---

[1] Քաղվածքը բերում ենք Մ. Ներսիսյանի «Նարոդնիկական խմբակներն Անդրկովկասում» գրքում հրապարակված տեքստից, էջ 22—23, Երևան, 1940 թ.։

[2] «Մարտակոչ» № 13, 1924 թ.։

digitised by A.R.A.R.@

նը) Պոլսում հնչակյանների կազմակերպած Գում-Գափույի ցույցը որակում էր որպես «հայկական ռևկեդարի սկիզբը»:

«Հնչակ» թերթն իր հերթին «Ազատ Հայաստանը» դիտում էր որպես իր ձայնակիցը և կրտսեր եղբայրը [1]:

Ի դեպ, պետք է ասել, որ հայ բանվորների «մեկ ընդհանուր ընկերություն, մեկ կուսակցություն» կազմելու գաղափարը, որը ընկ. Մնացականյանը համարում է Ասոցիացիայի գլխավոր արժանիքներից մեկը, տվել էր «Հնչակ» թերթը, դեռևս 1889 թվականին իր 3-րդ համարի ղեկավար հոդվածում: Դրանով էլ պետք է բացատրել այն համակրական վերաբերմունքը, որ ցուցաբերում էր «Հնչակը» դեպի Ասոցիացիան, նրա մեջ տեսնելով որոշ չափով, իր առաջադրած խնդրի մարմնացումը:

Անդրկովկասի հայ բանվորներին և մյուս աշխատավորական տարրերին ազգային սկզբունքով կազմակերպելը նույնպես բխում էր Ասոցիացիայի հիմնական նպատակադրումից, այսինքն՝ առանձին «Հայկական հեղափոխություն» պահանջից:

Վավերագրերից երևում է, որ Ասոցիացիան ակտիվ մասնակցություն ուներ Անդրկովկասի հայաշատ վայրերում ապստամբական խմբեր կազմակերպելու և նրանց Արևմտյան Հայաստան առաքելու գործում: Ասոցիացիայի ղեկավարները հատուկ շահագրգռվածություն էին ցուցաբերում հայկական տարբեր պարտիաների ապստամբական ուժերը միավորելու նկատմամբ:

Ասոցիացիան գոյություն ունեցավ մինչև 1895 թվականը: Այդ ընթացքում նրա հայացքներում և գործելակերպի մեջ էական փոփոխություններ տեղի չունեցան: Նա ջախջախվեց ցարական ոստիկանության կողմից: Բայց եթե նա չջախջախվեր էլ, չէր կարող շարունակել նախկին վիճակով իր առանձին գոյությունը: Արդեն 1894 թվականի կեսերից Ասոցիացիայի շարքերում սկսվել էին ներքին պառակտումներ: Ասոցիացիայի անդամների մի մասը ձգտում էր այն դարձնել զուտ ազգայնական կազմակերպություն: Նրանց հաջողվեց նույնիսկ գրավել Ասոցիացիայի տպարանը և «Ազատ Հայաստան» թերթը: Մյուս մասը Աշ. Խումարյանի գլխավորությամբ աշխատում էր Ասոցիացիայի գործունեության սոցիալիստական ուղղությունը պահպանել ազգային գործունեության հետ զուգահեռ:

«1894 թվականի մայիսին կամ հունիսին,— հայտնում է Աշ. Խումարյանը Թիֆլիսի ժանդարմական վարչությանը տված իր ցուցմունքներում 1) դեկտեմբերի, 1895 թ.),— արտասահմանից եկավ Փափազյանը (Վրթանես — Վ. Ա.): Մենք առաջարկեցինք նրան իր վրա վերցնել մեր թերթի խմբագրումը, բայց նա... օգնության փոխարեն ինչ որ համաձայնության մեջ մտավ Սիմոնյանի հետ... վերջինս, Փափազյանի դրդումով ինձ հեռացրեց թերթը տպելու աշխատանքից, գրավեց իմ սենյակը և տարավ իմ տպագրական դազգահն ու տպագրական ամբողջ շրիֆտը... ես մնացի մենակ Խաժակյանի հետ» [2]:

Այս նույնը գրում է Աշ. Խումարյանը նաև իր հոդվածում:

«1894 թվականի գարնանը... Սիսակը (Տեր-Սիմոնյան — Վ. Ա.) և Խանոյանը, որ այդ ժամանակ Թիֆլիսումն էին, ընկնում են Փափազյանի ազդեցության տակ ու վճռում «Ազատ Հայաստան»-ը զուտ ազգային թերթ դարձնել և որպեսզի կարողանան իրականացնել այդ դիտումը, վճռում են ինձ լիկվիդացիա անել խմբից, լավ գիտենալով, որ ես այդ բանին համաձայն չեմ լինի» [1]:

[1] Տե՛ս «Հնչակ», 1893 թ., №№ 11—12:

[2] ЦИА Груз. ССР, ф. 7, д. 83, л.л. 193—199.



Դրանից հետո արդեն Ասոցիացիայի օրգանը դառնում է «Կռիվ» թերթը: Բայց Ասոցիացիան այլևս պառակտված էր: Այն ներկայացնում էր փաստորեն երկու հոգու՝ Խումարյան և Խաժակյան [2]:

1895 թվականի ամռանը Խաժակյանը մեկնում է Ալեքսանդրապոլ: Կապը գավառների հետ կտրվում է: «Միառժամանակ դադարեց մեր գործունեությունը» (Խումարյան) [3]:

Լույս է տեսնում «Կռվի» երկու համար, որոնց բովանդակությունը, չնայած թերթի անվանափոխությանը, մնում է անփոփոխ: «Կռվի» առաջին համարը (դեկտեմբեր 1894 թ.) նվիրված է 1894 թվականի Սասունի կռիվներին: Առաջնորդող հոդվածը, որը վերնագրված է «Ազատության արշալույս», վերջանում է «կեցցե հայկական հեղափոխություն..., կեցցե Սասուն...» բնորոշ կոչերով: Այնուհետև գալիս են թղթակցություններ Սասունից, Ամերիկայից, Էջմիածնից (Ճեմարանի տեսչին ծեծելու մասին), տեղեկություններ Արևմտյան Հայաստանում եղած զոհերի մասին, մի բանաստեղծություն՝ նվիրված Սասունի հայ կանանց, և մի քանի արտատպություններ «Հնչակ» թերթի 1894 թվականի № 12-ից: «Կռվի» երկրորդ համարի մասին չենք կարող խոսել, որովհետև համարը դեռ չի գտնվել:

Իր գործունեության մերձավոր հիմնական նպատակը ընտրելով «Հայկական դատը», Ասոցիացիան օբյեկտիվորեն սոցիալիստակա՞ն, թե՞ ազգային խնդիր, պրոլետարակա՞ն, թե՞ բուրժուական խնդիր էր կենսագործում: Այս հարցը ամենակարևոր և Ասոցիացիայի քաղաքական դեմքը որոշող հարցն է: Պետք է նկատի ունենալ, որ խոսքը վերաբերում է Անդրկովկասում գործող, Անդրկովկասի հայ բանվորներին համախմբող կազմակերպությանը: Խոսքը վերաբերում է պատմական կոնկրետ մի իրադրության և այդ իրադրության մեջ գործող կոնկրետ կազմակերպության:

Ընկ. Մնացականյանը ամենից շատ ծառանում է այն բանի դեմ, որ Արևմտյան Հայաստանի ազգային ազատագրման խնդրին նվիրված Ասոցիացիայի գործունեությունը իր ժամանակին մեր պատմագրությունը գնահատել է որպես ազգայնական, ոչ-պրոլետարական գործունեություն:

Ընկ. Մնացականյանը գրում է. «Սակայն, ինչպես նշվեց, [Ասոցիացիայի] ծրագրի նախագծում կետ կար նաև (մի՞թե նաև: Չէ՞ որ դա Ասոցիացիայի բուն նպատակն էր:— Վ. Ա.) Արևմտյան Հայաստանում ազատագրական-ռևոլյուցիոն շարժումներին հրահրելու և նպաստելու մասին: Հենց այստեղից ելնելով է, որ անհիմն ու սխալ գնահատական է տրվել այդ կազմակերպությանը, համարելով այն ազգայնական, հակառևոլյուցիոն և այլն: Այդպիսի հարցադրման պաշտպանները ելնում էին այն կոնցեպցիայից, թե Կովկասում պրոլետարիատը պետք է պայքար ծավալեր միայն ցարական միապետության դեմ: Իսկ արևմտահայերի ազատագրական շարժումներին ոռևէ կերպ նպաստելը դիտվել է որպես ոչ մարքսիստական, ոչ սոցիալիստական պահանջ» (էջ 44:— Ընդգծումն իմն է — Վ. Ա.):

[1] «Մարտակոչ», 1924 թ., № 15:

[2] Տե՛ս նույն տեղը:

[3] Նույն տեղը:



digitised by A.R.A.R.@

Ընկ. Մնացականյանը այնուհետև հայտարարում է, որ այդ «կոնցեպցիան զուրկ է գիտական հիմքից, իսկ քաղաքական տեսակետից միայն բացասական հետևանքների է հասցրել»։

Նախ և առաջ ընկ. Մնացականյանը ճիշտ չի լուսաբանում հարցի պատմությունը։ Խոսքը վերաբերել է ոչ թե «արևմտահայերի ազատագրական շարժումներին որևէ կերպ նպաստելուն», այլ այն բանին, որ հայ հասարակական որոշակի հոսանքներ, պարտիաներ (և՛ բուրժուական և՛ մանր-բուրժուական) Ռուսաստանում ծավալված բուրժուա-դեմոկրատական և բանվորական շարժումների էպոխայում կովկասահայ մասսաներին շեղում էին ռուսաստանյան բոլոր ժողովուրդներին, նրանց թվում և հայ ժողովրդին անմիջականորեն շահագրգռող այդ համընդհանուր պայքարից, առաջադրելով Արևմտյան Հայաստանում իբր թե կազմակերպվող առանձին «հայկական հեղափոխությունը» միայն նպաստելու, այն առաջ մղելու խնդիրը, որպես ընդհանուր հայության միակ գլխավոր և սրբազան գործը։

Երկրորդ, ընկ. Մնացականյանի այն ակնարկը, թե կովկասահայությանը ««Թյուրքահայաստանի» հարցով չզբաղվելու կոնցեպցիան իբր «քաղաքական տեսակետից միայն բացասական հետևանքների է հասցրել», այլ կերպ չի կարող հասկացվել, քան, որ Հայաստանի և Անդրկովկասի բոլշևիկների քաղաքական վարքագիծը հայ ժողովրդի բախտի վերաբերմամբ սխալ է եղել։ Այդպես է հասկացվում, որովհետև հայ իրականության մեջ միայն մարքսիստներն էին, բոլշևիկները, որոնք հետևողական կերպով, մինչև վերջ պաշտպանում էին այն կարծիքը, որ կովկասահայ բանվորների և գյուղացիների խնդիրը ոչ թե առանձնացած «Հայկական դատն» է, «Հայկական հեղափոխությունը», որը պատմական այն պայմաններում չէր կարող նպաստել և չնպաստեց հայ ժողովրդի ազատագրմանը սուլթանիզմի լծից, այլ այստեղ, Ռուսաստանում մղվող իր քաղաքական-դասակարգային պայքարը, ռուսական ռևոլյուցիային առավել եռանդով մասնակցելը, ցարիզմի տապալումն արագացնելը, քանի որ դա վճռական նշանակություն կունենար ամբողջ հայ ժողովրդի բախտի համար։

Դեռևս 1894 թվականին Ֆ. Էնգելսը արտահայտվելով հայերի ազատագրման մասին՝ գրում էր.

«...եթե խոսենք անկեղծորեն, իմ անհատական կարծիքն այն է, որ Հայաստանի ազատագրությունը թյուրքերի, ինչպես նաև ռուսների ձեռքից, հնարավոր է միայն այն օրը, երբ կտապալվի ռուսական ցարիզմը» [1]։

Ֆ. Էնգելսի այս նամակը հրապարակվեց 1903 թվականին «Պրոլետարիատի կռիվը» թերթում, հատկապես ի պատասխան դաշնակների, որոնք սուտ զրպարտություններ էին տարածում սոցիալ-դեմոկրատիայի մասին, թե իբր նա «կռիվ է հայտարարում թյուրքահայ դատին»։

Հայտնի է, որ դաշնակները և բոլոր գույնի բուրժուական նացիոնալիստները հայ մարքսիստներին անվանում էին «ազգուրացներ», «ազգի դավաճաններ», այն բանի համար, որ նրանք հայ պրոլետարիատի և աշխատավորության խնդիրները չէին անջատում համառուսաստանյան պրոլետարիատի խնդիրներից։

«Այսպես,— գրում էր 1904 թվականին Ստ. Շահումյանը,— «Դրոշակի» պարտիան... երկար պայքարում էր Կովկասյան հայերի քաղաքական կարիքներին արձագանքելու հայ ինտելիգենցիայի փորձերի դեմ, բոլոր թույլատրելի ու անթույլատրելի միջոցներով աշխատում էր կասեցնել բանվորական շարժումը Կովկասում և «դավաճաններ» էր անվանում հայ ինտելիգենտ սոցիալ-դեմոկրատներին այն բանի համար, որ նրանք Կովկասի հայերի միտքը հեռացնում էին թյուրքահայ գործից և մասնատում էին հայ ինտելիգենցիայի ուժերը» [1]։



Ինչպես տեսնում ենք, «արևմտահայերի դատի» նկատմամբ ունենալիք վերաբերմունքի հարցը եղել է հայ բոլշևիկների և ազգայնական պարտիաների միջև արմատական տարաձայնությունների աղբյուր։

Այսպես կոչված՝ «հայկական հեղափոխության» գաղափարախոսները, միանգամայն անտեսելով Արևմտյան Հայաստանի և Արևելյան Հայաստանի սոցիալ-տնտեսական ու քաղաքական պայմանների տարբերությունները և դրանից բխող հայ ժողովրդի երկու հատվածների ազատագրական պայքարի բնույթի ու խնդիրների տարբերությունը, ամեն ինչ հանգեցնում էին միմիայն «Թյուրքահայաստանի» ազատագրման հարցին։ Նրանք ցարիզմի ու կապիտալիզմի դեմ կովկասահայ բանվորների ու գյուղացիների դեմոկրատական և սոցիալիստական շարժումը հակադրում էին Արևմտահայերի ազգային ազատագրական շարժմանը։ Այդպիսի հակադրությունը, կովկասահայության և, առաջին հերթին, հայ պրոլետարիատի ամբողջ ուշադրությունը «հայկական հեղափոխության» կողմը շեղելը, ըստ էության, ձեռնտու էր միայն հայ բուրժուազիային և ցարական ինքնակալությանը, որովհետև այն հարվածում էր Ռուսաստանի բոլոր ազգերի պրոլետարների համերաշխության գործին, նրանց դասակարգային պայքարի գործին։ Դա, վերջին հաշվով, վնասում էր նաև հենց արևմտահայության ազատագրման գործին։

Ուստի պատահական չէ, որ երբ 90-ական թվականների վերջին և հատկապես 900-ական թվականներին կովկասահայ պրոլետարիատը, հակառակ նացիոնալիստների պրոպագանդային, ռուս, վրացի, ադրբեջանցի և այլ ազգերի բանվորների հետ միաձույլ, ՌՍԴԲՊ ղեկավարությամբ դասակարգային-քաղաքական ակտիվ պայքարի ասպարեզ մտավ, բոլոր հայ բուրժուական նացիոնալիստները, առանց բացառության, դրա մեջ տեսան իրենց «գործի» համար մեծագույն վտանգ։ Նրանք դարձյալ օգտագործելով «Թյուրքահայաստանի ազատագրման» հարցը, հայ բանվորներին սպառնում, հորդորում, կոչ էին անում հեռանալ կովկասյան ռևոլյուցիոն շարժումից, պրոլետարական դասակարգային պայքարից և դիտելով իրենց նախ և առաջ որպես հայեր, առանց դասակարգային խտրության, ամբողջ ազգի հետ միասին նվիրվել միայն ու միայն «հայրենիքի սրբազան դատին»։

Հայաստանի բանվորական, ռևոլյուցիոն շարժման մեջ մարքսիզմի հաղթանակը հնարավոր եղավ միայն, այսպես կոչված, «հայկական հեղափոխության» նկատմամբ աշխատավորական մասսաների գիտակցության մեջ բուրժուական ու մանր-բուրժուական պարտիաների կողմից արմատավորվող վնասակար պատրանքները հաղթահարելու, բուրժուական-նացիոնալիստական մտայնությունների դեմ անողոք պայքարի միջոցով։ Մինչև որ գաղափարապես չջախջախվեր «հայկական հեղափոխության» կոնցեպցիան, անհնարին

---

[1] К. Маркс и Ф. Энгельс, соч., т. XXIX, стр. 341.

[1] Ստ. Շահումյան, Երկեր, 1-ին հատոր, Երևան, 1955 թ., էջ 49։

digitised by A.R.A.R.@

կլիներ հայ բանվորներին և աշխատավորական մասսաներին ռևոլյուցիոն
շարժման մեջ ներգրավելը, անհնարին կլիներ Հայաստանում սոցիալ-դեմո-
կրատական մարքսիստական կազմակերպությունների ստեղծումը, անհնարին
կլիներ հայ բանվորների ու գյուղացիների պայքարի միաձուլումը Ռուսաս-
տանի բոլոր ազգությունների պրոլետարիատի համընդհանուր պայքարի հետ։
1903 թվականին Հայ սոցիալ-դեմոկրատների միության «Մանիֆեստի»
առթիվ գրած իր հոդվածում Վ. Ի. Լենինը, անդրադառնալով ազգային հար-
ցում Ռուսաստանի հայ և մյուս ազգությունների պրոլետարիատի հիմնական
խնդիրներին, մատնանշում էր.

«Պրոլետարիատի գործը չէ ֆեդերալիզմ և ազգային ավտոնոմիա քարո-
զել, պրոլետարիատի գործը չէ նման պահանջներ առաջադրել, որոնք ան-
խուսափելիորեն հանգում են ավտոնոմ դասակարգային պետություն ստեղ-
ծելու պահանջին։ Պրոլետարիատի գործն է ավելի սերտորեն համախմբել բոլոր
և ամեն տեսակ ազգությունների բանվորների որքան կարելի է ավելի լայն
մասսաներին, համախմբել՝ հնարավորին չափ ավելի լայն ասպարեզում պայ-
քարելու համար հանուն դեմոկրատական ռեսպուբլիկայի և հանուն սոցիա-
լիզմի»[1]։

Այս նշանաբանի տակ էլ գործում էին Հայաստանի բոլշևիկները, ան-
հաշտ պայքար մղելով պրոլետարիատի համերաշխության թշնամիների՝ նա-
ցիոնալիստների դեմ։

Բոլշևիկները միշտ էլ պաշտպանել են և պաշտպանում են ճնշված ազ-
գերի ազատագրական շարժումը, որովհետև պրոլետարիատը պայքարում է
բոլոր տեսակի՝ և՛ սոցիալական և՛ ազգային ճնշումների դեմ։ Հայաստանի
բոլշևիկները ամենից շատ էին մտահոգված արևմտահայերի թե՛ ազգային և
թե՛ սոցիալական ազատագրությամբ։ Նրանք երբեք չեն դատապարտել և չէին
կարող դատապարտել թյուրքական ռազմա-ֆեոդալական բռնապետության դեմ
Արևմտահայ ժողովրդական մասսաների ազատագրական պայքարը։

Հայտնի է, որ ՌՍԴԲՊ Կովկասյան միության կազմակերպման առաջին
իսկ օրերից, 1903 թվականի գարնանը, նրա պաշտոնական օրգան «Պրոլե-
տարիատի կռիվը» այդ հարցի կապակցությամբ իր խմբագրական հոդվածում
պարզ ու որոշակի ազդարարեց.

«Ուղարկելով Տաճկաստանում կռվող եղբայրներին մեր սոցիալիստական
ողջույնը, մենք բացարձակ կերպով հայտարարում ենք մեր համակրությունը
բազմաչարչար տաճկահայ ժողովրդի ազատարար գործին և մեր անկեղծ ցան-
կությունն է, որ այդ ազատությունը հասնի որքան կարելի է շուտ»[2]։

Բայց բոլշևիկները դատապարտել են և ճիշտ են դատապարտել այն
ավանտյուրիստական, արևմտահայերի (և արևելահայերի) ազատագրման
գործին մեծապես վնասող քաղաքականությունն ու տակտիկան, որ առաջա-
դրել և կիրառում էին բուրժուական նացիոնալիստները։ Պատմությունը ցույց
տվեց, որ իրավացի էին բոլշևիկները։ Իսկ «Թյուրքահայ դատի» մասին ամե-
նից բարձր աղմկողները և առանձնապես «Դաշնակցություն» կոչվող «պար-
տիան», որ վաղուց ի վեր կորցրել է իր ազգային կերպարանքը՝ վերածվելով

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 6, էջ 411։
[2] «Պրոլետարիատի կռիվ»-ը №№ 2—3, 1903 թ.։



իմպերիալիստական տերությունների վարձկան մի բանդայի, միայն մեծա-
պես վնասեցին այդ «դատին»։

Վերանայելով «հայկական հարցում» Հայաստանի բոլշևիկների անցյալ
կոնցեպցիան, Ար. Մնացականյանը, ինչպես տեսնում ենք, խիստ շատած, իր
վրա մի անշնորհակալ պարտավորություն է վերցրել։

Ճգնելով ամեն կերպ հիմնավորելու Ասոցիացիայի տված իր գնահատա-
կանը, ընկ. Մնացականյանն այնուհետև գրում է, որ «Հայ իրականության մեջ
սոցիալիստական շարժումը չէր կարող անտեսել արևմտահայերի ազատագրը-
ման, ինչպես և Ռուսաստանում ազգային ճնշման դեմ պայքարելու հարցը»։
Սա, անշուշտ, ճիշտ միտք է և մարքսիստներից ոչ ոք, որքան մեզ հայտնի է,
չի ժխտել այս հանգամանքը։ Բայց ընկ. Մնացականյանը այս միտքը բերելով՝
առաջադրում է սրա հետ չառնչվող մի բոլորովին այլ թեզ, թե իբր 90-ական
թվականներին «հայերի համար սոցիալիզմի գաղափարն... առնչվում էր ժողո-
վրդի մեծ մասին՝ (թյուրքական լծի տակ գտնվող հատվածին) սոցիալական
և ազգային սարկացված վիճակից ազատագրելու հարցի հետ» (էջ 45։— Ընդ-
գծումն իմն է — Վ. Ա.)։

Սա և՛ պատմական և՛ թեորիական տեսակետից միանգամայն սխալ է։ Սո-
ցիալիզմի գաղափարի այդպիսի ըմբռնում եղել է, բայց ո՞ւմ կողմից։ Միթե
հայ հասարակական սոցիալիստական միտքը այն ժամանակ ամբողջովին այդ
գծի վրա էր կանգնած։ Մի՞թե պայքար չկար այն ժամանակ և մանավանդ հե-
տո «ազգային սոցիալիզմի» այդպիսի ըմբռնման դեմ։ Չէ՞ որ դեռ նարոդնի-
կության շրջանից սկսած համառուսաստանյան ռևոլյուցիոն շարժումից հայ
ինտելիգենցիայի մի մասի դեպի հայկական ազգային (արևմտահայ) շար-
ժումն անցնելը արդեն գաղափարական խոշոր բախումներ հարուցեց։ Մենք էլ
չենք խոսում մարքսիստների մասին, որոնք կովկասահայ իրականության մեջ
իրենց ասպարեզ գալու օրից առաջին հերթին գաղափարական պայքար ծավա-
լեցին բոլոր նրանց դեմ, ովքեր այստեղ սոցիալիզմի գաղափարը կապում էին
ոչ թե կովկասյան և համառուսական բանվորական շարժման հետ, այլ «արև-
մըտահայ շարժման» հետ։

Բերելով այդպիսի մի թեզ, մեզ թվում է, որ ընկ. Մնացականյանը ոչ թե
այն պետք է պաշտպաներ, այլ քննադատեր, որովհետև սոցիալիզմի այդպիսի
ըմբռնումը պրոլետարական ըմբռնում չէր նույնիսկ իր ժամանակի համար,
պատմականորեն սխալ էր։ Սոցիալիզմի նման ըմբռնումից հրաժարվելով
միայն հայ գիտակից բանվորները, դրանց թվում նաև «Ասոցիացիայի» ան-
դամներից շատերը, եկան իսկական ռևոլյուցիոն մարքսիզմի դիրքերը։

«Ասոցիացիայի» ծրագրին ու գործունեությանը ավելի քննադատական
մոտեցում ցուցաբերելով՝ նրա հիմնադիր ընկ. Աշ. Խումարյանը սոցիալիզմի
նման ըմբռնումը բոլորովին էլ չի փորձում արդարացնել, այլ, հակառակը, հա-
մարում է իրենց խոցելի կողմը։

Նա գրում է. «...Խառնաշփոթություն կար մեր բանվորականության մեջ։
...Գաղափարների ու գործելակերպի մի շփոթ, որովհետև ձգտելով կապել հե-
ղափոխական ու բանվորական կռիվը հայության ու ազգի հետ, հենց դրանով
մենք ընկնում ենք մի խորխորատ ու անորոշություն»[1]։

Այսպիսով, հակառակ ընկ. Մնացականյանի պնդման, փաստերը ցույց են
տալիս, որ Ասոցիացիան կանգնած չի եղել «ժամանակի բանվորական շարժ-

[1] «Մարտակոչ», 1924, № 13։

digitised by A.R.A.R.@

ման առաջավոր մարտիկների շարքում», այսինքն՝ չի եղել մարքսիստական կազմակերպություն։ Նրա հիմնական գործունեությունը ունեցել է դեմոկրատական, ազգային-ազատագրական բնույթ։ Արծարծելով ազգային-ազատագրական, դեմոկրատական գաղափարներ՝ նա, անշուշտ, այն ժամանակվա պայմաններում հայ հասարակության մեջ կատարել է պրոգրեսիվ որոշ դեր։ Ասոցիացիայի գործունեության կարևոր դրական կողմը պետք է համարել այն, որ նա իր օրգանում այնուամենայնիվ թարգմանաբար տպագրել է մի քանի հոդված մարքսիզմի մասին, խոսել է կապիտալիստական շահագործման դեմ, բանվոր դասակարգի ծանր վիճակի, նրա քաղաքական իրավազրկության, բանվորների, թեկուզ և ազգային շարժման մեջ, ինքնուրույն կազմակերպվելու խնդիրների մասին։ Ասոցիացիայի անդամ բանվորները տրամադրված էին ռեվոլյուցիոնորեն, տարերայնորեն հակված էին դեպի սոցիալիզմը, բայց նրանք դեռ չունեին սոցիալ-դեմոկրատական գիտակցություն։ Այդ գիտակցությունը նրանց մեջ կարող էր մտցվել միայն դրսից, սոցիալ-դեմոկրատիայի միջոցով։ Իսկ, որովհետև Ասոցիացիան գործում էր հանուն հայկական անջատ «հեղափոխության», նա մեկուսացած էր Ռուսաստանի մյուս ազգերի բանվորներից, մանավանդ ռուս պրոլետարներից, սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններից ու խմբերից։

Ասոցիացիան չի խաղացել և չէր էլ կարող խաղալ այն դերը, ինչ նրան վերագրում է ընկ. Մնացականյանը։ Մարքսիզմի մասին համակրալից հայտարարություններ անելը, մարքսիստական առանձին հոդվածներ թարգմանելը, կամ արտատպելը դեռևս նշան չեն մարքսիստ լինելու։ Ռուս նարոդնիկները մարքսիստներ չլինելով հանդերձ, կատարել են Մարքսի և Էնգելսի երկերի մի շարք թարգմանություններ, օբյեկտիվորեն նպաստել են այդ երկերի տարածմանը Ռուսաստանում։ Այդ նույնը կատարել են նաև հնչակյանները։

Մարքսիզմը ամբողջական աշխարհայացք է, ռևոլյուցիոն, մարտական ուսմունք՝ հասարակության սոցիալիստական վերափոխման մասին։ Նա ռևոլյուցիոն թեորիայի ու ռևոլյուցիոն պրակտիկայի միասնության հոյակապ մարմնացումն է, պրոլետարիատի ազատագրական պայքարի անփոխարինելի ուղեցույցը։ Սոցիալիզմը և նացիոնալիզմը իրար հակամերժ իդեոլոգիա են։

Ասոցիացիան թե՛ իր ծրագրով, թե՛ պրակտիկ գործունեությամբ չի դրսևորել մարքսիզմի նման ըմբռնում։ Նրա պրակտիկան ճիշտ չի արտահայտել հայ պրոլետարիատի ազատագրական խնդիրները և ուղիները։

Ասոցիացիայի և նրան գաղափարակից հոսանքների ու կազմակերպությունների գործունեությունը մարքսիստական որակելը, սոցիալիստական առաջավոր ջոկատ հայտարարելը ոչ միայն սխալ է պատմագիտական տեսակետից, այլև նման մոտեցումը կարող է միայն տեղի տալ թյուր պատկերացումների մարքսիզմի էության մասին, օբյեկտիվորեն ճանապարհ բացել իդեոլոգիական շեղումների, մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների աղավաղման համար։ Առավել ևս անթույլատրելի է, երբ ազգային հարցում վերոհիշյալ հոսանքների սխալ վարքագիծը արդարացնելու համար, ազգային նիհիլիզմի դեմ պայքարի անվան տակ զոհաբերվում են Հայաստանի բոլշևիկների անցյալի տրադիցիաները, այն տրադիցիաները, որոնք այսօր էլ մեր մասսաների, առանձնապես մեր երիտասարդության պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու գործում կարևոր նշանակություն ունեն։

---

# ԳԱՂՈՒԹԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԱԳՐԵՍԻԱՅԻ ԴՈԿՏՐԻՆԱՆ

Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Մեր ժամանակներում մեծ փոփոխություններ են կատարվում Ասիայում և
Աֆրիկայում։ Հետպատերազմյան 12 տարիների ընթացքում քաղաքական ան-
կախություն է ձեռք բերել ասիական և աֆրիկյան գաղութային բնակչության
80 տոկոսը։

Ասիական շատ ժողովուրդներ թոթափելով գաղութային ստրկության
շղթաները՝ ինքնուրույն զարգացման ուղին են դուրս եկել, ազգային վերա-
ծնունդ են ապրում։ Մյուսները պայքարում են իրենց ազատագրության հա-
մար։ Զարթոնք են ապրում Աֆրիկա հսկա մայր ցամաքի ժողովուրդները,
որոնք չեն ուզում այլևս հաշտվել իրենց իրավազուրկ դրության հետ։

Մերձավոր Արևելքի երկրներում, Հյուսիսային Աֆրիկայի գոտում վերջին
տարիներին արաբական աշխարհի ժողովուրդները հերոսական պայքար են
ծավալել իրենց ազատության համար, Ֆրանսիայի, Անգլիայի և գաղութակա-
լական մյուս ուժերի իմպերիալիստական ճնշումից ազգային լիակատար
ազատագրության համար։ Արաբական Արևելքի գրեթե բոլոր ժողովուրդների
հաջող պայքարը գաղութակալության դեմ, որ սպառնալիքի տակ է դրել
օտարերկրյա մոնոպոլիաների վիթխարի գերշահույթներն ու իմպերիալիստա-
կան տերությունների ամեն տեսակ արտոնությունները, սարսափահար արեց
գաղութարարներին։

Ագրեսիա սանձազերծելով Եգիպտոսի դեմ՝ Անգլիան, Ֆրանսիան և մի-
ջազգային իմպերիալիզմի գործիք Իսրայելի պետությունը ձգտում էին վերա-
կանգնել և պահպանել գաղութակալական դիրքերը Մերձավոր Արևելքի շըր-
ջանում։ Գաղութարարները հուսով էին, թե Եգիպտոսի պարտությունը ուղի
կհարթի արաբական երկրների ազգային անկախությունը վերացնելու և ամ-
բողջ Մերձավոր ու Միջին Արևելքում, Հյուսիսային Աֆրիկայում իմպերիա-
լիստական տիրապետություն վերահաստատելու և ամրապնդելու համար։

Սակայն, այդ ագրեսիան ոչ միայն չամրապնդեց գաղութակալությունը,
այլև ավելի խարխլեց նրա փտած հիմքերը։ Եգիպտոսի և արաբական երկըր-
ների ժողովուրդների համառ դիմադրության հետևանքով, բոլոր խաղաղասեր
և արդարության կողմնակից պետությունների ու ժողովուրդների վճռական
դատապարտման շնորհիվ, սոցիալիստական երկրների, առանձնապես ՍՍՌՄ
լուրջ նախազգուշացման հետևանքով Անգլիան, Ֆրանսիան և Իսրայելը ստիպ-
ված եղան դադարեցնել պատերազմը և Եգիպտոսից դուրս բերեցին իրենց
ագրեսիվ զորքերը։

Ինչպիսի՞ դիրք բռնեցին Միացյալ Նահանգները։ Չնայած Սովետական
Միության առաջարկին՝ ԱՄՆ-ը հրաժարվեցին որևիցե ռեալ քայլ անել ագ-
րեսիան կանխելու համար։ Միևնույն ժամանակ, թեև մի քանի ամիսների

digitised by A.R.A.R.@

*ընթացքում անգլիական և ֆրանսիական գաղութարարները ԱՄՆ-ից օգնություն էին խնդրում մերձավորարևելյան ժողովուրդների ազգային ազատագրական շարժման դեմ պատերազմ վարելու համար, Ամերիկյան բացահայտ կերպով չմիացավ ռազմական ագրեսիային։ Իհարկե, թե՛ ԱՄՆ-ը, թե՛ Անգլիան և թե՛ Ֆրանսիան միասնական ձգտում ունեն՝ ճնշել արաբական ժողովուրդների ազատության և անկախության շարժումը։ Բայց ամերիկյան իմպերիալիստները ձգտում են այդ նպատակին հասնել այնպես, որ ի վերջո իրենք դառնան Մերձավոր և Միջին Արևելքում գտնվող բոլոր նավթային ռեսուրսների և ստրատեգիական պլացդարմների տերը։*

*Այժմ, երբ անգլո-ֆրանս-իսրայելական ագրեսիան Եգիպտոսի դեմ ձախողվել է, իսկ Մերձավոր և Միջին Արևելքի շրջանում բարենպաստ պայմաններ և ռեալ հնարավորություններ են ստեղծվել խաղաղությունն ամրապնդելու համար, ԱՄՆ-ի կառավարությունը հրապարակեց մի ծրագիր՝ «Էյզենհաուերի դոկտրինա»-ն, որը ոչ այլ ինչ է, քան Միջին և Մերձավոր Արևելքի երկրներում ամերիկյան գաղութային քաղաքականության նոր պլան։*

*Ամերիկյան սենատը և ներկայացուցիչների պալատը վերջերս հաստատեցին Էյզենհաուերի ծրագիրը։*

*Որո՞նք են ԱՄՆ-ի այդ պլանի դրդապատճառները ըստ ամերիկյան կառավարողների։ Այդպիսի քաղաքականության համար Դալլեսը առաջին գործոն համարում է Անգլիայի և Ֆրանսիայի տնտեսական ու քաղաքական դիրքերի թուլացումը Մերձավոր և Միջին Արևելքում, այդ երկրների հեղինակության անկումը Եգիպտոսի դեմ կատարած ավանտյուրայի հետևանքով։ Մյուս գործոնը ըստ Դալլեսի այն է, որ խոշոր չափով աճել է Սովետական Միության հեղինակությունը, և իբր թե արաբական ժողովուրդների համար ստեղծվել է «կոմունիստական և սովետական մեծ վտանգ»։*

*Երրորդ գործոն Դալլեսը համարում է արաբական երկրների ուժեղացող պայքարը ինքնորոշման և անկախության համար, որը և նրա կարծիքով «Արևմուտքի համար գլխավոր վտանգն է»։ Այս գործոններն ամերիկյան կառավարողների կարծիքով Մերձավոր Արևելքում ստեղծել են բոլորովին նոր, ԱՄՆ-ի համար բարենպաստ դրություն։ Այդ դրությունը նրանք դիտում են որպես «վակուում» (այսինքն՝ դատարկ տարածություն), որը նրանք ուզում են լցնել այդ երկրների ներքին գործերին իրենց ռազմական ու տնտեսական միջամտությամբ։*

*«Էյզենհաուերի դոկտրինա»-ն արաբական ժողովուրդների ազգային անկախության շարժումը խեղդելու և այդ շրջանում Անգլիայի և Ֆրանսիայի տեղը գրավելու փորձ է։ Էյզենհաուերը «տեսնում է, որ բրիտանական առյուծը, որը մի ժամանակ իր մռնչոցով ահ ու սարսափ էր պատճառում Ասիայի և Աֆրիկայի շատ ժողովուրդների, ղառամել, թուլացել խոպոտել է և այժմ իր պոչն է կորցրել Եգիպտոսում։*

*Եվ այժմ այդ առյուծին փոխարինելու, Մերձավոր և Միջին Արևելքի շրջաններում անգլիական և ֆրանսիական իմպերիալիզմին փոխարինելու է նետվում ամերիկյան իմպերիալիզմը» (Ն. Ս. Խրուշչև)։*

*Զգտելով սքողել Մերձավոր և Միջին Արևելքի երկրների ներքին գործերին կոպիտ միջամտությունը և այդ շրջանի երկրների նկատմամբ իրենց ագրեսիվ քաղաքականությունը՝ ԱՄՆ-ի կառավարողները սստահոդ խոսում են խաղաղության պաշտպանության մասին, իրենց հայտարարում են մահմեդական աշ-*



*խարհի բարեկամներ։ Սակայն դա հին միջոց է, որից իր ժամանակին այնքան եռանդով, բայց ապարդյուն փորձեցին օգտվել Վիլհելմ II-ն ու Հիտլերը։ Այն պնդումները, թե Արաբական Արևելքում կրոնի շահերն իբր պահանջում են այդ շրջանն ուղարկել ամերիկյան զինված ուժեր, միանգամայն կեղծ են։*

*Ինչպես միշտ, այս անգամ նույնպես ամերիկյան իմպերիալիստները ճըգնում են իրենց քաղաքականությունը ներկայացնել հակագաղութարարական։ Սակայն դա խաբեություն է։*

## ԱՄՆ-Ը ԳԱՂՈՒԹԱԿԱԼԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ Է ՎԱՐՈՒՄ

*Ամերիկյան իմպերիալիզմի մոլի ջատագովները իրականությունը կեղծելով ջանք չեն խնայում ապացուցելու և նույնիսկ տեսականորեն հիմնավորելու, թե իբր ԱՄՆ-ը ի տարբերություն Անգլիայի, Ֆրանսիայի և այլ գաղութատեր պետությունների, գաղութային քաղաքականություն չեն վարել և այժմ էլ չեն վարում։ Այդ ուղղությամբ ստեղծվում է լեռ գրականություն, գործի են դրվում բոլոր միջոցները։ Ամերիկյան բազմաթիվ գրքերում կապիտալի պնակալեզ վարձու գրչակները ԱՄՆ-ը ներկայացնում են որպես նույնիսկ «գաղութային քաղաքականության դեմ մղվող պայքարի առաջամարտիկ»։ Ինչպիսի՜ կեղծիք։*

*Դեռևս 1933 թվականին իր դառը գրած նամակում Ջավահարլալ Ներուն*
*ամերիկյան իմպերիալիզմի գաղութակալական բնույթի մասին նկատել է.*
*«Զկարծես, թե Միացյալ Նահանգների իմպերիան սահմանափակվում է Ֆիլի-*
*պինյան կղզիներով։ Արտաքնապես դա միակ գաղութն է, որին նրանք տիրա-*
*պետում են, բայց, հաշվի առնելով մյուս իմպերիալիստական տերություն-*
*ների փորձը և դժվարությունները, նրանք կատարելագործել են հին մեթոդ-*
*ները։ Նրանք իրենց նեղություն չեն տալիս աննեքսիայի ենթարկել մի*
*որևէ երկիր, այնպես, ինչպես Անգլիան է աննեքսիայի ենթարկել Հնդկաս-*
*տանը. նրանց հետաքրքրում է միայն շահը և դրա համար էլ նրանք աշխա-*
*տում են իրենց հսկողության տակ առնել այդ երկրի հարստությունները։*
*Դրան հասնելուց հետո դժվար չէ հսկողության ենթարկել երկրի բնակչությա-*
*նը... և ամբողջ երկիրը։ Այսպիսով, առանց որևէ հոգսի կամ ակտիվ նացիո-*
*նալիզմի հետ բախումներ ունենալու, նրանք հսկում են երկիրը և նրա հա-*
*րստություններից ստանում իրենց բաժինը։ Այդ խորամանկ մեթոդը կոչվում*
*է տնտեսական իմպերիալիզմ։ Քարտեզի վրա նրան չես տեսնի։ Երկիրը կա-*
*րող է ազատ թվալ, եթե նրա մասին դատես աշխարհագրական դասագրքով*
*կամ ատլասով։ Բայց երբ ավելի խորն ես նայում, տեսնում ես, որ նա*
*գտնվում է այլ երկրի ճանկերում կամ, ավելի ճիշտ, նրա բանկերի և խոշոր*
*ձեռնարկատերերի ճանկերում։ Ահա հենց այդ անտեսանելի իմպերիային է,*
*որ տիրապետում են Ամերիկայի Միացյալ Նահանգները» (տե՛ս* Л. Натарад-
жан «От Хиросимы до Бандунга» М. 1956, стр. 16—17)։

*Որքան էլ դիպուկ է ասված, այնուամենայնիվ միակողմանի և սխալ կլիներ կարծել, թե ԱՄՆ-ը միայն կապիտալ արտահանելու միջոցով, «խաղաղ» կերպով են թափանցել հետամնաց երկրները, առանց այս կամ այն տերիտորիայի ռազմա-քաղաքական աննեքսիայի և ստրկացման։*

*Միայն վերջին հիսուն տարվա ընթացքում ԱՄՆ-ը 100-ից ավելի զինված*

digitised by A.R.A.R.@

ինտերվենցիա և «դավադրություններ» են կազմակերպել լատինական Ամերի-
կայի երկրների՝ Մեքսիկայի, Պուերտո-Ռիկոյի, Պանամայի, Հայիթիի, Գոն-
դուրասի, Նիկարագուայի, Կոլումբիայի, Կոստա Ռիկայի, Դոմինիկյան ռես-
պուբլիկայի դեմ։ Իսկ 1832 թվականից մինչև 1932 թվականը, ԱՄՆ-ի Պե-
տական դեպարտամենտի տվյալներով, ամերիկյան զինված ուժերը 43 ան-
գամ ափ են իջել ասիական և խաղաղօվկիանոսյան տերիտորիաներում։

Ներկայումս փլվող գաղութային սիստեմի գլխավոր հենարանը ամերիկ-
յան իմպերիալիզմն է։ Ամերիկյան իմպերիալիստները զինված կերպով ճըն-
շեցին ազգային-ազատագրական շարժումը Ֆիլիպիններում, ամեն կերպ օժան-
դակում են հոլանդական գաղութարարների փորձերին՝ վերականգնելու իրենց
տիրապետությունը Ինդոնեզիայում, նրանք փորձեցին խեղդել ժողովրդական
ռևոլյուցիան Չինաստանում, օկուպացրել են Տայվան կղզին, կազմակերպե-
ցին արյունոտ ռազմական ինտերվենցիա կորեական ժողովրդի դեմ, ամեն
կերպ ճգնում են ընդլայնել գաղութային պատերազմը Հնդկաչինում։ Բոլորին
հայտնի է ԱՄՆ-ի իրոք խարդախ դիրքը Հնդկաստանի անկապտելի մասը հան-
դիսացող պորտուգալական Գոայի, Կիպրոսի, Ալժիրի, Արևմտյան Իրիանայի
հարցում։

Այս բոլոր փաստերը ցույց են տալիս, որ ԱՄՆ-ը այժմ հանդես են գա-
լիս գաղութային սիստեմը կործանումից փրկելու և պահպանելու օգտին։ Այդ
նպատակով, ԱՄՆ-ը լայնորեն օգտագործելով իրենց տնտեսական և ռազ-
մական հզորությունը՝ փորձում են փոխառությունների, «նվիրատվություննե-
րի» օգնությամբ տնտեսապես ստրկացնել Ասիայի և Աֆրիկայի հետամնաց
երկրները, նրանց դարձնել կապիտալի ներդրման շահավետ ոլորտ, ձգտում
են դանդաղեցնել այդ երկրների տնտեսական և, հատկապես, արդյունաբե-
րական զարգացումը և դրանով իսկ ջլատել նրանց ուժերն ու միասնությունը։

Նմանօրինակ «օգնությունը» ամերիկյան իմպերիալիստներն օգտագոր-
ծում են հետամնաց երկրներին ռազմական և քաղաքական բնույթի պարտա-
վորություններ թելադրելու, նրանց տերիտորիաները ռազմական բազաների
համար օգտագործելու, ռազմական բլոկների մեջ ներքաշելու և «համաշխար-
հային կոմունիզմի» դեմ պայքարելու պատրվակով իրենց մրցակիցներին գա-
ղութային տիրապետություններից դուրս մղելու և ամերիկյան տիրապետու-
թյուն հաստատելու համար։

Այդպես եղավ Վյետնամում, երբ ամերիկացիներին հաջողվեց ուժեղաց-
նել իրենց դիրքերն այդ երկրի հարավային մասում։ Ամերիկյան իմպերիա-
լիզմը ձգտում է նույնն անել ֆրանսիական հյուսիս-աֆրիկյան տիրապետու-
թյուններում, դրան են այժմ ձգտում Էյզենհաուերը և Դալլեսը Մերձավոր և
Միջին Արևելքի երկրներում։ «Էյզենհաուերի դոկտրինա»-ն գաղութակալու-
թյան դրսևորման նոր ձև է, որը ամերիկյան նավթային մոնոպոլիստները
ձգտում են արմատավորել այնտեղ, որտեղ նրանց կհաջողվի դուրս մղել հին
տիպի՝ անգլիական և ֆրանսիական գաղութարարներին։

## «ԷՅԶԵՆՀԱՈՒԵՐԻ ԴՈԿՏՐԻՆԱ»-Ն ԵՎ ՆԱՎԹԸ

Պատահական չէ, որ «Էյզենհաուերի դոկտրինա»-ն «Նավթային դոկտրի-
նա» անունն է ստացել։ Ո՞ւմ շահերն է արտահայտում և տնտեսական ի՞նչ
նպատակ է հետապնդում այդ դոկտրինան։ Այս հարցին պատասխանել են
հենց իրենք՝ ամերիկյան պետական գործիչները։



Ամերիկյան սենատոր Քեֆովերը վերջերս հայտարարեց, որ «Էյզենհաուերի
դոկտրինա»-ն առաջին հերթին համապատասխանում է նավթային մոնոպոլիա-
ների շահերին և նպատակ ունի ոչ մի կերպ թույլ չտալ ամերիկյան նավ-
թային կամպանիաներին պատկանող կոնցեսիաների ազգայնացումը արաբ-
ների կողմից, իսկ ազգայնացման դեպքում անմիջապես ռազմական միջա-
մտություն կազմակերպել։ Ամերիկյան նավթային խոշոր մոնոպոլիստ Նել-
սոն Ռոկֆելլերի նամակը պրեզիդենտ Էյզենհաուերին, որ վերջերս հրապա-
րակվեց մեր մամուլում, մի ավելորդ անգամ համոզիչ կերպով ցույց է տալիս
նավթային մագնատների ազդեցիկ դերը ամերիկյան գաղութային իմպերիա-
լիստական քաղաքականության մեջ։ Չպետք է մոռանալ նաև այն հանգա-
մանքը, որ Սուեզի ճգնաժամի ժամանակ ԱՄՆ-ի արտաքին քաղաքականու-
թյունը Դալլեսի հետ միասին գլխավորում էր նրա տեղակալ Հուվերը, որը
սերտորեն կապված է նավթային արքաների հետ և փայատեր է։

Բնութագրելով ամերիկյան նավթային շահերի աճը Մերձավոր և Միջին
Արևելքում՝ «Ուորլդ Ռիպորտ» ամսագիրը դեռևս 1946 թվականին գրել է, որ
«արաբական երկրները ավելի քան երբեք դառնում են ամերիկյան սահման»։
Հայտնի է, որ 1939 թվականից մինչև 1953 թվականը նավթի հանույթը Պար-
սից ծոցի շրջանում ավելացել էր 7 անգամ։ 30 տարի առաջ այդտեղ
տարեկան արդյունահանվում էր 5 մլն. տոննա նավթ, իսկ այժմ՝ 162 մլն.
տոննա։ Եթե 1937 թվականին ԱՄՆ-ին բաժին էր ընկնում մերձավորարևելյան
նավթի հանույթի միայն 13 տոկոսը, իսկ Անգլիային՝ ավելի քան 80 տոկոսը,
ապա այժմ պատկերն արմատապես փոխվել է. 1956 թվականին ամերիկյան
մոնոպոլիաներն արդեն իրենց ձեռքն էին վերցրել նավթի հանույթի 60 տոկոսը,
Անգլիային թողնելով միայն 30 տոկոսը։ Պաշտոնական տվյալներով ամերիկ-
յան կապիտալ ներդրումները արաբական երկրներում 1943 թվականին կազ-
մել էին 60 մլն. դոլար, իսկ 1950 թվականին արդեն 680 մլն. դոլար։ Սաու-
դյան Արաբիայի նավթային բոլոր կոնցեսիաները, Կուվեյտի նավթահորերի
կեսը պատկանում են ամերիկացիներին։ 1953 թվականին Մոսադեկի կա-
ռավարությունը տապալելուց հետո ԱՄՆ-ի նավթային մոնոպոլիստները իրենց
ձեռքը գցեցին նաև Անգլո-իրանական նավթային ընկերության՝ «ԱԻՆԿ»-ի
նավթի 40 տոկոսը։

Տրանսարաբական նավթամուղի կառուցումից հետո, որը ունի 1000 մղո-
նից ավելի երկարություն՝ Սաուդյան Արաբիայից մինչև Սիդոն, մի ամբողջ
խումբ երկրներ (Հորդանան, Լիբանան և Սիրիա) դարձան ամերիկյան իմպե-
րիալիզմի քաղաքականության, դավադրությունների, կառավարական բռնի
հեղաշրջումների ասպարեզ։

Ո՛չ մի նավթ աշխարհում այնքան շահույթ չի բերում, որքան արաբական
և իրանական նավթը։ Մերձավոր Արևելքի նավթահորերի նավթատվությունը
մի քանի հարյուր անգամ ավելի է, քան ԱՄՆ-ինը։

«Արաբիեն-Ամերիկեն օյլ կոմպանի»-ն՝ «ԱՐԱՄԿՈ»-ն
Արաբ նավթագործին 16 ժամվա աշխատանքի համար վճարում է ամերիկյան նավթագործ բանվորի
աշխատավարձի 1/6-ը։ Ժամանակակից տեխնիկայի և բանվորական էժան ձեռ-
քերի օգտագործման շնորհիվ արդյունահանվող նավթի 1 տոննան միջին
հաշվով նստում է 1,5 դոլար, իսկ Արևմտյան Եվրոպայում վաճառվում է 15
դոլարով։ 1955 թվականին ամերիկյան և անգլիական նավթային մոնոպոլիա-
ները Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում արդյունահանել են 150 մլն.

digitised by A.R.A.R.@

տոննա նավթ, ծախսելով ընդամենը 240 մլն. դոլար և մաքուր շահույթ ստանալով 1,850 մլն. դոլար։ Միայն Սաուդյան Արաբիայի հում նավթի վաճառքից «ԱՐԱՄԿՈ»-ն 1955 թվականին ստացավ 500 մլն. դոլար շահույթ։

Ինչ վերաբերում է Մերձավոր Արևելքի երկրներին ամերիկյան «օգնությանը», որը նախատեսված է «Էյզենհաուերի դոկտրինա»-ում և որը այդքան մերկապարանոց գովաբանում և բարերարություն են համարում իմպերիալիզմի ջատագովները, ապա բավական է նշել, որ արաբական բոլոր երկրներին մինչ այժմ ցույց տրվող ամերիկյան ամենամյա «օգնությունը» չի գերազանցում «ԱՐԱՄԿՈ»-ի մեկ տարվա շահույթի $^{1}/_{20}$-ը։

Ահա թե ինչու ամերիկյան նավթային հսկաների շահերը արտահայտող Էյզենհաուերը և Դալլեսը այդքան ջերմեռանդությամբ ձգտում են «պաշտպանել» Մերձավոր և Միջին Արևելքի երկրների «անկախությունն ու ազատությունը»։ Հենց ամերիկյան խոշորագույն նավթային ընկերություններն են ստիպում ԱՄՆ-ի կառավարությանը զորք ուղարկել աշխարհի այդ շրջանը՝ ճնշելու արաբական ժողովուրդների ազգային շարժումները՝ հանուն իրենց նավթային շահերի պաշտպանության։

Ամերիկացիներին հրապուրում է ո՛չ միայն նավթը։ Աշխարհի այդ մասում գործում են ամերիկյան 500-ից ավելի տնտեսական և 117 «կրոնական ու կուլտուրական» կազմակերպություններ։ Անդրօվկիանոսյան մոնոպոլիստները առանց թաքցնելու հայտարարում են, որ ներկայումս ԱՄՆ-ի էքսպորտի համար միջինարևելյան շուկաներն այնքան նշանակալի են, որքան Լատինական Ամերիկայի շուկաները։

Հատկանշական է, որ «վակուումը» լրացնելուն շտապում են մասնակցել արևմտա-գերմանական խոշոր մոնոպոլիաները։ «Էյզենհաուերի դոկտրինա»-ն մեծ բավականությամբ ընդունվեց Բոննում, որտեղ նույնպես պլաններ են կազմվում Մերձավոր և Միջին Արևելքի համար ամերիկյան ծրագրին մասնակցելու ուղղությամբ։ Ամերիկացիները վերջերս բանակցություններ էին վարում արևմտա-գերմանական արդյունաբերական մագնատների հետ, նրանց կապիտալը և փորձը Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում օգտագործելու շուրջը։ Այդ հարցում մեծ ակտիվություն են ցուցաբերում հատկապես կրուպպը և Հռենոսի ու Ռուրի մյուս արքաները։

Այս բոլորը չեն կարող չհանգեցնել Հյուսիս-Ատլանտյան խմբավորման, առանձնապես նրա երկու գլխավոր մասնակիցների՝ Անգլիայի և ԱՄՆ-ի հակասությունների հետագա սրմանը։ Կարծել, թե անգլիական շահերի պաշտպանությունը կարելի է լիովին հանձնել ԱՄՆ-ին, գրել է Լոնդոնի «Թայմսը», հավասարազոր է մոլորության մեջ ընկնել, քանի որ «անգլիական ու ամերիկյան շահերը շատ բանով տարբեր շահեր են»։

«Էյզենհաուերի դոկտրինա»-ն արդեն քննադատության է արժանացել և բացահայտ տագնապ է հարուցել Անգլիայում։ Այնուամենայնիվ, անգլիական կառավարողները թե՛ տնտեսապես և թե՛ քաղաքականապես կախված լինելով իրենց ավագ դաշնակցից, գերադասում են լռել։ Չէ՞ որ չի կարելի բացահայտ հանդես գալ այն երկրի դեմ, որից դոլարային մեծ փոխառություններ է սպասում Անգլիան՝ լուծելու եգիպտական ավանտյուրայի հետևանքով առաջացած տնտեսական մեծ դժվարությունները։ Միաժամանակ անգլիացիները հույս ունեն, որ ԱՄՆ-ը իրականացնելով «Էյզենհաուերի դոկտրինա»-ն չեն կարող



յոլա գնալ առանց «Բաղդադի Պակտի» և դրա մեջ տեսնում են իրենց միջինարևելյան շահերը պաշտպանելու հնարավորությունը։

Այդ երկակիությունը վկայում է, որ Անգլիայի շահերի տեսակետից աշխարհի այդ մասում ամերիկյան ակտիվությունն ունի թե՛ դրական նշանակություն, քանի որ անգլիացիներին ամերիկյան օգնությունը պետք է արաբական ժողովուրդների շարժման դեմ պայքարելու համար, և թե՛ բացասական, որովհետև ամերիկյան իմպերիալիզմը ընդլայնելով իր ազդեցությունը, ձգտում է դուրս մղել անգլիական մրցակցին։

Մի կողմից անգլիական կառավարող շրջանները ձգտում են ԱՄՆ-ը ներգրավել Անգլիայի աճող դժվարությունները հարթելու գործում, մյուս կողմից փորձում են խոչընդոտել ամերիկյան էքսպանսիային։

Հունվարի 7-ի Դալլեսի այն հայտարարությունը, թե Մերձավոր և Միջին Արևելքի շրջանում, «ԱՄՆ-ը գերադասում են գործել ինքնուրույն», պարզորոշ կերպով վկայում է ամերիկյան իմպերիալիստների հեռու գնացող մտադրությունների մասին։

## «ԷՅԶԵՆՀԱՈՒԵՐԻ ԴՈԿՏՐԻՆԱ»-Ն ԱԳՐԵՍԻՎ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԻՔ

Դեռ 1951 թվականին Էյզենհաուերը հայտարարել է. «Եթե խոսելու լինենք այս կամ այն տերիտորիայի բացարձակ արժեքի մասին, ապա աշխարհում չկա ստրատեգիական տեսակետից ավելի կարևոր շրջան, քան Միջին Արևելքը։ Այդ շրջանը խիստ կարևոր է այն ավանդի տեսակետից, որը նա կարող է ներդնել մեր ջանքերի մեջ ամբողջությամբ վերցրած (կարդա՝ Սովետական Միության և սոցիալիստական երկրների դեմ նոր պատերազմ վարելու գործում — Ջ. Կ.)։

Ձգտելով Սովետական Միությունը շրջապատել ռազմական ավիաբազաների օղակով՝ նոր պատերազմի ամերիկյան ստրատեգները մեծ նշանակություն են տալիս Մերձավոր և Միջին Արևելքին։ Չէ՞ որ այդ շրջանը ամենամոտն է Սովետական Միության սահմաններին։ Թյուրքիան և Իրանը անմիջապես սահմանակից են ՍՍՌՄ-ին, սովետական սահմաններից հեռու չեն Իրաքը, Պակիստանը և մերձավորարևելյան մյուս պետությունները։ Եվ դրա համար այդ երկրները առանձնահատուկ տեղ են գրավում ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ պլաններում. Նրանք ամեն կերպ ձգտում են այդ երկրներին պարտադրել ռազմական պրոտեկտորատի ռեժիմ, նրանց դարձնել ԱՄՆ-ի ագրեսիվ քաղաքականության գործիք։

Եգիպտոսում ագրեսորների պարտության հետևանքով Մերձավոր և Միջին Արևելքում տեղի է ունենում իմպերիալիստական ուժերի վերախմբավորում։ Անգլիան և Ֆրանսիան հետին պլան են մղվում։

«Էյզենհաուերի դոկտրինա»-ի ռազմական նպատակները, անկասկած, անմիջականորեն առնչվում են Բաղդադի ագրեսիվ պակտի հետ, սակայն ամերիկյան ղեկավար շրջաններն այժմյան իրադրությունը հարմար են համարում այդ խմբավորման մեջ իրենց գերիշխանությունը հաստատելու համար։

Դեռ 1956 թվականի գարնանը, երբ պարզ էր դարձել Բաղդադի պակտի քաղաքական կրախը, որը սպառնում էր ի չիք դարձնել Մերձավոր Արևելքի վրա արևմտյան ազդեցությունը, ԱՄՆ-ը Բաղդադի պակտի մշտական խորհրդի Թեհրանում կայացած սեսիայում պաշտոնապես մտավ պակտի տնտեսական

digitised by A.R.A.R.@

հանձնաժողովի, ինչպես նաև այսպես կոչված՝ «Քայքայիչ գործունեության դեմ պայքարող հանձնաժողովի» մեջ, որն ստեղծված է պակտի մասնակից ասիական երկրներում հայրենասիրական տարրերին հալածելու, ազգային շարժումը ճնշելու և ոստիկանական ռեժիմներն ամրապնդելու համար։ Իսկ այժմ էյզենհաուերի ուղերձի հրապարակումը փաստորեն հավասարազոր է Բաղդադի պակտին ԱՄՆ-ին միանալուն։ Ամերիկյան կառավարությունն արդեն պատրաստակամություն է հայտնել ակտիվորեն մասնակցել այդ պակտի ռազմական հանձնաժողովի աշխատանքին։

«էյզենհաուերի դոկտրինա»-ն կոչված է լրացնելու ռազմական ագրեսիվ բլոկների՝ ՆԱՏՕ, ՍԵԱՏՕ, Բաղդադի պակտ սիստեմը և շեշտակիորեն ընդլայնելու ԱՄՆ-ի ազդեցությունը Մերձավոր և Միջին Արևելքի շրջանում։

Ըստ նոր պլանի՝ ամերիկյան իմպերիալիստական ղեկավար շրջանները մտադիր են Արաբական Արևելքում ԱՄՆ-ի զինված ուժերի միջամտության համար հնարավորություն ստեղծել կոնֆլիկտներ սարքելով մի կողմից պրոիմպերիալիստական քաղաքականություն վարող մերձավորարևելյան պետությունների և մյուս կողմից այդ շրջանի անկախ երկրների միջև։ Այդպիսի տակտիկայի օրինակ էր Սիրիայի դեմ վերջերս իմպերիալիստների կատարած դավադրությունը, որի համար օգտագործվեցին Թյուրքիան և Իրաքը։

Պրեզիդենտ էյզենհաուերն իր ուղերձում հայտարարեց, որ ամերիկյան զորքերի ուղարկումը Մերձավոր և Միջին Արևելք կարող է կատարվել մերձավորարևելյան երկրի խնդրանքով, որին դրսից «կոմունիստական վտանգ» է սպառնում։ Թե ինչ է նշանակում դա՝ հեշտ է հասկանալ։ Չէ՞ որ աշխարհի այդ շրջանում կան այնպիսի երկրներ, որոնց կառավարությունները վարում են իրենց երկրների համար ամբողջապես վնասակար՝ բայց ԱՄՆ-ի կառավարող շրջաններին օգտավետ քաղաքականություն։

Արդեն այս տարվա հունվարի 20-ին Անկարայում կոմյունիկե հրապարակվեց Բաղդադի պակտի անդամ չորս երկրների՝ Թյուրքիայի, Իրանի, Իրաքի և Պակիստանի ներկայացուցիչների խորհրդակցության մասին, որտեղ նշված է այդ երկրների կողմից «էյզենհաուերի դոկտրինա»-ն «ամբողջապես պաշտպանելու», ինչպես նաև Բաղդադի պակտը ամրապնդելու մասին։

Ռազմական տեսակետից ԱՄՆ-ը մասնավորապես շահագրգռված են Բաղդադի Պակտի մեջ մտնող երկրների մարդկային ռեսուրսներով, քանի որ այդ երկրներում մեկ զինվորի վրա 10 անգամ պակաս միջոցներ են ծախսվում, քան ամերիկյան մեկ զինվոր պատրաստելու համար։

Ամերիկյան իմպերիալիստներն արդեն լայն պլաններ են մշակում «էյզենհաուերի դոկտրինա»-ով նախատեսված ռազմական ծրագրի կենսագործման ուղղությամբ։ Այդ են վկայում ամերիկյան ավիացիայի մինիստրի և ադմիրալ Ռեդֆորդի վերջին հայտարարությունները ամերիկյան 6-րդ նավատորմը ատոմային զենքով հագեցնելու, նոր ռազմա-ծովային ու ռազմա-օդային բազաներ կառուցելու մասին։ Նախատեսված է Կարաչիից մինչև Ստամբուլ, Բաղդադի պակտի մասնակից չորս երկրները միմյանց հետ կապող ստրատեգիական ավտոստրադա և երկաթուղի կառուցել։

Այս բոլոր փաստերը ցույց են տալիս, որ «էյզենհաուերի դոկտրինա»-ն Միջին և Մերձավոր Արևելքի երկրների դեմ ԱՄՆ-ի ռազմա-քաղաքական խոշոր դիվերսիայի ծրագիր է, այդ երկրների անվտանգության «պաշտպանության» դիմակով նրանց վրա ամերիկյան տիրապետություն հաստատելու ծրա-



գիր։ Այդ ծրագիրը պատերազմի ծրագիր է հանուն նավթի, հանուն այն բանի, որ Մերձավոր և Միջին Արևելքի երկրները վերածվեն Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների և վերջերս գաղութային ստրկությունից ազատագրված ժողովուրդների դեմ ագրեսիայի պլացդարմի։ էյզենհաուերի պլանի իրականացումը ոչ միայն կստրկացնի արաբական ժողովուրդներին, այլև նրանց երկրները կդարձնի պատերազմական կոնֆլիկտների մշտական օջախ։ էյզենհաուերը հունվարի 23-ի պրես-կոնֆերանսում պատասխանելով այն հարցին, թե դոկտրինայի իրականացման դեպքում կգործադրվի՞ արդյոք «տակտիկական» ատոմային զենք, չթաքցրեց, որ այդ շրջանում ամերիկյան քաղաքականության բնույթը անխուսափելի է դարձնում նրա գործադրումը։ Ինչպես ճիշտ կերպով նշված էր հունվարի 15-ի ՏԱՍՍ-ի հայտարարության մեջ, էյզենհաուերի ուղերձում հնչում է ոչ թե խաղաղության ձայնը, այլ պատերազմի ձայնը։ Այնուհետև հայտարարության մեջ ասված էր, որ էյզենհաուերի հռչակած դոկտրինան ոչ միայն չի նպաստում Մերձավոր և Միջին Արևելքում լարվածության թուլացմանը, այլ, «ընդհակառակը, տանում է դեպի այդ շրջանում դրության սրում, խաղաղությանն սպառնացող վտանգի ուժեղացում և իրենից ներկայացնում է ՄԱԿ-ի խաղաղասիրական սկզբունքների ոտնահարում, որոնցով ղեկավարվելով Գլխավոր Ասամբլեան դատապարտեց Եգիպտոսի դեմ կատարված ագրեսիան»։

## ԱՐԱԲՆԵՐԸ ԴԱՏԱՊԱՐՏՈՒՄ ԵՆ «ԷՅԶԵՆՀԱՈՒԵՐԻ ԴՈԿՏՐԻՆԱ»-Ն

Գաղութային և կախյալ երկրների ժողովուրդները, ինչպես նաև արդեն անկախություն նվաճած ասիական և աֆրիկյան ժողովուրդները ավելի ու ավելի են համոզվում այն բանում, որ իրենց անկախությունը և ազատությունը խեղդողի գլխավոր դերում, նրանց համար ատելի գաղութային սիստեմի գըլխավոր պաշտպանի դերում այժմ հանդես են գալիս ամերիկյան իմպերիալիստները։ Այդ ժողովուրդները հասկանում են, որ իրենց ուսերից հոլանդական, ֆրանսիական և անգլիական լուծը թոթափում են ոչ թե նրա համար, որ այն փոխարինեն ամերիկյան իմպերիալիստների տիրապետությամբ, այլ, որպեսզի ազատ լինեն, բարեկեցիկ ու խաղաղ կյանք ունենան։

Նրանք տեսնում են, որ այնպիսի ռազմական բլոկներ, ինչպես ՆԱՏՕ-ն, ՍԵԱՏՕ-ն է, Բաղդադի պակտը, կամ «էյզենհաուերի դոկտրինա»-ն, ստեղծված են որպես ժողովուրդների գաղութային ստրկացման նոր միջոցներ։ Դրանք ստեղծված են այն բանի համար, որպեսզի Ասիայի պետություններից խլեն անկախ քաղաքականություն վարելու հնարավորությունը, նրանց դարձնեն իրենց գործիքը։ Իզուր չէ, որ Արևելքի երկրների մեծ մասը մերժեց ռազմական բլոկների մեջ մտնելու մասին իմպերիալիստների առաջարկությունները։

Ասիայում աճում են հակաամերիկյան տրամադրությունները։ «Այդ տրամադրությունները,— գրել է ԱՄՆ-ի Գերագույն դատարանի անդամ Ուիլյամ Դուգլասը,— այնքան են ուժեղացել վերջին տարիներս, որ ներկայումս նրանք հեշտությամբ կարող են հասցնել իսկական խաչակրաց արշավանքի ընդդեմ Ամերիկայի...»։

Ասիայի և Աֆրիկայի երկրների հասարակայնությունը զայրույթով և արգահատանքով մերժեց գաղութարարների այն մեծամիտ «տեսությունը», թե իբր Մերձավոր և Միջին Արևելքում ստեղծվել է «վակուում», որի համաձայն

digitised by A.R.A.R.@

արաբական ամեն մի երկիր իրենից ներկայացնում է «դատարկություն», եթե նա չի կառավարվում օտարերկրյա իմպերիալիստների կողմից։

«Էյզենհաուերի դոկտրինա»-ն բացահայտեց ամերիկյան քաղաքականության իսկական բնույթը նույնիսկ այն արաբների համար, որոնք Եգիպտոսի դեմ անգլո-ֆրանս-իսրայելյան ագրեսիայի ժամանակ հակված էին կարծելու, թե ԱՄՆ-ը պաշտպան են կանգնել Եգիպտոսին։ Այժմ հատկապես ակնառու դարձավ ամերիկյան քաղաքականության նենգությունը։ Վաշինգտոնը, որը Անգլիային և Ֆրանսիային հրահրում էր հարձակվելու Եգիպտոսի վրա, այնուհետև հրաժարվեց նրանց աջակցելուց ոչ թե նպատակ ունենալով օգնել Եգիպտոսին՝ պաշտպանելու իր ազատությունը, այլ, որպեսզի Անգլիայի և Ֆրանսիայի պարտությունն օգտագործի Մերձավոր Արևելքում նրանց տիրապետությունը Միացյալ Նահանգների տիրապետությամբ փոխարինելու համար։

Եգիպտական «Աշ Շաաբ» թերթը դիմել էր իր ընթերցողներին, խնդրելով իրենց կարծիքը հայտնել «Էյզենհաուերի դոկտրինա»-ի վերաբերյալ։ Թերթը հաղորդում է, որ 20 օրում խմբագրությունը ավելի քան 60 հազար նամակ է ստացել Եգիպտոսի ազգաբնակչության տարբեր խավերի ներկայացուցիչներից, որոնք ամբողջապես դատապարտում են ամերիկյան գաղութային նոր պլանը, որպես ԱՄՆ-ի գերիշխանությունը հաստատելու մի փորձ։

«Մեր ժողովուրդը,— գրում է թերթը,— ասաց իր պարզորոշ խոսքը։ Ժողովուրդը չի ուզում ո՛չ խնամակալություն, ո՛չ էլ միջամտություն իր ներքին գործերին»։ «Մենք չենք համաձայնի Մերձավոր և Միջին Արևելքում «վակուումի» գոյության վերաբերյալ Արևմուտքի գաղափարին,—հայտարարեց Եգիպտոսի պրեզիդենտ Նասերը։ Այդ գաղափարը ենթադրում է, թե նման «վակուումը» պետք է գրավեն Արևմուտքի երկրները։ Բայց այդ «վակուումը» կգրավենք ինքներս կամ ավելի ճիշտ, մենք այն արդեն գրավել ենք»։

Մերձավոր Արևելքի երկրների հասարակայնությունը վճռական հակահարված է տալիս ամերիկյան իմպերիալիստների այն ստահոդ պնդումին, թե իրենց պլանները թելադրված են այդ շրջանը «կոմունիստական թափանցումից», Սովետական Միության՝ նրանց հորինած ագրեսիվ նկրտումներից պաշտպանելու ձգտմամբ։

«Ժողովուրդները համոզվել են,— գրում է եգիպտացի Սայիդ Ահմադը իր ««Էյզենհաուերի դոկտրինա»-ն նոր ագրեսիա» բրոշյուրում,— որ սովետական ագրեսիայի վտանգի մասին խոսակցությունները միայն վարագույր են, որի հետևում Ամերիկան ուզում է թաքցնել իր ագրեսիվ մտադրությունները և իմպերիալիստական նպատակները»։

Արաբները վճռականորեն մերժում են «Էյզենհաուերի դոկտրինա»-ն և նրան ասում են «ոչ», գրում է «Աթ-Թալիա» թերթը։

Անգլո-ամերիկյան իմպերիալիզմի բոլոր փորձերը՝ պահպանելու գաղութային խայտառակ սիստեմը՝ անպայման դատապարտված են ձախողման։ Գաղութային զավթումների ժամանակներն անցյալի գիրկն են անցել։ Ինքնուրույն զարգացման ուղու վրա կանգնած ժողովուրդները ոչ ոքի թույլ չեն տա վերածնել XIX դարի գաղութարարների կարգերն ու բարքերը։ Նրանք հաստատ կանգնած են իրենց անկախության ու ազատության պաշտպանության դիրքերում։

---

# ԿՈՆԿՐԵՏ ՂԵԿԱՎԱՐԵԼ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԻՆՔՆԱԿՐԹՈՒԹՅՈՒՆԸ

Զ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

Կոմունիստական պարտիան մեծ աշխատանք է կատարում կոմունիստների քաղաքական-գաղափարական մակարդակի բարձրացման, կադրերի տնտեսական կրթության ուժեղացման, պարտիական պրոպագանդայի նոր խնդիրների աստիճանին բարձրացնելու և այն կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ կապելու ուղղությամբ։

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններում այս ուսումնական տարում շուրջ 27 հազար կոմունիստներ 2100 քաղդպրոցներում և խմբակներում ուսումնասիրում են մարքսիզմ-լենինիզմի թեորիայի հարցերն ու պրոբլեմները։ Սակայն կոմունիստների քաղաքական ուսուցման բնագավառում իր կարևոր ու հիմնական տեղն է գրավում ինքնակրթությունը։ Քանի որ ներկայումս պարտիայի անդամների 48 տոկոսից ավելին ունեն բարձրագույն և միջնակարգ կրթություն, պարտիական կազմակերպությունները կարող են հասնել այն բանին, որ մարքսիստական-լենինյան թեորիայի ինքնուրույն ուսումնասիրումը իրապես դառնա կոմունիստների տեսական-քաղաքական մակարդակի բարձրացման հիմնական ու գլխավոր մեթոդը։

Պարտիական լուսավորության ամբողջ սիստեմում, հատկապես քաղաքական ինքնակրթության գործում, ամենից հիմնականն ու գլխավորը դարձյալ մնում է կոմունիստի ինքնուրույն աշխատանքը գրքի վրա։ Այս ուղղությամբ պարտիական կազմակերպությունները ինքնուրույն ուսումնասիրողներին պետք է անհրաժեշտ օգնություն և ղեկավարություն ցույց տան։

Քաղաքական ինքնակրթությամբ զբաղվող կադրերին օգնելու հիմնական ու կարևորագույն ձևերից մեկը ցիկլային կամ առանձին թեմաներով բարձրորակ դասախոսությունների կազմակերպումն է։ Այդ ուղղությամբ օրինակելի աշխատանք են կատարում Երևանի Ստալինյան և Կիրովյան շրջանների, Էջմիածնի, Իջևանի, Սպիտակի, Շամշադինի, Գորիսի շրջկոմները, Լենինականի և Կիրովականի քաղկոմները։ Այսպես, օրինակ, Էջմիածնի շրջանի չորս ՄՏ կայաններում ստեղծված են կոնսուլտացիոն կետեր և ուսումնական տարեսկզբից յուրաքանչյուր կայանի գոտում կազմակերպված է դասախոսությունների ցիկլ՝ մարքսիզմ-լենինիզմի թեորիայի ու պատմության, քաղաքատնտեսության, գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկայի, ՍՄԿՊ ներքին ու արտաքին քաղաքականության կարևորագույն պրոբլեմների շուրջը։ Դասախոսություններով հանդես են գալիս շրջկոմի դասախոսական խմբի, ռեսպուբլիկայի Քաղաքական ու գիտական գիտելիքների տարածման ընկերության անդամները, ինչպես նաև կոլտնտեսությունների վարչությունների նախագահ-



digitised by A.R.A.R.@

ները և կոլտնտեսային արտադրության առաջավորները։ Այդ դասախոսությունները կարդացվում են ուսուցման ծրագրին համապատասխան, կոմունիստների այս կամ այն խմբի համար, որոնք դրանց պահանջը զգում են։

Բովանդակալից և ակտուալ դասախոսությունները միշտ էլ կոմունիստներին օգնում են լավ յուրացնելու ուսումնասիրվող նյութերը։ Այսպես, օրինակ, Ներքին Խաթունարխի միջնակարգ դպրոցի պարտիական կազմակերպության 28 կոմունիստներ և անպարտիական ակտիվիստներ ուսումնասիրելու էին քաղաքատնտեսության մոնոպոլիստական կապիտալիզմի բաժինը։ Նրանց օգնելու համար շրջկոմի դասախոսական խմբի անդամ ընկ. Կ. Թադևոսյանը «Իմպերիալիզմի լենինյան թեորիան» թեմայով դասախոսություն կարդաց և պատասխանեց ունկնդիրների բազմաթիվ հարցերին։ Պարզ է, որ նման բովանդակալից դասախոսությունը ինքնուրույն ուսումնասիրողներին օգնեց ճիշտ ըմբռնելու կապիտալիզմի մոնոպոլիստական ստադիայի բնորոշ գծերն ու առանձնահատկությունները։ Բայց քիչ չեն նաև այնպիսի պարտիական կազմակերպություններ, որոնք քաղաքական ինքնակրթությամբ զբաղվողներին հետաքրքրող և հուզող հարցերի շուրջը կողմնորոշող և օգնող դասախոսություններ չեն կազմակերպում։

Քաղաքական ինքնակրթությամբ զբաղվողներին օգնելու գործում լուրջ անելիքներ ունեն կոնսուլտանտները, որոնցից շատերը բարեխղճությամբ են կատարում իրենց վրա դրված պարտականությունները։ Այսպես, Սպիտակի շրջանի Խնկոյան գյուղի պարտիական կազմակերպության կոնսուլտանտ Ար. Կիրակոսյանը իր բարեխիղճ աշխատանքով վայելում է կոմունիստների համակրանքը, նա սիստեմատիկաբար հանդիպում է ՍՄԿՊ XX համագումարի նյութերն ինքնուրույն ուսումնասիրող կոմունիստներ Ս. Մանուկյանի, Թ. Տիգրանյանի և ուրիշների հետ, հետաքրքրվում նրանց աշխատանքով, զրույցներ է անցկացնում և օգնում նրանց՝ ուսումնասիրող գլխավոր ու հանգուցային հարցերը խոր յուրացնելու գործում։

Կոնսուլտանտի հաջող գործունեությունը կախված է նրա տեսական պատրաստականությունից, գրքի վրա աշխատելու, տեսական զրույցներ անցկացնելու, ռեֆերատների քննարկումներ կազմակերպելու մեթոդիկային տիրապետելուց։ Մինչդեռ պարտիայի շրջկոմները այդ ուղղությամբ դեռևս դիֆերենցված քիչ աշխատանք են կատարում կոնսուլտանտների հետ։

Սպիտակի շրջանի Լուսաղբյուրի ՄՏ կայանի, Կոտայքի շրջանի Ջրվեժի ՄՏ կայանի, Աշտարակի շրջանի Եղվարդի, Ավանի, Օշականի միջնակարգ դպրոցների, Շահումյանի շրջանի տեղարդկոմբինատի և ուրիշ շատ պարտիական կազմակերպություններում լայն տարածում են գտել տեսական կոնֆերանսների անցկացումը, որը քաղաքական ինքնակրթությամբ զբաղվողներին օգնելու լավագույն ձևերից մեկն է։ Սովորաբար այդպիսի կոնֆերանսներ նախօրոք բազմակողմանիորեն նախապատրաստում են, ընտրում թեման, այդ թեմայի վերաբերյալ հիմնական ու լրացուցիչ գրականությունը, կազմում են թեմայի պլանը, հանգուցային հարցերը և այն բաժանում տեսական կոնֆերանսի մասնակիցներին։ Նրանք բոլորն էլ կազմում են իրենց ռեֆերատները և երբ հավաքվում են կոնֆերանսի, նրանցից մեկ-երկուսը հանդես են գալիս զեկուցումներով, իսկ մյուսները իրենց ելույթներով լրացնում են զեկուցողներին։ Ստեղծվում է թեորիական հարցերի աշխույժ և ակտիվ քննարկման



մթնոլորտ, որը մեծ չափով օգնում է տեսական կոնֆերանսի մասնակիցների քաղաքական աճին։

Այս ուսումնական տարում ռեսպուբլիկայում գործում են ՍՄԿՊ պատմության, փիլիսոփայության, մարքսիստական տնտեսագիտական ուսմունքի, ՍՍՌՄ-ի ներքին ու արտաքին քաղաքականության հարցերն ուսումնասիրող 568 թեորիական սեմինարներ, որոնցում ընդգրկված են շուրջ 12600 մարդ։ Սովորաբար այդ սեմինարների մասնակիցները տեսականորեն պատրաստված ինտելիգենցիայի ներկայացուցիչներն են, արտադրության հրամանատարներ, պարտիական ու սովետական պատասխանատու աշխատողներ։

Այս ուսումնական տարում գյուղական մի շարք շրջկոմներ (Իջևան, Սպիտակ, Սևան, Շամշադին և այլն) սկսել են պարբերաբար անցկացնել տեսական կոնֆերանսներ, որտեղ թեորիական հարցերի հետ միասին քննարկվում են նաև տնտեսական ղեկավար աշխատողների ելույթներ գյուղատնտեսական արտադրության զարգացման, իրենց աշխատանքի առաջավոր մեթոդների մասին։ Տեսական կոնֆերանսները ոչ միայն կոմունիստների տեսական մակարդակի բարձրացման միջոց են, այլև սոցիալիստական տնտեսվարության, գիտության նվաճումների, առաջավոր փորձի փոխանակման դպրոց։

Իջևանի շրջկոմին կից գործում են արդյունաբերության և գյուղատնտեսության էկոնոմիկայի հարցերն ուսումնասիրող սեմինարներ, որոնցում ընդգրկված են 190 հոգի։ Նրանց մեջ կան արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարներ, գլխավոր ինժեներներ, ցեխերի պետեր, կոլտնտեսությունների նախագահներ, մասնագետներ, բրիգադավարներ, ֆերմայի վարիչներ, հաշվապահներ և ՄՏ կայանների ղեկավար աշխատողներ։

Ինչպես արդյունաբերության, այնպես էլ գյուղատնտեսության էկոնոմիկայի տեսական կոնֆերանսների թեմատիկան ընտրել են իրենք՝ կոնֆերանսի մասնակիցները և այդ թեմաների վերաբերյալ դասախոսություններով հանդես են գալիս Երևանի բուհերի դասախոսները և գիտական աշխատողները, որոնք նախօրոք լինում են շրջանի ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, ուսումնասիրում են ընդհանուր վիճակը և ապա անցկացնում կոնֆերանսը։

Քննարկված հարցերի շուրջ միշտ ծավալվում է մտքերի աշխույժ փոխանակություն։ Կոնֆերանսի յուրաքանչյուր մասնակից աշխատում է գիտականորեն վերլուծել իրենց արտադրական ձեռնարկության, կոլտնտեսության տնտեսական գործունեությունը, հայտաբերել չօգտագործված ռեզերվները։ Տեսական հարցերի այդպիսի գործնական քննարկումները ամուր կապ են ստեղծում թեորիայի ու պրակտիկայի միջև, տնտեսական կադրերին զինում են գիտելիքներով՝ հաջողությամբ լուծելու արտադրության խնդիրները։

Քաղաքական ինքնակրթությամբ զբաղվող կոմունիստներին ցույց տրվող օգնության և նրանց աշխատանքը վերհսկելու ձևերն ու մեթոդները բազմազան են, և ամեն մի պարտիական կազմակերպություն իր պրակտիկ գործունեության մեջ պետք է հմտորեն ու ստեղծագործաբար կիրառի դրանք։ Պետք է միշտ նկատի ունենալ, որ մարդկանց հետ քաղաքական աշխատանք կատարելը, նրանց հուզող և հետաքրքրող հարցերին համոզեցուցիչ պատասխան տալը մեր առաջնակարգ պարտականություններից մեկն է։

Ներկայումս շատ պարտիական կազմակերպությունների ղեկավարներ լավ են կազմակերպում ու ղեկավարում կոմունիստների քաղաքական ուսու-

digitised by A.R.A.R.@

ցումը։ Սակայն դրանց կողքին տեղերում մենք հանդիպում ենք այնպիսի
պարտիական աշխատողների, որոնք չեն կարողանում ղեկավարել կոմու-
նիստների ինքնակրթության գործը և հաճախ այն ձախողում են կամ վերա-
դառնում պարտիայի կողմից դատապարտված վարչարարական մեթոդների։

Ինչպես հայտնի է, ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի ցուցումով քաղաքա-
կան ուսուցման բնագավառում վերացվել են վերահսկողության այնպիսի
բյուրոկրատական, դատապարտված ձևեր, ինչպիսիք էին՝ կոմունիստներից
պարտադիր կարգով անհատական պլաններ պահանջելը, գրաֆիկներ, ժամ-
կետներ սահմանելը, քննություններ անցկացնելը և այլն։ Առանց այդպիսի
վերահսկողության ձևերի էլ, երբ կոմունիստները ակտիվորեն մասնակցում
են հասարակական-քաղաքական կյանքին, երբ հանդես են գալիս որպես դա-
սախոսներ, զեկուցողներ, պրոպագանդիստներ, ագիտատորներ, կամ, ասենք
թե, ելույթ են ունենում թեորիական սեմինարներում, տեսական կոնֆերանս-
ներում, հաճախում են դասախոսությունների, այստեղից էլ կարելի է եզրա-
կացնել, թե նրանք ինչպես են աշխատում իրենց քաղաքական-գաղափարա-
կան մակարդակի բարձրացման վրա։

Ի վերջո կոմունիստների քաղաքական ուսուցման հաջողության գլխավոր
գրավականն այն է, որ պարտիական կոմիտեները իրենց ամենօրյա քաղա-
քական աշխատանքն այնպես բովանդակալից ու հետաքրքիր դարձնեն, որ
յուրաքանչյուր կոմունիստ կենսական պահանջ զգա իր քաղաքական-գաղա-
փարական մակարդակը բարձրացնելու, հետաքրքրվելու առօրյա մամուլով,
գեղարվեստական գրականությամբ, արվեստի և կուլտուրայի հարցերով։

Իհարկե, ոչ ոք չի կարող արգելել պարտիական կազմակերպության քար-
տուղարին, եթե դա անհրաժեշտություն է, իր մոտ հրավիրել կոմունիստին և
զրուցել նրա հետ, թե նա ինչպես է աշխատում իր վրա։ Այն ընկերները, որոնք
անպատասխանատվություն են ցուցաբերում իրենց քաղաքական գիտելիքների
բարձրացման գործում, նրանց հարցը պետք է պարտիական ժողովներում և
մամուլում քննարկման ու քննադատության առարկա դարձնել։

Ինքնուրույն ուսումնասիրողներին օգնելու և նրանց աշխատանքը ղեկա-
վարելու գործում մեծ անելիքներ ունեն քաղկոմ-շրջկոմների քաղլուս տները
և կաբինետները։ Դրանց մեծ մասը սիստեմատիկաբար կազմակերպում է
դասախոսություններ, անհատական ու խմբային կոնսուլտացիաներ, տեսա-
կան կոնֆերանսներ, զրույցներ, ֆոտոցուցահանդեսներ և անցկացնում է բիբ-
լիոգրաֆիական աշխատանք։ Սակայն Վեդու, Կոտայքի, Միկոյանի շրջկոմների
քաղլուսկաբինետները անբավարար են օգնում մարքսիզմ-լենինիզմի թեո-
րիան ինքնուրույն ուսումնասիրողներին։ Նրանց դասախոսությունների թեմա-
տիկայի մեծ մասը վերաբերում է ընթացիկ քաղաքականության հարցերին,
իսկ մարքսիստական-լենինյան թեորիայի ու պատմության, քաղաքատնտե-
սության, փիլիսոփայության և կոնկրետ էկոնոմիկայի հարցերի մասին ան-
նշան դասախոսություններ են կազմակերպվում։

Քաղաքական ինքնակրթության կազմակերպման ուղղությամբ ձեռք բեր-
ված փորձը, պրակտիկայում իրենց արդարացրած ձևերն ու մեթոդները պար-
տիական կազմակերպությունները պետք է վարպետորեն ընդհանրացնեն և
արդյունավետ ձևով օգտագործեն կոմունիստների ինքնուրույն քաղաքական
ուսուցումը բարելավելու համար։

---



# ԻՆՉ Է ԱՊՐԱՆՔԱՅԻՆ ՖԵՏԻՇԻԶՄԸ

*Ա. ԽՈՀՈՒՆՅԱՆ*

Եթե իրերի դրսևորման ձևն ու նրանց
էությունը անմիջականորեն համընկնեին, ապա
ամեն մի գիտություն ավելորդ կլիներ։

Կ. ՄԱՐՔՍ

Աշխատանքային արժեքի մարքսյան տեսության փիլիսոփայական խորա-
գույն ընդհանրացումը և կապիտալիստական արտադրաեղանակին հատուկ
տնտեսական կատեգորիաների իմացության ճշգրիտ մեկնակետը ապրանքա-
յին ֆետիշիզմի թեորիան է։ Լինելով Մարքսի համայնապարփակ մտքի մի
խիզախում՝ ապրանքային ֆետիշիզմի այդ կուռ տեսությունը վերջնականա-
պես ծնկի բերեց բուրժուական մտածողներին առհասարակ, իսկ տնտեսա-
գետներին առանձնապես։ Այդ տեսության շնորհիվ մարդկային մտածությանը
հասկանալի դարձան ապրանքակապիտալիստական հասարակության տնտե-
սական կյանքի (և ոչ միայն տնտեսական կյանքի) բարդ քմայքները, նրա
բոլոր մանվածապատությունները։

Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ ապրանքային ֆետիշիզմի
մարքսյան ուսմունքի շնորհիվ է, որ մեր առջև բացվեցին կապիտալիստական
լաբիրինթոսի բոլոր գաղտնարանները։

Անշուշտ, Մարքսի այդ ուսմունքը չպետք է շփոթել կրոնական ֆետի-
շիզմի հետ։ Յուր նախնական առումով փորթուգալական այդ տերմինը վերա-
բերում է մարդկային պատմության այն հեռավոր անցյալին, երբ նախամար-
դը բնության իրերին ու երևույթներին վերագրում էր գերբնական հատկու-
թյուններ և այդպիսով պաշտում իր մտահնար բազմաթիվ կուռքերը։ Կրոնա-
կան ֆետիշիզմը որպես իրականության խեղաթյուրված պատկերացում, մարդ-
կային ցեղի դարավոր և տանջալի զարգացման այն աստիճանի արգասիքն է,
երբ մարդը տակավին անզոր էր բնության խուլական ուժերի հանդեպ, երբ
նրա հասարակական կարողությունն իրոք աննշան էր։ Հանդիսանալով բնա-
կան և հասարակական ուժերի ճնշման հետևանք՝ կրոնական աշխարհայացքն
էլ իր էվոլյուցիան է ունեցել։ Սակայն տվյալ դեպքում մեր խոսքն այդ մա-
սին չէ։

Բանն այն է, որ հազարամյակներ առաջ է սկսվել այն սոցիալ-տնտեսա-
կան պրոցեսը, երբ մարդկանց մասնավոր աշխատանքների արդյունքները
ցավագին դանդաղությամբ, բայց և այնպես, սկսել են վերածվել ապրանք-
ների։ Ճիշտ է, թե՛ ստրկատիրական, և թե՛ ֆեոդալական հասարակական
ֆորմացիաներում այս ապրանքների արտադրությունը մնացել է իբրև ենթա-

digitised by A.R.A.R.@

կա կացութաձև, սակայն հենց ապրանքների արտադրության և առևտրական ու վաշխառուական կապիտալների զարգացման հիման վրա գոյացավ կապիտալիզմը։ Ապրանքն էլ Մարքսը դիտում էր որպես բուրժուական հասարակության տնտեսական բջիջը։ Վերջինիս զարգացման համընթաց փողը, կապիտալը, շահույթը, ռենտան, տոկոսը, սկսեցին իշխել մարդկանց առօրյա կենսաընթացքի վրա։ Այն մոմենտից սկսած, երբ մարդկային աշխատանքով ստեղծված տնտեսական ուժերն օտարվեցին անմիջական արտադրողներից և փոխարկվեցին նրանց ճնշող հասարակական ուժերի արտահայտության միջոցների, այդ պահից էլ զարգացավ ապրանքային աշխարհի գլխիվայր պատկերացումը։

Ինքնին հասկանալի է, որ կապիտալի կուտակման հետևանքով կործանվող մանր արտադրողների հոծ զանգվածների անել վիճակը և սակավաթիվ հարուստների ձեռքում կապիտալի կուտակումը պետք է որ, բնականաբար, հարուցեին թե՛ ծայրահեղ թշվառություն, և թե՛ մտավոր խավար։ Ապրանքա-կապիտալիստական այն հասարակությունը, որը հանճարեղ Բալզակի դիպուկ բնորոշմամբ՝ մարդկային կատակերգություն է, որտեղ ամեն ինչ դառնում է վաճառքի և շահույթի առարկա,— ծնում է փողի, կապիտալի, տոկոսի և այլ տնտեսական կատեգորիաների ֆետիշացումը։ Որքան նորանոր ու բարդ ձևեր է ընդունում կապիտալիզմի գոյությունը, այնքան խորհրդավոր ու խճճված կերպարանքով են հանդես գալիս երևույթների մակերեսին դրսևորվող տնտեսական հարաբերությունները։

Ինչպե՞ս և որտեղի՞ց է ծագում մարդկային աշխատանքի արդյունքի խորհրդավոր, առեղծվածային բնույթը։

Ապրանքային աշխարհին հատուկ ֆետիշային պատկերացումները ծնվում ու սնվում են այն հասարակական միջավայրում, ուր միլիոնավոր, միմյանցից անկախ արտադրողներ իրենց աշխատանքի պտուղները շուկա են հանում վաճառելու նկատառումով։ Վաճառքը դառնում է նպատակ, իսկ առքը՝ միջոց։ Տվյալ պարագային է, որ մարդկանց զանազան (իրենց կոնկրետ բնույթով) մասնավոր աշխատանքները փաստորեն հանդես են գալիս իրային կերպարանքով (իբրև ապրանքներ), համեմատվում են որպես միևնույն սուբստանցի խտացումներ։ Եվ «... քանի որ մարդիկ այսպես կամ այնպես աշխատում են միմյանց համար, նրանց աշխատանքը նույնպես մի հասարակական ձև է ստանում» («Կապիտալ», հատ. 1-ին, էջ 40)։

Երբ սովորական իրը մարդկային ստեղծարար աշխատանքի բովից անցնելով շուկայում արդեն հանդես է գալիս ոչ թե միայն որպես իր, այլ իբրև ապրանք, «...նա դառնում է մի զգայելի գերզգայական իր» — ասում է Մարքսը։ Սակայն այդ գերզգայականությունը կամ խորհրդավորությունը, որը վերագրվում է ապրանքին, բնավ էլ նրա օգտակարությունից չի բխում, չի պայմանավորված ապրանքի նյութական հատկությամբ։

Տնտեսագիտության մեջ Մարքսն առաջինն էր, որ իր խորաթափանց հայացքը սևեռեց ապրանքային աշխարհի ֆետիշայնության վրա և բացահայտեց նրա իսկական էությունը։ Նա էր, որ շեշտեց, թե առաջին հայացքից պարզ ու հասարակ իրը փաստորեն «... մի շատ յուրօրինակ իր է, լի բնազանցական նրբամտություններով ու աստվածաբանական մանվածաբանություններով։ Որչափով որ նա սպառարժեք է, նրա մեջ խորհրդավոր ոչինչ չկա» («Կապիտալ», հատ. 1-ին, էջ 39)։ Այսպիսով, մեզ էլ մնում է ապրանքի



խորհրդավորության միակ պատճառը որոնել նրա հասարակական բնության մեջ։

Ամեն մի ապրանք իր է, սակայն ամեն մի իր ապրանք չէ։ Ապրանքը մարդկային աշխատանքի այն արդյունքն է, որը վաճառքի համար է արտադրված, ուստի և կոչված է բավարարելու մարդու որևէ պահանջը։ Փոխանակելով որակապես տարբեր ապրանքներ՝ մարդիկ ըստ էության փոխանակում են իրենց համագոյ հասարակական աշխատանքները իբրև համահավասար արժեքներ, որոնք, հարկավ, միշտ էլ առարկայական կերպարանք ունեն։ Այս դեպքում է, որ փոխանակության ակտի մեջ «...մարդկային աշխատուժի ծախսման չափը յուր ժամանակային տևողության միջոցով ընդունում է աշխատանքի արդյունքների արժեքային մեծության ձև. վերջապես, արտադրողների հարաբերությունները, որոնց մեջ իրագործվում են նրանց աշխատանքների այդ հասարակական որոշումները, ընդունում են աշխատանքի արդյունքների մի հասարակական հարաբերության ձև» («Կապիտալ», հատ. 1-ին, էջ 40)։

Շնորհիվ այն հանգամանքի, որ տարբեր մարդկանց համասեռ աշխատանքների հասարակական բնույթը հանդես է գալիս միմիայն վաճառքի ու առքի առարկա իրերի միջոցով, ծագում է ապրանքաձևի և առհասարակ կապիտալի շարժման բոլոր փոխակերպումների բարդ խորհրդավորություն։

Մարքսը ուսուցանում է, որ արժեքն իր չէ, այլ իրի մեջ մարմնացած, աբստրակտ, հասարակականորեն անհրաժեշտ, բյուրեղացած և կամ իրայնացած աշխատանքը։ Արժեքը, լինելով ապրանք արտադրողների միջև տարբերայնորեն հաստատված հասարակական արտադրական հարաբերություն, բնավ կապ չունի տվյալ ապրանքի նյութական առանձնահատկությունների հետ։ Բայց քանի որ արժեքային հարաբերությունները չեն կարող այլ կերպ հանդես գալ, քան իրային կերպարանքով և իրայնացած զանգվածով, ապա ուրեմն ապրանքները իրենց էությամբ հասարակական որոշակի հարաբերության՝ արժեքի մարմնացումներն են միայն։ Այստեղից էլ հետևում է, որ իրականում «մարդկանց որոշ հասարակական հարաբերություն է միայն, որն այստեղ նրանց աչքում իրերի մի հարաբերության ֆանտասմագորիկ ձև է ընդունում» («Կապիտալ», հատ. 1-ին, էջ 41)։

Հարցն այս կերպ դնելով՝ Մարքսը մի զուգահեռ է անցկացնում կրոնական աշխարհի և ապրանքային ֆետիշիզմների միջև, ասելով, որ կրոնական աշխարհում մարդկանց գլխի հնարած ուժերն ու երևույթները հանդես են գալիս իբրև միանգամայն ինքնուրույն, մարդկանցից անկախ և անգամ մարդկանց վրա իշխող «ինքնագոյակներ»։ Ճիշտ «նույնն է լինում ապրանքային աշխարհում մարդկային ձեռքի արդյունքների նկատմամբ»։ Հենց որ մարդիկ իրենց աշխատանքով արտադրած արդյունքներին ապրանքի ձև են տալիս, այդ ֆետիշային բնույթն էլ կպչում է դրանց, «հետևաբար և անբաժանելի է ապրանքային արտադրությունից»։

Տալով ապրանքային ֆետիշիզմի իր խոր վերլուծությունը՝ Մարքսը թափանցում է այդ երևույթի բուն հետնախորքերը, հավաստելով, որ «ապրանքային աշխարհի այս ֆետիշային բնույթը... առաջ է գալիս ապրանքներ արտադրող աշխատանքի յուրահատուկ հասարակական բնույթից»։ Ո՞րն է այդ յուրահատուկ բնույթը։ Այն, որ ապրանք արտադրողի աշխատանքը, որչափով որ սպառարժեքներ է արտադրում, այստեղ դրսևորվում է նրա գործունեու-

թյան մի կողմը միայն, այն, որ դա «մարդկային աշխատուժի ծախսումն է առանձնահատուկ նպատակապես որոշված ձևով»: Բայց, որչափով որ ապրանքը գերազանցապես «միանման մարդկային կամ վերացական մարդկային աշխատանքի» հետևանք է, այն արժեքի խտացումն է միայն: Բանն այն է, որ արժեքի արտադրության ընթացքում ինքը աշխատանքը երկակի բնույթ ունի, որի հետևանքով էլ ապրանքը մնում է իբրև հակասությունների միասնություն՝ սպառարժեք և արժեք:

Մարքսի մեծագույն հայտնագործումների թվին է պատկանում և այն, որ նա առաջինն էր, որ քննադատորեն մատնանշեց ապրանքի մեջ մարմնացած աշխատանքի երկակի բնույթը: Այս հարցն այն հանգուցակետն էր, որի շուրջը ապարդյուն պտտվում էր մինչմարքսյան քաղաքատնտեսությունը:

Հայտնի է, որ կլասիկ քաղաքատնտեսությունը այնպես էլ չկարողացավ ըմբռնել, որ տարբեր ապրանքների փոխանակության միջոցին դրսևորվող «աշխատանքների սոսկ քանակական տարբերությունը ենթադրում է նրանց որակական միասնությունը կամ հավասարությունը և, հետևաբար, նրանց վերածումը մարդկային վերացական աշխատանքի» («Կապիտալ», հատ. 1-ին, էջ 49):

Ելնելով արտադրության ամենավճռական գործոնի՝ աշխատանքի այդ երկակի բնույթյունից՝ Մարքսը անօրինակ պարզությամբ ցրեց ֆետիշիզմի մտավոր մշուշը, շեշտելով, որ հենց մարդկային աշխատանքը երկճեղքվում է, «այս վայրկյանից սկսած արտադրողների մասնավոր աշխատանքները փաստորեն ընդունում են երկակի հասարակական մի բնույթ»: Նրանք մի կողմից հանդիսանում են որոշակի, օգտակար, մասնավոր աշխատանքներ և դրսևորվում են իբրև «միագումար աշխատանքի անդամներ», իսկ մյուս կողմից՝ նրանք հանդես են գալիս փոխանակության միջոցին «իբրև մարդկային աշխատուժի ծախսում, իբրև վերացական մարդկային աշխատանք»: Փոխանակության պրոցեսում հավասարեցնելով իրենց արտադրած արժեքները, մարդիկ ըստ էության հավասարեցնում են իրենց տարբեր աշխատանքները, որպես մարդկային աշխատանք առհասարակ: «Նրանք այս չեն գիտակցում, բայց անում են այս բանը»:

Որովհետև ապրանքակապիտալիստական արտադրության մեջ մարդկանց «մասնավոր աշխատանքները փաստորեն կենսագործվում են իբրև հասարակական միագումար աշխատանքի լոկ անդամներ», այս պատճառով էլ մարդկանց հասարակական հարաբերությունները «երևում են այնպես, ինչպես որ են, իրոք, այսինքն ոչ թե իբրև անհատների անմիջաբար հասարակական հարաբերություններ հենց իրենց աշխատանքների ժամանակ, այլ ավելի շուտ՝ իբրև անհատների իրային հարաբերություններ ու իրերի հասարակական հարաբերություններ» («Կապիտալ» հատ. 1-ին, էջ 42):

Այնտեղ, ուր գնվում և վաճառվում են ապրանքներ, ուր իշխում են դրամական, արդյունաբերական և առևտրական կապիտալները, մարդիկ միմյանց հետ կապված են իրերի հարաբերությամբ: Ուրեմն, նրանց հասարակական հարաբերություններն անմիջական չեն, այլ իրային կեղև ունեն: Իսկ հենց որ իրերն են դառնում մարդկանց հարաբերության միակ օղակներ, մարդկանց հասարակական հարաբերություններն էլ կարող են դրսևորվել միայն իրային կերպարանքով:

Մարդկային հասարակական հարաբերությունների այս համատարած



իրայնությունը և ապա ուրեմն՝ իրերի փոխանակման շեշտված հասարակայնությունը խոսում են այն մասին, որ ապրանքային ֆետիշիզմի պատկերացումները խորը և բացառապես հասարակական արմատներ ունեն:

Ապրանքային ֆետիշիզմի էությունը հասկանալու տեսակետից կարևոր է հիշատակել, որ իրավականորեն անկախ ապրանք արտադրողները բառիս բուն իմաստով ենթակա են շուկայական հեղհեղուկ կոնյուկտուրային: Այս նկատի առնելով է, որ Մարքսը բազմիցս նշել է, որ տվյալ դեպքում ոչ թե մարդիկ են իշխում իրերի վրա, այլ իրերը (ապրանքի, փողի, կապիտալի կերպարանքով) իշխում են իրենց ստեղծողների վրա, թելադրում են նրանց տարերային օրենքների ուժով: Արժեքի օրենքը երկաթյա անհրաժեշտությամբ գների տատանման քաոսի միջով կարգավորում է անարխիկ ապրանքակապիտալիստական տնտեսությունը: Սակայն յուրաքանչյուր կարգավորում առաջ է բերում տնտեսական կյանքի նորանոր խափանումներ և պարբերական ճգնաժամեր, որոնք գնալով՝ մեծ ծավալ ու թափ են ստանում, և որոնց վախճանը հասարակական մեծագույն բախումներն են ու միլիոնավոր արտադրողների աճող թշվառությունը:

Փոխանակությունը լինելով միակ իրական կապը ապրանքակապիտալիստական տնտեսության օրոք, արժեքի օրենքի, արտադրագնի, առավելագույն շահույթ կորզելու օրենքի միջոցով ամենուրեք ներգործում է արտադրության ծավալի, զարգացման տեմպերի և անգամ արտադրանքների որակի վրա, աշխատանքի արտադրողականության, և արտադրության նորագույն միջոցների կիրառման ընթացքի վրա:

Այսպիսով, մարդկանց շուկայական կախման էությունը նրանց՝ միմյանցից ունեցած արտադրական գործունեության փոխադարձ կախումն է: Ուստի Մարքսը խորապես իրավացի է, երբ նշում է, որ ապրանքային տնտեսության օրոք մարդկանց անկախությունը լրացվում է նրանց իրային բազմակողմանի կախվածությամբ:

Լինելով մարդկային վերացական, հասարակականորեն անհրաժեշտ, նպատակահարմար աշխատանքի «հանգած բյուրեղներ», ապրանքները, փողը, կապիտալը, ռենտան, տոկոսաբեր կապիտալը և այլն, սքողում են մարդկանց արտադրական բուն հարաբերությունները, որոնք միշտ երևան են գալիս իրային-ապրանքային թաղանթով: Այն փաստը, որ ապրանքային կապիտալիստական տնտեսության մեջ մարդկանց աշխատանքի սովորական արդյունքներն ունեն երկակի կեցություն (նյութական և հասարակական), չափազանց խճճում է տնտեսական երևույթների էությունը, սնուցում է ֆետիշային պատկերացումներ: Հասարակականի և իրայինի հենց այս փոխադարձ խաչաձևումն է, որ ապրանքա-կապիտալիստական սիստեմի օրոք ստեղծում է միանգամայն խեղաթյուրված պատկերացումներ տնտեսական կատեգորիաների նկատմամբ:

Իրերի հարաբերությունները սովերարկում են մարդկային աշխատանքային հարաբերությունները ապրանքակապիտալիստական տնտեսության մեջ: Օրինակ՝ կապիտալիստն իր գործարանը շահագործելու համար 500 հազար դոլար կապիտալ է ներդնում և դիցուք թե տարեկան ստանում է 10 տոկոսի միջին շահույթ, որը տվյալ դեպքում հավասար է 50 հազար դոլարի: Կապիտալիստին թվում է, որ այդ եկամուտը նրան բերում է իր կապիտալը (որպես իր, որպես գույք, արտադրամիջոցներ), բայց ո՛չ բնավ հավելյալ արժեք,

digitised by A.R.A.R.@

*որը ստեղծված է նրա բանվորների ձեռքով։ Բանկի ավանդատուին թվում է, որ նրան տոկոս է բերում իր դրամական ավանդը և ոչ թե հասարակական հարստություն ստեղծող բանվորներին չվճարված աշխատաժամանակը։ Հողի պտղաբերության օրենքն խսպառ թաքցնում է ռենտայի հասարակական աղբյուրը և մարդկանց թվում է, թե այն աճում է հողից։*

*Քննախույզ իր մտքի լույսով ցրելով ֆետիշիզմի դարավոր մառախուղը՝ Մարքսը սահմանեց այն ակներև ճշմարտությունը, որ բուրժուական հասարակության տնտեսական կատեգորիաները ոչ այլ ինչ են, եթե ոչ՝ «մտածության հասարակական նշանակություն ունեցող, ուրեմն և օբյեկտիվ ձևեր»։ Ահա թե ինչու ֆետիշիզմի հարցին նա մոտեցավ պատմական առումով։*

*Քանի դեռ չէր գոյացել ապրանքային տնտեսությունը, մարդկանց վերաբերմունքն իրենց արտադրական-աշխատանքային հարաբերություններին «հստակորեն պարզ է մնում ինչպես արտադրության մեջ, այնպես էլ բաշխման մեջ»։ Հայտնի է, որ ավատական հասարակության օրոք մարդկանց «աշխատանքներն ու արդյունքները* կարիք չունեն *իրենց իրական կեցությունից տարբեր երևակայական կերպարանք ստանալու»։ Կոռն ու բեգարը որպես կախման հարաբերություններ հանդիսանում են տվյալ հասարակության հիմնական հարաբերությունները։*

*Ֆեոդալիզմին հատուկ հասարակական աշխատաձևը կոռն է։ Այնտեղ, որտեղ չկան ապրանքների հարաբերություններ, տակավին մարդկանց հարաբերությունները «պարուրված չեն իրերի—աշխատանքի արդյունքների—հասարակական հարաբերությունների մեջ»։ Ճիշտ այդպես էլ, զարգացած ապրանքային տնտեսության համար «կրոնական ամենահամապատասխան ձևը քրիստոնեությունն է՝ վերացական մարդու յուր պաշտամունքով, հատկապես նրա բուրժուական զարգացումը ներկայացնող փոփոխակները՝ բողոքականությունը, դեիզմը և այլն» («Կապիտալ», հատ. 1-ին, էջ 48)։*

*Արժեքը համարելով իրերի հատկություն և սպառարժեքը որպես միայն նյութական երևույթ, բուրժուական տնտեսագետները միշտ էլ հանգել են այն սխալ հետևության, թե ապրանքը, փողը, կապիտալը լոկ նյութական հարստության ձևեր են, ապա ուրեմն՝ հավիտենական։ Մինչդեռ Մարքսը հիմնովին ջախջախեց բուրժուական հասկացությունների սնամեջ հակապատմականությունը, ապացուցելով, որ փողն ու կապիտալը, հավելյալ արժեքն ու աշխատավարձը, տոկոսն ու ռենտան անցողիկ պատմական իրողություններ են։*

*Որ բուրժուական շատ մտածողներ սովոր են իրենց մտավոր պատկերացումները և հասկացությունները համարել հավիտենական, այս խաբուսիկ պատրանքի արմատները նույնպես պետք է փնտրել ապրանքային ֆետիշիզմի ոլորտում։ Ֆետիշիզմի մարքսյան դարակազմիկ հայտնագործումը խարխլված է այն գիտական պատվանդանին, որ «աշխատարդյունքի արժեձևը արտադրության բուրժուական եղանակի ամենավերացական, բայց և ամենից ընդհանրական ձևն է, եղանակ, որը հիշյալ ձևի շնորհիվ է ներկայանում, իբրև հանրային արտադրության մի առանձնահատուկ տեսակ, և սրանով էլ միաժամանակորեն բնորոշվում։ Ուստի եթե սխալմամբ ապրանքը նկատի է առնվում իբրև հանրային արտադրության հավիտենական գոյաձև, ապա անհրաժեշտորեն անտեսվում է արժեձևի, ուրեմն և ապրանքաձևի, հետագայում էլ՝ դրամաձևի, կապիտալի ձևի և այլ ձևերի գլխավոր առանձնահատկություններն էլ» («Կապիտալ», հատ. 1-ին, էջ 50)։*



*Գտնվելով ապրանքակապիտալիստական անարխիկ տնտեսության կույր
օրենքների ճնշման ներքո, տոգորված լինելով ֆետիշային հասկացություննե-
րով՝ բուրժուական հասարակության ջատագովները, որոնց աչքին ոսկին ու
արծաթը թվում են որպես «տարօրինակ հատկություն ունեցող բնական իրեր»,
միշտ էլ ձգնում են իրենց հասարակակարգը դիտել իբրև հավիտենական։ Այս
խսկ երևույթը մի ավելորդ անգամ ընդգծում է, թե որքան խոշոր նշանակու-
թյուն ունեցավ ապրանքային ֆետիշիզմի մարքսյան թեորիան բուրժուական
ողջ աշխարհի հավիտենականության առասպելների սոցիալ-տնտեսական ատ-
տառը հասկանալու տեսակետից։*

*Միայն նա կարող էր հասկանալ ու բացատրել կապիտալիստական աշ-
խարհի բարդ և հակաբանական հարաբերությունները, ով իրեն մտածողու-
թյան մեթոդ էր ընտրել մատերիալիստական դիալեկտիկան, ով հասարակա-
կան երևույթների զարգացման հիմքերում այդ դիալեկտիկայի օրենքներն էր
բացահայտում։ Հենց այդ մեթոդի կիրառման հետևանքով էր, որ Մարքսը
հանգավ այն համոզման, թե ապրանքակապիտալիստական հասարակության
օրոք, «անհատների տնտեսական բնորոշ դիմակները տնտեսական հարաբե-
րությունների անձնավորումն են լոկ» և մարդիկ իբրև այս հարաբերություն-
ների կրողներն են հանդիպադրվում իրար» («Կապիտալ», հատ. 1-ին, էջ 53)։*

*Ապրանքը վերլուծելով իբրև մասնավոր և հասարակական, կոնկրետ և
վերացական աշխատանքների հակասալի միասնություն, որը իրականանում է
սպառարժեքի և արժեքի հակասության մեջ, Մարքսը ողջ փոխանակության
դարավոր զարգացումը դիտեց հենց այն տեսակետից, որ նրա հիմքում դըր-
ված է աշխատանքի երկճեղքվածության հակասությունը, «որը ննջած էր մնում
ապրանքային բնության մեջ», քանի դեռ չէր ծագել արժեքի դրամաձևը։ Ահա
թե ինչու նա հաստատեց, որ ապրանքների, որպես սպառարժեքների, իրաց-
ման նախորդում է դրանց, իբրև արժեքների, իրացումը։*

*Փողային ֆետիշիզմը Մարքսի հայեցակետով, ապրանքային ֆետիշիզմի
առեղծվածն է, «որ տեսանելի և աչք շլացնող է դարձել միայն»։ Երբ իրը
մարդկային վերացական աշխատանքի ծախսման հետևանքով արժեքի կրող է
դառնում, այս նոր հասարակական ձևի մեջ ջնջվում է նրա սպառարժեքի
ամեն մի հետք և «պարուրվում է տարբերությունից զուրկ մարդկային աշ-
խատանքի միատեսակ հասարակական նյութացման մեջ» — գրում է Մարքսը։
Այստեղ է ասված, որ կապիտալիզմին հատուկ տնտեսական կատեգորիա-
ներն այն ծուռ հայելին են, որոնց մեջ երևան են գալիս մարդկանց արտա-
դրական հարաբերությունները, որոնք, սակայն, թվում են իբրև իրերի բնա-
տուր հատկություններ։*

*Իրականում, իբրև արժեքներ, ապրանքները միայն հասարակական մե-
ծություններ են և «բացարձակապես տարբեր են նրանց, իբրև «իրերի» հատ-
կություններից»։ Այդ տարբերությունը ոչ թե իրերի օգտակարության մեջ է,
այլ որ դրանք պատմական որոշ արտադրաեղանակին հատուկ հասարակա-
կան հարաբերությունների մարմնացումներն են միայն։ Մարքսն անդադրում
կրկնել է, որ միայն մասնավոր սեփականության վրա հիմնված ապրանքա-
փոխանակության դեպքում է, որ աշխատանքի հասարակական բնույթը
«պատկերանում է», փոխարկվում է իրերի «հատկության»։ Այստեղից էլ ծա-
գում են այն ֆետիշային պատկերացումները, թե ապրանքը, փողը, կապի-
տալը և այլն հավիտենական են։*

digitised by A.R.A.R.@

Այն փաստը, որ արժեքի, կապիտալի, փողի, ռենտայի և այլ կապիտալիստական կատեգորիաների նյութական թաղանթի տակ Մարքսը բացահայտեց մարդկանց պատմական, անցողիկ հասարակական հարաբերությունները, մարդկային առաջավոր մտքի վիթխարի նվաճումներից մեկն է։

Չէ՞ որ Ռիկարդոն մինչև իր կյանքի վերջն էլ չկարողացավ զանազանել երկու խիստ տարբեր բաներ. «ապրանքի փոխանակային արժեքը, ինչպես որ այն դրսևորվում է ապրանքների փոխանակության ընթացքում, և ապրանքի՝ իբրև արժեքի կեցությունը նրա, որպես իրի, ապրանքի, սպառարժեքի կեցությունից» («Теории прибавочной стоимости», том III, стр. 96).

Ոչ միայն անմիջական տնտեսական, այլև հասարակական և իդեոլոգիական բնագավառի երևույթների ճիշտ մեկնաբանման համար խոշոր նշանակություն ունեցավ մարքսյան այն ըմբռնումը, որ մասնավոր փոխանակության վրա հիմնված հասարակության մեջ մարդկանց աշխատանքի հասարակական բնույթը փոխարկվում է իրերի հատկության և հանդես գալիս միայն իրային դիմակով։ Եվ սրա հիմնական պատճառն այն է, որ այդ հասարակության մեջ աշխատանքը երկճեղքված է միանգամայն հակասական բևեռների, ուր արտադրվում է ամեն ինչ վաճառքի նպատակով։ Ահա, այս պարագային է, որ «մեր ֆետիշիստը այդ երևութականությունը համարում է մի ինչ որ իրական բան, իրոք հավատում է, որ իրոք իրերի փոխանակային արժեքը որոշվում է նրանց, իբրև իրերի, հատկություններով»։

Այսպիսով, բուրժուական տնտեսագետները չեն հասկանում այն սպեցիֆիկ բնույթը, որով օժտված է աշխատանքը փոխանակային կապիտալիստական հասարակության օրոք։ Մանավանդ որ իրերը, որպես արտադրության միջոցներ և առարկաներ, եղել են հասարակական բոլոր ֆորմացիաներում, ապա այստեղից նրանք եզրակացնում են, որ ապրանքը, փողը, կապիտալը նմանապես հավերժական տնտեսական երևույթներ են՝ իբրև իրային կուտակումներ։

Բուրժուական մտածողների ամբողջ բանակին ընդդեմ՝ միայն Մարքսն էր, որ գիտական ճշմարտությամբ, իրային թաղանթի ներքո բացահայտեց մարդկանց տարբեր ձևերի արտադրական հարաբերությունները, որոնք գերազանցապես հասարակական բնույթ ունեն։ Պատռելով այդ արտադրական հարաբերությունների նյութաձև քողը՝ նա ապացուցեց, որ «կապիտալիստն իբրև կապիտալիստ սոսկ կապիտալի անձնավորումն է, այսինքն աշխատանքի ստեղծածը, որն օժտված լինելով սեփական կամքով և որպես անձնավորված էակ հակադրվում է աշխատանքին» («Теории прибавочной стоимости», том III, стр. 228):

Շնորհիվ այն իրողության, որ բուն կապիտալիզմի բնությունից է բխում նրա հասարակական հարաբերությունների հակաբանական դրսևորումը, գնալով ավելի են խտանում նրա երևույթների ֆետիշային պատկերացումները մարդկանց մոտ։ Վերջապես բանը հասնում է նրան, որ կապիտալի օրոք եղած եկամտի ձևերն ու աղբյուրները լիովին թաղվում են ֆետիշային պատկերացումների խավարում։ Այլ կերպ չէր էլ կարող լինել, երբ կապիտալի, աշխատավարձի և ռենտայի բուն կեցությունը չի դրսևորվում անմիջականորեն, երբ հանդես չեն գալիս դրանց ստեղծող ներթաքույն պատճառները և միջնորդավորող օղակները, որոնց հարազատ ծնունդն են իրենք, հարկավ։

Եվ, պատահական չէ, որ հասարակական առօրյա կյանքում, մարդկանց



մոտ անվերջ երևան է գալիս այն ախտածին գաղափարը, ըստ որի հողային ռենտայի աղբյուրը արգասաբեր հողն է, որ կապիտալիստների ահռելի շահույթների աղբյուրը զուտ դրամական կապիտալն է, որ աշխատավարձը բուն աշխատանքի արժեքն է։ Սա էլ հենց այն հասարակական ֆիկցիան է, որը Մարքսի խորահայաց բնորոշմամբ՝ գռեհիկ մարդու կրոնն է։

Այն հասարակության մեջ, ուր մարդկանց տարբեր սպառարժեք ունեցող և միևնույն արժեքի սուբստանց պարունակող ապրանքներն են հար ու անվերջ հանդիպադրվում, այդտեղ է, որ մարդկանց հասարակական հարաբերությունները թվում են իբրև իրերի հարաբերություններ։ Այս երևութականությունն ավելի ցայտուն է, երբ «ինքը արտադրական հարաբերությունը փոխարկվում է իրի, փողի»։ Ահա, այս հասարակության մեջ, ուր մարդկանց տնտեսական բոլոր գործողությունների իմաստը շահարկումն է, ուր շահագործողների բաղձալի նշանախեցը գերշահույթն է՝ այստեղ է, որ «այդ կախարդական և այլանդակ աշխարհը անհամեմատ ավելի մեծ զարգացում է ստանում»։

Կապիտալիստական աշխարհի վերնաշենքի հակաբանական բոլոր պատկերացումների հիմնաղբյուրը տնտեսական կյանքի ֆետիշային խեղաթյուրված ցոլացումներն են։

Այսպես, ուրեմն, ֆետիշիզմը հատուկ է բացառապես ապրանքակապիտալիստական հասարակության, այն սնվում է նրա տնտեսական օրենքների տարերային ներգործության ոլորտից։ Շարունակելով ապրանքային ֆետիշիզմի իր հոյակառույց տեսության շարադրանքը, Մարքսը գրում է. «Բուն սպեցիֆիկ կապիտալիստական արտադրության եղանակի պայմաններում, հարաբերական հավելյալ արժեքի զարգացման հետ միասին, զարգանում են աշխատանքի հասարակական արտադրողական ուժերը, ընդ որում այդ արտադրողական ուժերը և աշխատանքի հասարակական կապերը թվում են փոխադրված աշխատանքից կապիտալին։ Սրա շնորհիվ կապիտալն արդեն դառնում է չափազանց խորհրդավոր մի էություն, որովհետև աշխատանքի բոլոր հասարակական արտադրողական ուժերը թվում է թե նրան են պատկանում և ոչ թե աշխատանքին իբրև այդպիսուն, և որ այդ ուժերը կապիտալի սեփական ընդերքից են ծագում» («Կապիտալ», հ. 3-րդ, մաս 2-րդ, էջ 368)։

Հիշենք, որ Մարքսի մոտ կապիտալիստական հասարակության ամբողջ էությունը բնորոշող հարաբերությունը աշխատանքի հանդեպ ունեցած կապիտալի հարաբերությունն է։ Քանի որ այդ հասարակության օրոք հասարակական արտադրողական ուժերը և մարդկանց հասարակական աշխատանքի կապերը թվում են իբրև կապիտալին հատուկ մի բան, այստեղից էլ ավելի են այլանդակվում մնացած թյուր ըմբռնումները։ Եթե կապիտալը, որը չվճարված աշխատանքի հյութով սնված վամպիրն է, բայց թվում է որպես աշխատանքից անջատ մի բան և բռնանում է աշխատանքի վրա, ապա հասկանալի է, որ եկամտի մյուս ձևերն էլ այդ նույն օրենքով պետք է փոխակերպվեն իրային կերպարանքի։ Երբ շահագործվող աշխատանքից սերված կապիտալի ակումը սքողվում է բուն կապիտալի կատեգորիաներով, ապա մարդկանց թվում է, որ հասարակական արտադրողական ուժերը կապիտալի ընդերքից են ծագում։

Աշխատավարձը, որը կապիտալի իշխանության ներքո հանդես է գալիս որպես բանվորի եկամուտ՝ իր էությամբ նույնպես հակաբանական է։ Չէ՞ որ

digitised by A.R.A.R.@

ըստ մարքսյան քաղաքատնտեսության աշխատանքը թեև արժեք է ստեղծում, սակայն ինքն արժեք չունի և վարձ էլ չունի։ Աշխատանքն ստեղծում է արժեք լոկ այն դեպքում, երբ նա հանդես է գալիս որպես հասարակականորեն անհրաժեշտ վերացական աշխատանքի մի մասը, իբրև ապրանքներ արտադրող։ Երբ «աշխատանքը» վարձվում է կապիտալիստի կողմից, ապա ըստ էության բանվորը վաճառում է նրան ոչ թե իր աշխատանքը, այլ իր աշխատուժը, որի կապիտալիստական եղանակով գործադրելը հավելյալ արժեք է ծնում։ Հետևաբար, Մարքսը ելնում է ֆետիշիզմի յուր ըմբռնումից, երբ շեշտում է, որ «աշխատանքի գինը» նույնքան հակաբանական է (իռացիոնալ), որքան դեղին լոգարիթմը։

Բուրժուական տնտեսագետները տառապելով ապրանքային ֆետիշիզմի կուրացնող ախտով, չկարողացան բնավ հասկանալ, որ աշխատուժը աշխատանքի կապիտալիստական հասարակական յուրահատուկ ձևն է, ու որպես այդպիսին, այն պատմահասարակական, այլ ոչ ֆիզիոլոգիական կատեգորիա է։ Շնորհիվ իրենց դասակարգային շահերի ու սահմանափակ մտածողության, նրանք մինչև օրս էլ չեն ըմբռնում, որ «աշխատանքն իրայնանում է ապրանքի արժեքի և այն բաղկացուցիչ մասում, որը իբրև աշխատավարձ գոյացնում է բանվորական ուժի գինը»։ Իհարկե, նրանց ամենևին ձեռնտու էլ չէ ընդունել այն բացարձակ ճշմարտությունը, որ կապիտալ վամպիրի սնուցման միակ աղբյուրը հավելյալ աշխատաժամանակն է։

Կապիտալն ուսումնասիրելով իր պատմական և կոնկրետ ձևերի հակասալի էվոլյուցիայի մեջ, Մարքսը տնտեսագիտական իր ուսմունքով խորտակեց աշխատանքի և կապիտալի ներդաշնակության բուրժուական քաղաքատնտեսությունը և անհամար փաստերով ապացուցեց դրանց անկամրջելիությունը։ Նա էր, որ հաստատեց, թե «կապիտալը կապիտալիստի համար մի բազմամյա պոմպ է հավելյալ աշխատանք դուրս քաշելու համար, հողը հողային սեփականատիրոջ համար՝ բազմամյա մագնիս այն հավելյալ արժեքի մի մասը առձգելու համար, որ կորզել է կապիտալը» («Կապիտալ», հատ. 3-րդ, մաս 2-րդ էջ 362)։

Այս կուռ և ճշմարտացի եզրակացությունը Մարքսի մոտ բխում է այն ըմբռնումից, որ կապիտալի թագավորության օրոք, նրա իսկ արտադրության հասարակական կառուցվածքից բխող վարձու աշխատանքի հարաբերությունը մնում է իբրև կապիտալի գոյության միակ և գլխավոր նախապայմանը։ Ուստի և շարունակում են մնալ աշխատավարձի բուրժուական գլխիվայր դրած հասկացությունները։ Քանի դեռ մնում է կապիտալիստական արտադրաեղանակը, իրականում «կապիտալ-տոկոս (շահույթ), հող-ռենտա, աշխատանք-աշխատավարձ ֆորմուլան ներկայացնում է բոլոր մասերում միատեսակ և սիմետրիկ անհարիրություն» («Կապիտալ», հատ. 3-րդ, մաս 2-րդ, էջ 364)։

Մարքսը հիմնովին քննադատելով բուրժուական գռեհիկ տնտեսագետներին, առանձնապես նշեց, որ նրանք կատարում են երկու կարգի սխալ (այստեղ արծարծվող հարցի առնչությամբ). Նախ՝ նրանք հասարակական երեվույթները անմիջաբար բխեցնում են տեխնիկական-նյութական պատճառներից և ապա՝ տեխնիկական երևույթները բխեցնում են հասարակականից։ Այդպիսով նրանք նույնացնում են արտադրության նյութական պրոցեսը և նրա բուն հասարակական ձևը, անտեսելով կապիտալիստական հարաբերությունների անցողիկ, պատմական բնույթը։ Նա բազմիցս անգամ կրկնում է, որ



բուրժուական տնտեսագետները գտնվելով ֆետիշիզմի ոստայնում, չեն կարողանում նկատել կապիտալի սպեցիֆիկ բնույթը, այն հանգեցնելով հարըստության զուտ նյութական պայմանների, կամ նյութական արտադրամիջոցների։ «Այն միստիֆիկացիան, որը պարունակում է կապիտալի մեջ իբրև աշխատանքի սպառողի, նրանք չեն բացատրում, բայց նրանք միայն մշտապես անգիտակցաբար խոսում են նրա մասին, որպես իրային իր բնույթից ոչ անջատ ինչ որ մի բանի» («Теории прибавоч. стоимости», հ. III, էջ 205)։

Կապիտալիզմի օրոք մարդկանց մտածողության վրա իշխող դրամակապիտալի ֆետիշիզմը իր գագաթնակետին է հասնում տոկոսաբեր կապիտալում։ Տոկոսաբեր կապիտալի ձևը Մարքսը համարում է բուն ֆետիշային ձև, որի ժամանակ կապիտալի ուռճացման բոլոր կենդանի հյութերը վերջնականապես սավերարկվում են իրային թաղանթով։

«Կապիտալ»-ի III հատորի վերջին բաժնում, ուր Մարքսը հանգամանորեն վերծանում է կապիտալիստական հասարակության տարբեր եկամտաձևերը և նրանց հասարակական ակունքները, վճռողական գաղափարամարտի է բռնվում բուրժուական աշխարհի երդվյալ ջատագովների հետ։ Եվ այդ գաղափարամարտում նա մեկընդմիշտ ջախջախեց իր հակառակորդներին հենց ֆետիշիզմի յուր անհաղթ տեսությամբ։ Կապիտալը, ռենտան, աշխատավարձը համարելով իբրև մարդկանց արտադրական հարաբերությունների լոկ կապիտալիստական գոյաձևեր, նա լուսաբանեց և այդ հարաբերությունների դասակարգային բովանդակությունը պրոլետարիատի շահերի պաշտպանության դիրքերից ելնելով։

«Կապիտալ-տոկոս, հող-հողային ռենտա, աշխատանք-աշխատավարձ, տնտեսական այս եռմիասնության մեջ... ավարտված է հանդիսանում արտադրության կապիտալիստական եղանակի միստիֆիկացիան, հասարակական հարաբերությունների իրայնացումը, արտադրության իրային հարաբերությունների և նրանց պատմական-սոցիալական որոշակիության անմիջական սերտաճումը, կախարդված, աղավաղված և գլխիվայր դրված աշխարհը, որի մեջ monsieur-ը (պարոն կապիտալը) և madame la Terre (տիկին հողը) իբրև սոցիալական խարակտերներ ու միևնույն ժամանակ անմիջականորեն իբրև պարզապես իրեր, տանում են իրենց գիվատոնը» («Կապիտալ», հատ. 3-րդ, մաս 2-րդ, էջ 371)։

Որքա՜ն խոր, որքա՜ն ճշմարիտ ու պատկերավոր է տրված իր դիվային խրախճանքի պահին հրճվող կապիտալի բռնացող, դեսպոտիկ բնույթը։ Պատմատնտեսագիտական փաստերի մարքսյան լեռների դեմ ի՞նչ կարող էին անել բուրժուական տնտեսագետների ու պնակալեզների վայրախոսությունները։ Նրանցից ոմանք ստիպված ընդունեցին, որ ֆետիշիզմի մարքսյան թեորիան լուրջ փիլիսոփայական մի ուսմունք է։

Դժվար չէ կռահել, որ արդի կապիտալիստական երկրներում ծայր առած բազմաթիվ մտավոր հոսանքների գաղափարական սնուցման հարուստ շտեմարանն է մնում կապիտալի ֆետիշային խարակտերը։ Միաժամանակ այդ ֆետիշայնությունը ամրակայվում է և այն բանի հետևանքով, որ կապիտալիզմի ներքին օրենքներն իրենց համար ուղի են հարթում մի շարք պատահականությունների, տատանումների, մարդկանց խելահեղ բախումների և կեղեքման միջոցով։

Հանդիսանալով գիտական բարեխղճության մի բացառիկ տիպար, Մարք-

digitised by A.R.A.R.@

գրությունը, սակայն, ինչպես հեղինակն է ասում, պատմական ժամանակագրությունը ամեն մի գիտության պատմության հիմնական պայմաններից մեկը լինելով՝ հատկապես փիլիսոփայության պատմության մեջ այն մեխանիկորեն չպետք է կիրառել։

Աշխատության հեղինակը ձգտել է հայ փիլիսոփայության պատմության հարցերը բխեցնել ուսումնասիրվող նյութից, որքան կարելի է խուսափել նախօրոք կառուցված սոցիոլոգիական սխեմաներից, բայց ամեն անգամ նրան այդ չի հաջողվել։

Ընկ. Գաբրիելյանը, չնայած այն բանին, որ գրքի առաջաբանում ընդարձակ կերպով խոսում է փիլիսոփայության պատմության որպես առանձին գիտության մասին, որն ունի իր ուսումնասիրության հատուկ օբյեկտն ու զարգացման օրինաչափությունները և փորձում է տեսականորեն հիմնավորել այդ գիտության «ինքնուրույնությունը», սակայն գործնականում մասամբ խախտել է իր սկզբունքը։ Նա ավելի հեռուն է գնացել, գրքում ընդգրկել է հայ հասարակական մտքի պատմության բազմաթիվ հարցերը, որոնց մեջ նա աշխատել է տեսնել փիլիսոփայական միտք։

Երկրորդ, արդյո՞ք տալ փիլիսոփայության պատմության միակողմանի պատկերը, այսինքն՝ գրել միայն փիլիսոփայության առաջավոր մտքի պատմությունը, ինչպես այդ անում էին վերջին շրջանում, թե՞ խոսել նաև փիլիսոփայական ռեակցիոն ուղղության մասին, ցույց տալով, որ փիլիսոփայության պատմությունը հանդիսանում է այդ երկու հոսանքների պայքարի պատմությունը, որի զարգացման իմանենտ տենդենցը եղել է առաջավոր մտքի պայքարն ու հաղթանակը ռեակցիոն հոսանքի հանդեպ։

Ընկ. Հ. Գաբրիելյանը գնացել է երկրորդ ճանապարհով. նախ աշխատել է տալ հայ փիլիսոփայության պատմությունն իր սպեցիֆիկ արտահայտության մեջ և հետո, իդեալիզմի սահմաններում ներկայացնել այդ փիլիսոփայության հակադիր կողմերը, առաջադեմ և հետադեմ տենդենցներն իրենց պայքարի մեջ։

Ընկ. Զալոյանը իր գրախոսականում Գաբրիելյանին մեղադրում է այն բանում, որ վերջինս գրել է ոչ թե փիլիսոփայության պատմություն, այլ աստվածաբանության պատմություն։ Այս մեղադրանքը նա կրկնում է մի քանի անգամ և մի քանի վարիանտներով։ Եզրափակելով այս կարգի մեղադրանքների շարանը՝ Զալոյանն ասում է. «Այսպիսով, Հ. Գաբրիելյանի գրքի տասը գլուխներից մեկն է նվիրված բուն փիլիսոփայությանը»։

Ճի՞շտ է արդյոք Զալոյանի այս մեղադրանքը։ Հ. Գաբրիելյանը գրել է հայ փիլիսոփայության պատմությո՞ւնը, թե՞ աստվածաբանության պատմությունը։ Չնայած իր հակասական հայտարարություններին, այնուամենայնիվ ընկ. Զալոյանի ասածի մեջ որոշ ճշմարտություն կա, սակայն, հասկանալի պատճառներով այն չափազանցված է։

Հ. Գաբրիելյանի մոտ ոչ թե աստվածաբանությունն է իր բուն իմաստով, այլ քրիստոնեական կրոնի փիլիսոփայական հարցերի մատերիալիստական մեկնաբանությունը, որը նույնպես որոշ չափով անհրաժեշտ էր միջնադարյան փիլիսոփայությունը հասկանալու տեսակետից։

Վ. Զալոյանն իր գրախոսականում գրչի մի շարժումով, ռեակցիոն աստվածաբանություն է հայտարարում այն ամենը, ինչ որ ստեղծել են Ագաթանգեղոսը, Մեսրոպ Մաշտոցը, Հ. Մանդակունին, Վերծանողը, Դավիթ Հարքացին, Պետրոս Սյունեցին, Հ. Մայրավանեցին, Հովհան Օձնեցին, Ստեփանոս Սյունեցին, մինչև իսկ Ղազար Փարպեցին և մյուսները, այսինքն՝ բոլոր նրանք, որոնք հանդիսացել են վաղ քրիստոնեական շրջանի հայ մտքի խոշոր ներկայացուցիչները և առաջ շարժողները։ Հարց է ծագում, եթե սրանք եղել են միայն քրիստոնեության աստվածաբաններ և ռեակցիայի ներկայացուցիչներ, որոնց մասին խոսել է Հ. Գաբրիելյանը, ապա ովքե՞ր են եղել տվյալ էպոխայի պրոգրեսիվ մտքի ներկայացուցիչները։ Այդ հարցին Վ. Զալոյանը անցյալներում այլ պատասխան է տվել, իսկ ներկայումս այլ։ 1950 թվին Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի փիլիսոփայության սեկտորի «Աշխատությունների»-ի առաջին հատորում տպագրված հոդվածում և այլ տեղերում նա չի մերժում վերոհիշյալ դեմքերի կատարած դրական դերը հայ փիլիսոփայական մտքի պատմության մեջ։

Այն մեղադրանքը, որ այսօր նա ներկայացնում է Գաբրիելյանին, իր ժամանակին անհիմն կերպով ուղղված է եղել իրեն՝ Զալոյանի դեմ։ Այն ժամանակ, երբ Զալոյանը գրում էր Եզնիկի և Դավիթի մասին, մերժում էր նման մեղադրանքներ, համարելով այդ ամենը նիհիլիստական զրպարտանք, որ գալիս էր գործից անտեղյակ մարդկանց կողմից։ Իսկ թե ինչո՞ւ այսօր նա ինքն է սահել այդ նիհիլիստների արտիճանին, միանգամայն անհասկանալի է։

Այս ամենից հետո հարց է ծագում, նախ հնարավո՞ր էր արդյոք խոսել ու գրել վաղ ֆեոդալական շրջանի հայ փիլիսոփայության մասին՝ առանց շոշափելու վերոհիշյալ դեմքերի կրոնափիլիսոփայությունը և դրա հետ սերտաճած կրոնաստվածաբանական հարցերը. երկրորդ՝ ի՞նչ էր փիլիսոփայությունը միջին դարերում։ Մեր կարծիքով ում-ում, բայց Վ. Զալոյանին, ավելի



քան որևէ այլ մարդու հայտնի է, թե ինչ էր իրենից ներկայացնում փիլիսոփայությունը միջին դարերում, առհասարակ և հայ փիլիսոփայությունը մասնավորապես, մանավանդ այն դարերում, որին նվիրված է Հ. Գաբրիելյանի գրքի առաջին հատորը, այսինքն՝ քրիստոնեության հոգևոր գերիշխանության վերելքի դարերում։ Վ. Զալոյանին քաջ հայտնի է, որ ամեն մի կրոն ծագում է փիլիսոփայական որոշ հասկացության բազայի վրա, իսկ քրիստոնեությունը, ինչպես Էնգելսն է ասում, ծագել է «հունական և հատկապես ստոիկյան փիլիսոփայության խառնուրդից»։ Այստեղից էլ պարզ է, որ խոսել վաղ շրջանի հայ փիլիսոփայության մասին՝ նշանակում է առաջին հերթին խոսել վաղ քրիստոնեության փիլիսոփայության մասին, մի բան, որ անխուսափելի էր ոչ միայն Գաբրիելյանի, այլև իր՝ Զալոյանի համար, երբ նա գրեց Եզնիկի մասին, Դավիթ Անհաղթի մասին և այլն։

Էնգելսը խոսելով միջին դարերի մասին՝ ասում է, որ դա եղել է «եկեղեցու հոգևոր գերիշխանության» շրջան։ Այստեղից պարզ է, որ միջին դարերում ինչպես գաղափարախոսության բոլոր ձևերը, այնպես էլ փիլիսոփայությունը, լինելով կրոնի և աստվածաբանության աղախինը, չէր կարող մատերիալիզմ և իդեալիզմ հանդես բերել կողք կողքի, իր այսօրվա տեսքով, քանի որ, ինչպես գրում է Էնգելսը, «Եկեղեցին հանդիսանում էր գոյություն ունեցող ֆեոդալական կարգի ամենաբարձր ընդհանրացումն ու սանկցիան»։ Այստեղից էլ պարզ է, որ փիլիսոփայությանը հուզող հիմնական հարցերը եթե անտիկ շրջանում քննարկվում էին կրոնից անկախ և նրանից դուրս, սովերեն իրավունքներով, ապա միջին դարերում փիլիսոփայական այդ հարցերը ներծծվեցին, միախառնվեցին կրոնի և աստվածաբանության հետ, այլակերպվելով դարձան ներկրոնական հարցեր, ներդավանաբանական վեճեր և հանդես եկան կրոնի քողի տակ։ Էնգելսն ասում է, որ փիլիսոփայության հիմնական հարցը՝ կեցության և գիտակցության փոխհարաբերության հարցը «ինքնագիտակցության և սուբստանցիայի» պայքարի ձև ընդունեց, դարձավ ստոծու և բնության փոխհարաբերության հարց։ «Մտածողության և կեցության հարաբերության հարցը,— գրում է Ֆր. Էնգելսը,— այն հարցը, թե ինչն է առաջնայինը՝ ոգի՞ն, թե՞ բնությունը,— այս հարցը, որ ասենք, մեծ դեր է խաղացել նաև միջնադարյան սխոլաստիկայում, ի հեճուկս եկեղեցու ստացավ ավելի սուր ձև՝ արդյոք աստվա՞ծն է ստեղծել աշխարհը, թե նա գոյություն ունի սկզբից ևեթ»[1]։ Սա ընդհանուր երևույթ էր ինչպես արևմտյան, այնպես էլ արևելյան ժողովուրդների մտավոր կյանքում ֆեոդալիզմի տիրապետության ողջ շրջանի համար։ Իր առանձնահատկություններով հանդերձ, ինչպես նկատում է Հ. Գաբրիելյանը, նույնանման պրոցես է ապրել նաև հայ փիլիսոփայական միտքը։ Քրիստոնեությունը պետական կրոն դառնալուց հետո նա ևս հիմնականում վերածվեց եկեղեցական և կրոնական դոգմաների հիմնավորման միջոցի։ Բայց հենց նույն կրոնական դոգմաների հիմնավորման հարցերումն էր, որ այլակերպված կերպարանքով ծնունդ առան հակասություններ և վեճեր կրոնական իդեոլոգիայի ներսում, որոնք առերևույթ կրոնա-դավանաբանական էին, բայց իրենց մեջ պարունակում էին փիլիսոփայական հարցեր։ Եթե կրոնը առհասարակ մարդկանց հասարակական մտածողության ձևերից մեկն է և պատմական տվյալ էպոխայում նա հանդիսացել է միակ գերիշխող իդեոլոգիան, ապա պարզ է, որ տվյալ ժամանակաշրջանում գիտական և փիլիսոփայական հարցերը, որոնք խպառ մահանալ չէին կարող, պետք է հանդես գային կրոնական ֆոնի վրա և լուծվեին նրա սֆերայում։ Հայտնի է նաև այն, որ դավանաբանական վիճելի հարցերը աստիճանաբար երկփեղկվեցին, հետո էլ սկսեցին հակասել կրոնի հանրահայտ դոգմաներին, սկզբում ոչ բացահայտ ձևերով վեճի ու պայքարի մեջ մտան այդ դոգմաների հետ։

Էնգելսը խոսելով միջին դարերում կրոնի և ֆեոդալիզմի դեմ եղած պայքարի ձևերի և տեսակների մասին գրում է. «Ռևոլյուցիոն օպոզիցիան ֆեոդալիզմի դեմ անցնում է ամբողջ միջին դարերով։ Նայած պայմաններին, երբեմն նա հանդես է գալիս իբրև միստիկա, երբեմն բացահայտ հերետիկոսության տեսքով, երբեմն էլ զինված ապստամբության ձևով»[2]։

Հայ իրականության մեջ ևս փիլիսոփայական հարցերը այս էպոխայում կրոնական զգեստ հագած՝ հանդես եկան քրիստոնեական կրոնի այս կամ այն դոգմայի հաստատման կամ մերժման քողի տակ։

Միջնադարյան առաջադեմ հայ փիլիսոփայությունը հիմնականում ոչ այլ ինչ էր, քան այն, որ նա երբեմն օպոզիցիոն միստիցիզմի, երբեմն հերետիկոսության քողի տակ հանդես էր գալիս քրիստոնեական կրոնի այս կամ այն դոգմայի դեմ և փորձում էր օնթոլոգիա-

[1] Ֆր. Էնգելս—«Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը», էջ 23, Հայպետհրատ, 1954 թ.։

[2] К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. VIII, стр. 128—129.

digitised by A.R.A.R.@

կողմանիորեն վերլուծելով Եզնիկի գործերը, նրա աստվածաբանական փիլիսոփայությունից բխող բազմաթիվ պրոբլեմները, եկել է այն եզրակացության, որ Եզնիկը հանդիսանում է միջնադարյան քրիստոնեական աշխարհայեցողության տեսաբանը[1]: Սովետահայ գիտնականներից Եզնիկի փիլիսոփայությամբ առաջին զբաղվողներից մեկը եղավ ընկ. Վ. Չալոյանը: Նա, հակառակ հայագետների տրադիցիոն կարծիքի, սկզբում փորձեց ցույց տալ, որ Եզնիկը քրիստոնեական եկեղեցու ջատագովը չի եղել, այլ եղել է հերետիկոս և հակադրվել է եկեղեցուն: Եզնիկի ուսմունքի մեջ Վ. Չալոյանը տեսնում է նաև մատերիալիստական տարրեր: Պատմակենսագրական ընդարձակ ակնարկից հետո ընկ. Գաբրիելյանը մանրամասնությամբ վերլուծել է Եզնիկի փիլիսոփայության առանձին կողմերը: Հեղինակը ցույց է տալիս, որ Եզնիկ Կողբացին 5-րդ դարի ամենախոշոր հայ փիլիսոփա մտածողներից է, որը իր ընկերների հետ միասին աշխատում էր ուսում և գիտություն տարածել հայրենակիցների մեջ, մայրենի լեզվով մի այնպիսի բարձր կուլտուրա ստեղծել, որը բավարարելով հայ ժողովրդի այն ժամանակվա պահանջները, նրան ետ պահեր օտարացնող ազդեցություններից: Դրա հետ միասին նա եղել է հայ քրիստոնեական կրոնի ջատագովներից մեկը:

Գրախոսվող գրքի երրորդ գլուխը, որը հատկացված է 5-րդ դարի ազգային ազատագրական պայքարի գաղափարախոսությանը, ավելի շատ վերաբերվում է հայ հասարակական մտքի պատմությանը, քան փիլիսոփայությանը: Ճիշտ է, այդ գլխում քննարկվում են Եղիշեի քաղաքական պայքարի թեորիայի հետ միասին նաև նրա բնափիլիսոփայական հայացքները, Խորենացու հայրենասիրության հետ նաև նրա էսթետիկական հայացքները, սակայն, օգտագործված նյութերը և նրանցից բխող հետևությունները ասում են այն մասին, որ այստեղ հեղինակը, ըստ հարկին չի խորացրել այդ մեծ դեմքերի ուսումնասիրությունը: Այդ մեծ մտածողների մասին կարելի էր խոսել շատ ավելի խոր ծավալով: Գաբրիելյանի մոտ սրանց տեսական մտքերի մասին խոսվել է սխեմատիկ ձևով:

Ինչպես արդեն ասել ենք, ընկ. Հ. Գաբրիելյանը հայ փիլիսոփայական մտքի պատմությունը տվել է ոչ թե միակողմանի, այլ ամբողջականորեն: Նա շարադրել է ոչ միայն պրոգրեսիվ մտքի պատմությունը, այլև ռեակցիոն ուղղությունների և ներկայացուցիչների հայացքները: Գրքի 4-րդ գլուխը նա նվիրել է 5-րդ դարի ռեակցիոն փիլիսոփայության ներկայացուցիչների հայացքների քննադատությանը:

Այս գրքի հինգերորդ գլխում շարադրված է 6-րդ դարի հայ նեոպլատոնիկների՝ Դավիթ Հարքացու և Պետրոս Սյունեցու հայացքները:

Հակառակ Վ. Չալոյանի, որը մերժում է Դավիթ Հարքացու և Պետրոս Սյունեցու արժանիքները հայ փիլիսոփայական մտքի համար, համարելով նրանց ռեակցիոն աստվածաբաններ, Հ. Գաբրիելյանը ցույց է տալիս, որ այս մտածողները նյութի, հոգու, զգայության, բանականության դերի, էթիկայի և այլ հարցերում դուրս եկան իրենց ժամանակի տիրող իդեոլոգիայի շրջանակներից, դրանով իսկ նպաստեցին ժամանակի առաջավոր գաղափարների ամրապնդման գործին: Նեոպլատոնիզմի այս ներկայացուցիչները իրենց ուսմունքով հող նախապատրաստեցին ավելի խոշոր մտածողի՝ Դավիթ Անհաղթի ուսմունքի առաջացման համար:

Նեոպլատոնիզմի ավելի առաջադեմ ներկայացուցիչը հայ փիլիսոփայության պատմության մեջ հանդիսացել է Դավիթ Անհաղթը, որի տեսական ժառանգությունը և հարստությունը իր նշանակությամբ դուրս է գալիս հայ ազգային մտքի շրջանակներից: Այս իսկ նկատառումով էլ ընկ. Հ. Գաբրիելյանի աշխատության առաջին հատորի մեխը Եզնիկից հետո հանդիսանում է այդ խոշոր մտածողը:

Մեր կարծիքով իրավացի է ընկ. Գաբրիելյանը, որը ասում է, թե Դավթի ով լինելու հարցը որոշելիս հիմնականը ոչ թե նրա ազգային ծագման հարցն է, այլ այն, թե համապատասխանո՞ւմ է արդյոք նրա ստեղծած կուլտուրան ժամանակի հայ ժողովրդի մտավոր մակարդակին ու կապված է հայ իրականության հետ, արտահայտում է արդյոք այն ժամանակակից հայերի ընդհանուր մտքերը, թե ոչ: Դավթի փիլիսոփայական ժառանգությունը ցույց է տալիս, որ նրա ուսմունքը ոչ միայն խորթ չի, այլև անմիջականորեն արտահայտում է իր ժամանակաշրջանի հայ մտավոր կյանքի աստիճանը և արտացոլումն է հայ ժողովրդի հոգևոր մտորումները: Սա միանգամայն ճիշտ և կարևոր դրույթ է:

Նշենք, որ ընկ. Գաբրիելյանի և Չալոյանի միջև տարաձայնությունը մեծ չէ Դավիթ Անհաղթի փիլիսոփայական ուսմունքի ընդհանուր գնահատականի խնդրում:

Պավլիկյաններին նվիրված գլխում բնական է, որ մեզ ամենից շատ հետաքրքրում է նրանց աշխարհայացքը: Խոսելով պավլիկյանների շարժման պատմական փաստերի մասին, Գաբրիելյանը ասում է, որ պավլիկյանությունը ինքնուրույն մի շարժում է, որն առաջացավ պատմական որոշ շրջանում, ունենալով պատմական

[1] Տե՛ս Մ. Աբեղյան, «Հայոց հին գրակ. պատմություն», հատ. I, էջ 148:



իր կոնկրետ խնդիրները: Միաժամանակ, հեղինակը գտնում է որոշակի ներքին օրինաչափ կապ այդ շարժման և նախորդ սոցիալական առաջադիմական շարժումների՝ մանիքեության, բորբորիտների և մծղնեական շարժումների միջև: Պավլիկյան շարժման առաջադիմությունը նրանում է, որ դա ուղղվեց դարաշրջանի ունևոր դասակարգի դեմ:

Եթե ընդհանուր առմամբ ճիշտ է, որ իդեալիզմի շրջանակներում կարող է տեղի ունենալ մտքի որոշ զարգացում, ապա այս թեզը միանգամայն մերժելի է այն դեպքում, երբ մենք գործ ունենք բացահայտ կրոնական իդեալիզմի հետ: Հետևաբար, եթե Հովհան Մայրավանեցու սոցիալական հարցադրումները որոշ արժեք ներկայացնում են 7-րդ դարի հայ մտքի ազատագրական պատմության էջերում, ապա նույն բանը հազիվ թե կարելի է ասել նրա աշխարհայեցողության մասին, որը ընկ. Գաբրիելյանն էլ է ընդունում, որ «խոր կրոնական բնույթ» են կրել (էջ 482): Հայ փիլիսոփայական մտքի պատմության հետ հազիվ թե կարող են առնչվել աստծու եռանդամության բնույթը որոշելու զուտ դավանաբանական վեճերը, որոնք եղել են քրիստոնեական եկեղեցու և կրոնի ներքին հարցերը: Այդ տեսակետից իրավացի է ընկ. Չալոյանը, որը մատնացույց է արել այդօրինակ փաստերի վրա: Այսպես, օրինակ, Հովհան Մայրավանեցու աշխարհայեցողության ընդհանուր հարցերը քննարկելիս Գաբրիելյանն ասում է, որ նա իդեալիստ է, նրա կատեգորիաները կրոնական են: Չնայած այդ բանին, Գաբրիելյանը փորձում է Մայրավանեցու կրոնական իդեալիզմի սահմաններում գտնել մտքի որոշ զարգացում:

Ընկ. Գաբրիելյանը խոսելով 7-րդ դարի հայ տեսական մտքի պատմության մասին, այն կարծիքն է հայտնում, որ այդ շրջանի համար բնութագրական է ազատագրական պայքարի ուժեղացումը, որն իր հուժկու թափին ստացավ ինչպես պավլիկյան շարժման մեջ, այնպես էլ Շիրակացու առաջավոր գիտական հայացքների մեջ, որոնք ներքնապես իրար հետ կապված երևույթներ են: Այս շրջանի համար հատկանշական են նաև Մայրավանեցու սոցիալական հայացքները, որոնք իրենց սուր ծայրով ուղղված են ֆեոդալական հասարակարգին հատուկ անարդարությունների՝ տիրապետողների ագահության, ընչասիրության, վաշխառության դեմ:

Մինչև Անանիա Շիրակացին, հայ փիլիսոփայական միտքը հիմնականում զբաղվել է իդեալիզմի և կրոնադավանաբանական շրջաններում զարգացող օնթոլոգիական, գնոսեոլոգիական և սոցիոլոգիական հարցերով: Անանիա Շիրակացին այն ականավոր անձնավորությունն է, որով սկսվում է հայ բնափիլիսոփայության պատմությունը: Ինչպես ասում է մեր բանասեր Մ. Աբեղյանը, Շիրակացին առաջին հայ «համարողն է, այսինքն՝ թվաբանը, առաջին տիեզերագետն ու հայտնի տոմարագետը»:

Ընկ. Գաբրիելյանը փիլիսոփայական տեսանկյունից մոտենալով Շիրակացու թողած ժառանգությանը, հատուկ ուշադրություն է դարձրել նրա նյութի և տիեզերքի վերաբերյալ եղած հարցադրումների, իմացության թեորիայի վրա:

Ընկ. Չալոյանը Շիրակացու կապակցությամբ հարձակվելով Գաբրիելյանի վրա, վերջինիս մեղադրում է այն բանում, որ նա չի հասկացել Շիրակացու միտքը: Սակայն տվյալ հարցում ճշմարտությունը Հ. Գաբրիելյանի կողմն է միայն:

Ընկ. Գաբրիելյանը ցույց է տալիս, որ ճանաչողության հարցերում Շիրակացին սենսուալիստ է, քանի որ նա իմացության աղբյուր համարում է զգայությունը: Շիրակացու սենսուալիզմը մատերիալիստական հիմքեր ունի:

Ընկ. Հ. Գաբրիելյանի առաջին գրքի վերջին գլուխը նվիրված է պավլիկյանների հակառակորդներին, որոնց ներկայացուցիչներն են Հովհան Օձնեցին և Ստեփանոս Սյունեցին: Այս մտածողների հիմնական նպատակն է եղել գաղափարական դիրքերից կռվել պավլիկյանների՝ մարդու և մարդկայինի համար առաջադրվող պահանջների դեմ, հաստատել կրոնական միստիցիզմի խստաշունչ պահանջները: Դա հայ հետադեմ վերնախավերի փիլիսոփայությունն էր, որոնք մարդկային իրավունքներ պահանջող պավլիկյաններից հանգիստ չունեին (էջ 559):

Եզրակացություն.— Ինչպես տեսանք, ընկ. Հ. Գաբրիելյանի առաջին գիրքն իր մեջ պարունակում է բազմահարուստ նյութ հայ փիլիսոփայական մտքի կազմավորման և նրա հետագա զարգացման շրջանների մասին: Այս որպես առաջին փորձ, դեռևս իր մեջ պարունակում է բազմաթիվ թերություններ, որոնցից մի քանիսի մասին մենք խոսեցինք, սակայն հավակնություն չունենք կարծելու, որ դրանով սպառվում են եղած թերությունները: Միայն սկզբունքային, բարեկամական քննադատության միջոցով կարելի կլինի վեր հանել գրքում եղած թերությունները, նպատակ ունենալով օգնել հեղինակին շտկելու, ուղղելու այն և մեր ընթերցող հասարակայնությանը ներկայացնելու հայ փիլիսոփայական մտքի հարուստ գանձերը:

Վ. ՂԱԶԱՆՋՅԱՆ

digitised by A.R.A.R.@

## ՀԱՄԱՌՈՏ ԱՆՈՏԱՑԻԱ

# «ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԷԿՈՆՈՄԻԿԱՆ»

Ռուսերենից թարգմանվել և հայերեն լույս է տեսել «Սոցիալիստական արդյունաբերական ձեռնարկությունների էկոնոմիկան» ուսումնական ձեռնարկը: Այս ձեռնարկը պատրաստել է ՍՄԿԿ Կենտկոմին կից Բարձրագույն պարտիական դպրոցի սովետական էկոնոմիկայի ամբիոնը՝ տնտեսագիտական բարձրագույն ուսումնական հիմնարկների դասատուների և արդյունաբերության պրակտիկ աշխատողների մասնակցությամբ:

Ուսումնական ձեռնարկը, որը գրել է հեղինակների մի կոլեկտիվ, կազմված է տնտեսագիտական դպրոցների և մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանների սոցիալիստական արդյունաբերական ձեռնարկությունների էկոնոմիկայի հարցերի ուսումնական ծրագրին համապատասխան: Ձեռնարկը բաղկացած է 13 գլխից, որոնցում արծարծված են սոցիալիստական արդյունաբերությունը և նրա հետագա զարգացման խնդիրները, սոցիալիստական արդյունաբերական ձեռնարկությունների կառավարումը, արդյունաբերական ձեռնարկությունների հիմնական ֆոնդերը և արտադրական կարողությունները, շրջանառու ֆոնդերը և նյութատեխնիկական մատակարարումը, աշխատանքի նորմավորումը, աշխատանքի արտադրողականությունը և նրա հետագա բարձրացման ուղիները, աշխատավարձը, արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքն ու գինը, ինչպես նաև տնտեսական հաշվարկը արդյունաբերական ձեռնարկություններում, ֆինանսական տնտեսությունը, հաշվառումը և հաշվետվությունը, հաշվապահական հաշվեկշիռն ու նրա վերլուծությունը և ձեռնարկության արտադրական-տնտեսական գործունեության վերլուծումը:

Այս ուսումնական ձեռնարկը լուրջ օգնություն է ինչպես տնտեսագիտական դպրոցների, մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանների ունկնդիրների, այնպես էլ արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող ընկերների համար: Այն մեծ չափով կնպաստի մեր կադրերի տնտեսագիտական ուսուցմանը:

Ձեռնարկը լույս է տեսել 5000 օրինակ, բաղկացած է 582 էջից, գինն է 12 ռ.:

---

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք,
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении. тел. 2—03—18, 2—56—92, 2—04—66.

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԳՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԲԱԲԱՅԱՆ Լ. Հ., ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ ՀՈՎՀ. Մ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա., ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ ԱՐ. Ն., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Վ. Ս., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.:

ՎՖ 05885
Պատվեր 1058 Տիրաժ 6500
Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ: Ստորագրված է տպագրության 15/IV 1957 թ.:
ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51:

digitised by A.R.A.R.@

Գ Ի Ն Ը 2 ռ. 50 կ.

10645

# ՀԱՅԳՐՔԻ ԳՐԱԽԱՆՈՒԹՆԵՐՈՒՄ ԵՎ ԿՐՊԱԿՆԵՐՈՒՄ ՀԱՅԵՐԵՆ ԼԵԶՎՈՎ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ ՀԵՏԵՎՅԱԼ ԳՐՔԵՐԸ

**Կ. Մարքս** — *«Կապիտալ», I հատոր, Հայպետհրատ, 1954 թ., գինը 10 ռ. 50 կոպ.։*

**Կ. Մարքս** — *«Կապիտալ», III հատոր, Հայպետհրատ, 1949 թ., գինը 16 ռ. 20 կոպ.։*

**Կ. Մարքս** — *«Աշխատավարձ, գին, շահույթ», Հայպետհրատ, 1954 թ., գինը 80 կոպ.։*

**Կ. Մարքս** — *«Գոթայի ծրագրի քննադատությունը», Հայպետհրատ, 1955 թ., գինը 60 կոպ.։*

**Ֆ. Էնգելս** — *«Սոցիալիզմի զարգացումը ուտոպիայից դեպի գիտություն», Հայպետհրատ, 1948 թ., գինը 1 ռ. 40 կոպ.։*

**Վ. Ի. Լենին** — *«Ագրարային հարցը և «Մարքսի քննադատները»», Հայպետհրատ, 1950 թ., գինը 1 ռ. 45 կոպ.։*

**Վ. Ի. Լենին** — *«Սովետական իշխանության հերթական խնդիրները», Հայպետհրատ, 1950 թ., գինը 40 կոպ.։*

**Վ. Ի. Լենին** — *«Քննադատական դիտողություններ ազգային հարցի մասին», Հայպետհրատ, 1950 թ., գինը 35 կոպ.։*

**Ն. Գ. Չերնիշևսկի** — *«Փիլիսոփայական ընտիր երկեր», Հայպետհրատ, 1949 թ., գինը 9 ռ. 10 կոպ.։*

*«ՍՄԿՊ-ն համագումարների, կոնֆերենցիաների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում», Հայպետհրատ, 1955 թ., II մաս — 13 ռ. 45 կոպ., III մաս — 13 ռ. 60 կոպ.։*

**Գ. Մնեյան** — *«Հայ բոլշևիկյան կազմակերպությունները 1905—1907 թթ.», Հայպետհրատ, 1956 թ., գինը 1 ռ. 70 կոպ.։*

**Ծ. Աղայան** — *«Ռևոլյուցիոն շարժումները Հայաստանում 1905—1907 թթ.», Ակադեմիայի հրատ., 1955 թ., գինը 5 ռ. 60 կոպ.։*

*«Ռևոլյուցիոն շարժումները Հայաստանում առաջին ռևոլյուցիայի տարիներին» ժողովածու, Ակադեմիայի հրատ., 1955 թ., գինը 5 ռ. 25 կոպ.։*

*«Ռևոլյուցիոն շարժումները Հայաստանում 1905—1907 թթ. (հոդվածների ժողովածու), Հայպետհրատ, 1955 թ., գինը 12 ռ. 50 կոպ.։*

**Տ. Ալեքսանյան** — *«Պրագմատիզմը դիալեկտիկական մատերիալիզմի ամենակատաղի թշնամին է», Հայպետհրատ, 1955 թ., գինը 2 ռ. 05 կոպ.։*

**Ղ. Վարդապետյան** — *«Ագնոստիցիզմի և սկեպտիցիզմի քննադատությունը», Հայպետհրատ, 1956 թ., գինը 1 ռ. 25 կոպ.։*

**Հ. Կարապետյան** — *«Հայաստանի կոմերիտմիության ծնունդը», Հայպետհրատ, 1957 թ., գինը 4 ռ. 15 կոպ.։*

*«Սոցիալիստական արդյունաբերական ձեռնարկությունների էկոնոմիկան» — ուսումնական ձեռնարկ, Հայպետհրատ, 1957 թ., գինը 12 ռ.։*

«ՀԱՅԳԻՐՔ»

digitised by A.R.A.R.@